

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

6 1982

## Մեր հեղինակներին

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**6** ՀՈՒՆԻՍ, 1982
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



ԵՐԵՎԱՆ ● ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## С О Д Е Р Ж А Н И Е







# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1982 թվականի մայիսի 24-ին տեղի ունեցավ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը:

Պլենումը լսեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցումը «Մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի ՍՍՀՄ պարենային ծրագրի և նրա իրականացման միջոցառումների մասին»:

Զեկուցման շուրջը ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեցին Ուկրաինայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Վ. Շչերբիցկին, Ղազախստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Դ. Ա. Կունաևը, ՍՄԿԿ Մոսկվայի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Վ. Գրիշինը, ՍՄԿԿ Լենինգրադի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Գ. Վ. Ռոմանովը, Խերսոնի մարզի Կիրովի անվան կոլտնտեսության նախագահ ընկ. Դ. Կ. Մոտորնին, ՌՍՖՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ ընկ. Մ. Ս. Սոլոմենցևը, Բելոռուսիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Տ. Յա. Կիսելյովը, Կրասնոդարի երկրամասի ՍՄԿԿ Ստարոմինսկայայի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ի. Գ. Խմարան, Ուզբեկստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Շ. Ռ. Ռաշիդովը, Ադրբեջանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Հ. Ա. Ալիևը, Վրաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Է. Ա. Շևարդնաձեն, Լատվիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ա. Է. Վոսը, ՍՄԿԿ Ռոստովի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Ի. Ա. Բոնդարենկոն, ՍՄԿԿ Սմոլենսկի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Ի. Ե. Կլիմենկոն, ՍՄԿԿ Բելգորոդի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Մ. Պ. Տրունովը, ՍՄԿԿ Բաշկիրական մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Մ. Զ. Շակիրովը, Կեմերովոյի մարզի «Զիմինկա» ածխահանքի հանքաբանվորների բրիգադավար ընկ. Վ. Ս. Կոստինը, ՍՍՀՄ գյուղատնտեսության մինիստր ընկ. Վ. Կ. Մեսյացը, ՍՄԿԿ Վոլգոգրադի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Լ. Ս. Կուլիչենկոն, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի փոխպրեզիդենտ ընկ. Յու. Ա. Օվչիննիկովը, տրակտորային և գյուղատնտեսական մեքենաշինության մինիստր ընկ. Ա. Ա. Եժևսկին:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը այդ հարցի առթիվ միաձայն ընդունեց որոշում, որը հրապարակվում է մամուլում:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը քննարկեց կազմակերպական հարցեր:

Կենտկոմի պլենումը ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար ընտրեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ ընկ. Յու. Վ. Անդրոպովին:

Կենտկոմի պլենումը ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար ընկ. Վ. Ի. Դոլգիխին ընտրեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու:

Կենտկոմի պլենումը ՍՄԿԿ Կենտկոմի անդամության թեկնածությունից անդամ փոխադրեց ՀԱՄԿԽ-ի նախագահ ընկ. Ս. Ա. Շալաևին, ակադեմիկոս, ՍՍՀՄ բժշկական գիտությունների ակադեմիայի համամիութենական սրտաբանական գիտական կենտրոնի դիրեկտոր ընկ. Ե. Ի. Չազովին, Կեմերովոյի մարզի «Զիմինկա» ածխահանքի հանքաբանվորների բրիգադավար ընկ. Վ. Ս. Կոստինին:

Դրանով ՍՄԿԿ Կենտկոմի պլենումն ավարտեց աշխատանքը:

## ՍՄԿԿ կենտկոմի պլենումի որոշումը

# ՄԻՆՉԵՎ 1990 ԹՎԱԿԱՆՆ ԸՆԿԱԾ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆԻ ՍՍՀՄ ՊԱՐԵՆԱՅԻՆ ԾՐԱԳՐԻ ՆԱԽԱԳԾԻ ՄԱՍԻՆ

Լսելով և քննարկելով ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի «Մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի ՍՍՀՄ պարենային ծրագրի և նրա իրականացման միջոցառումների մասին» զեկուցումը, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը որոշում է.

1. Ամբողջապես և լիովին հավանություն տալ ներկա պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ շարադրված առաջարկություններին ու հետևությունններին, դրանք դնել պարենային ծրագրի իրականացման, ՍՄԿԿ-ի ագրարային քաղաքականության հետևողական կենսագործման ուղղությամբ կուսակցական, պետական ու տնտեսական մարմինների, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների պրակտիկ գործունեության հիմքում:

2. Հավանություն տալ մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի ՍՍՀՄ պարենային ծրագրին, որը մշակվել է ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումներին համապատասխան:

Հաստատել Կենտկոմի քաղբյուրոյի ներկայացրած ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի հետևյալ որոշումները.

«Գյուղատնտեսության և ագրոարդյունաբերական կոմպլեքսի մյուս ճյուղերի կառավարումը բարելավելու մասին»

«Կոլտնտեսությունների և սովխոզների տնտեսական մեխանիզմը կատարելագործելու և դրանց էկոնոմիկան ամրապնդելու միջոցառումների մասին»

«Արտադրանքի արտադրության ավելացման և դրա որակի բարձրացման գործում գյուղատնտեսության աշխատողների նյութական շահագրգռությունն ուժեղացնելու միջոցառումների մասին»

«Անասնապահության մեջ զբաղված աշխատողներին կոլտնտեսություններում, սովխոզներում և մյուս գյուղատնտեսական ձեռնարկություններում ամրակայելու լրացուցիչ միջոցառումների մասին»

«Գյուղական բնակչության բնակարանային, կոմունալ-կենցաղային և սոցիալ-կուլտուրական պայմանների հետագա բարելավման միջոցառումների մասին»

«Կոլտնտեսություններն ու սովխոզները ղեկավար կադրերով ու մասնագետներով առավել ամրապնդելու, գյուղատնտեսական արտադրության զարգացման գործում նրանց դերն ու պատասխանատվությունը բարձրացնելու մասին»:

3. ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին, ՍՍՀՄ պետպլանին, մինիստրություններին ու գերատեսչություններին, միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդներին՝ ապահովել երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման տարեկան պլանների և 12-րդ հնգամյակի պլանի նախագծի մշակումը, ելնելով պարենային ծրագրով սահմանված առաջադրանքներից և դեպի գյուղատնտեսական արտադրության հետագա վերելքի ու ագրոարդյունաբերական ողջ կոմպլեքսի զարգացման պրոբլեմների լուծումը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի ավելի խոր շրջադարձ իրականացնելու անհրաժեշտությունից, որպեսզի հնարավորին չափ ավելի սեղմ ժամկետներում լուծվի բնակչությանը պարենի անխափան մատակարարման խնդիրը:

4. Միութենական հանրապետությունների կոմկուսների Կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, օկրուգկոմներին, քաղկոմներին և շրջկոմներին, միութենական մինիստրություններին և գերատեսչություններին, տեղական սովետական և տնտեսական մարմիններին, կոլտնտեսությունների և սովխոզների, արդյունաբերական, շինարարական և տրանսպորտային ձեռնարկությունների ղեկավարներին, սկզբնական կուսակցական կազմակերպություններին՝ բանվորների, կոլտնտեսականների և մտավորականության շրջանում կազմակերպչական և քաղաքական ակտիվ աշխատանք ծավալել պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցումից, պարենային ծրագրից և այդ կապակցությամբ ընդունված ՍՄԿԿ Կենտկոմի ու ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումներից բխող խնդիրների իրականացման նպատակով: Տասնմեկերորդ և տասներկուերորդ հնգամյակներում կուսակցության ու պետության կենտրոնական խնդրի՝ պարենային պրոբլեմի լուծման գործում կոչված են առավելագույն ավանդ ներդնելու յուրաքանչյուր հանրապետություն, երկրամաս, մարզ, շրջան, ժողովրդական տնտեսության յուրաքանչյուր ճյուղ, քաղաքի և գյուղի բոլոր աշխատավորական կոլեկտիվները:

5. ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը շեշտում է, որ այժմ, երբ պետությունը ձեռնարկում է գյուղատնտեսության մեջ ներդրումների հետագա ավելացման և նրա ինտենսիվացման, նպատակ ունենալով երկրում պարենի ավելի արագ աճը, հատկապես կարևոր է ջանքերը կենտրոնացնել կոլտնտեսություններում և սովխոզներում հողագործության և անասնապահության կուլտուրայի րստ ամենայնի բարձրացման վրա, հողի, արտադրաֆոնդերի, նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսների օգտագործման բարելավման, աշխատանքի արտադրողականության և աշխատանքի որակի բարձրացման, կորուստների վերացման, տնտեսման ու խնայողության, արտադրանքի ինքնարժեքի իջեցման համար մղվող պայքարի վրա:

Արտադրության մեծացած մասշտաբները, բարդացած տնտեսական կապերը ագրոարդյունաբերական կոմպլեքսի բոլոր ճյուղերի կադրերին նոր պահանջներ են ներկայացնում գյուղատնտեսության պլանավորման, կառավարման, գիտատեխնիկական ապահովման կատարելագործման ասպարեզում: Անհրաժեշտ է կառավարման բոլոր մակարդակներում ապահովել էկոնոմիկայի այդ ոլորտի ստորաբաժանումների գործունեության սերտ շաղկապումն ու կոորդինացումը, դրանց բարձր պատասխանատվությունը վերջնական լավագույն արդյունքների հասնելու համար և շահագրգռությունը լավորակ սննդամթերքների արտադրության ավելացմամբ:

Մոտակա խնդիրն է արդեն այս տարի հասնել հողագործության արդյունավետության և անասնապահության մթերատվության էական բարձրացման, ապահովել հացահատիկի, մսի, կաթի և մյուս մթերքների գնումների պետական պլանների կատարումն ու գերակատարումը, դրանց ժամանակին վերամշակումն ու լրիվ պահպանումը, հուսալի հիմք ստեղծել հաջորդ տարիներին գյուղատնտեսական արտադրության ավելի արագ վերելքի համար:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը հաստատ համոզմունք է հայտնում, որ կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները, տնտեսական մարմինները, կոլտնտեսականները և սովխոզների բանվորները, մասնագետները և գիտնականները, արդյունաբերության աշխատողները, գյուղի բոլոր բնակիչները և քաղաքի աշխատավորները անհրաժեշտ ամեն ինչ կանեն Կենտկոմի սույն պլենումի որոշումների կատարման համար, համաժողովրդական սոցիալիստական մրցություն կծավալեն պարենային ռեսուրսների ավելացման նախատեսված բնագծերի նվաճման համար, որը սովետական մարդկանց բարեկեցության անշեղ բարձրացման, մեր հայրենիքի տնտեսական հզորության ամրապնդման գլխավոր պայմաններից մեկն է:

# ՄԻՆՉԵՎ 1990 ԹՎԱԿԱՆՆ ԸՆԿԱԾ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆԻ ՍՍՀՄ ՊԱՐԵՆԱՅԻՆ ԾՐԱԳՐԻ ԵՎ ՆՐԱ ԻՐԱԿԱՆԱՑՄԱՆ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

## ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ զեկուցումը ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում 1982 թվականի մայիսի 24-ին

Հարգելի ընկերնե՛ր:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն Կենտրոնական կոմիտեի պլենումի քննարկմանն է ներկայացնում պարենային ծրագրի և նրա իրականացման միջոցառումների հարցը: Ծրագիրը մշակված է կուսակցության XXVI համագումարի որոշումներին համապատասխան:

Նախատեսվող միջոցառումների նպատակն է հնարավորին չափ առավել կարճ ժամկետներում երկրի բնակչությանը հուսալիորեն ապահովել սննդամթերքներով: Դա ո՛չ միայն առաջնահերթ տնտեսական, այլև սոցիալ-քաղաքական հրատապ խնդիր է: Սովետական մարդկանց կենսական պահանջմունքների բավարարումը, դա շեշտում եմ ամենայն որոշակիությամբ, եղել և մնում է մեր կուսակցության կարևորագույն ծրագրային պահանջը: Ահա թե ինչու, ընկերնե՛ր, ներկա պլենումը առանձնահատուկ իմաստ, առանձնահատուկ նշանակություն ունի:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի գումարմանը նախորդել է նախապատրաստական մեծ աշխատանք, որը կատարել են ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը և նրա ղեկավարությունը, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի հատուկ աշխատանքային խումբը, պետպլանը և համապատասխան մինիստրություններն ու գերատեսչությունները: Այդ աշխատանքին մասնակցել են գիտնականներ, կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարներ, մասնագետներ: Հաշվի են առնվել հանրապետությունների կոմկուսների կենտրոնական կոմիտեների և մինիստրների խորհուրդների, մարզկոմների և մարզգործկոմների, շրջկոմների և շրջգործկոմների առաջարկությունները, մամուլի նյութերը, աշխատավորների նամակները:

Դրա շնորհիվ նախապատրաստվել են մի շարք փաստաթղթեր: Դա պարենային ծրագրի նախագիծն է: Դրանք, այնուհետև, ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումներն են մի քանի առավել կոնկրետ հարցերի մասին: Դրանց թվում են հետևյալ որոշումները՝ գյուղատնտեսության և ագրոարդյունաբերական կոմպլեքսի մյուս ճյուղերի կառավարումը բարելավելու մասին. կոլտնտեսությունների և սովխոզների տնտեսական մեխանիզմը կատարելագործելու և դրանց էկոնոմիկան ամրապնդելու միջոցառումների մասին. արտադրանքի արտադրության ավելացման և դրա որակի բարձրացման գործում գյուղատնտեսության աշխատողների նյութական շահագրգռությունն ուժեղացնելու միջոցառումների մասին. անասնապահության մեջ զբաղված աշխատողներին կոլտնտեսություններում, սովխոզներում և մյուս գյուղատնտեսական ձեռնարկություններում ամրակայելու լրացուցիչ միջոցառումների մասին. գյուղական բնակչության բնակարանային, կոմունալ-կենցաղային և սոցիալ-կուլտուրական պայմանների հետագա բարելավման միջոցառումների մասին. կոլտնտեսություններն ու սովխոզները ղեկավար կադրերով ու մասնագետներով առավել ամրապնդելու, գյուղատնտեսական արտադրության զարգացման գործում նրանց դերն ու պատասխանատվությունը բարձրացնելու մասին:

Քանի որ Կենտրոնական կոմիտեի անդամները ծանոթ են փաստաթղթերին, ես կարծարծեմ միայն մի քանի սկզբունքային հարցեր:

Կսկսեմ գյուղատնտեսության մեջ կատարված աշխատանքի արդյունքներից: Օրինաչափ կլինի, եթե մենք ելակետ ընդունենք ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումը: Այն ժամանակ, ինչպես դուք հիշում եք, կուսակցությունը վերցրեց գյուղատնտեսության մեջ կատարվող կապիտալ ներդրումներն ավելացնելու, նյութատեխնիկական բազան ամրապնդելու և գյուղատնտեսական արտադրության պլանավորումն ու տնտեսական խթանումը կատարելագործելու կուրս: Պլենումը առանձնահատուկ ուշադրություն նվիրեց կոլտնտեսությունների և սովխոզների ամրապնդմանը և դրանց ինքնուրույնության բարձրացմանը, գյուղական բնակչության կյանքի բարելավմանը: ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումի դրույթները, որոնք զարգացվեցին հաջորդած մի շարք պլենումների և ՍՄԿԿ XXIV—XXVI համագումարներում, կազմեցին կուսակցության արդի ագրարային քաղաքականության՝ գիտական քաղաքականության, այն ճիշտ քաղաքականության հիմքը, որից մենք չենք նահանջել և չենք նահանջի: **(Երկարատև ծափահարություններ):**

ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումից հետո անցած տարիներին որակապես նորացվեց գյուղատնտեսության նյութատեխնիկական բազան: Աշխատանքի էներգազինվածությունն աճեց ավելի քան երեք անգամ: Ոռոգելի և չորացված հողերի ֆոնդը ավելացավ 1,7 անգամ: Երեք անգամ աճեցին հանքային պարարտանյութերի մատակարարումները: Գործարկվեցին մասնագիտացված անասնապահական համալիրներ և արտադրության արդյունաբերական տեխնոլոգիայով բանող խոշոր թռչնաֆաբրիկաներ: Զարգանում են միջտնտեսային և ագրոարդյունաբերական բարձրարդյունավետ ձեռնարկություններն ու միավորումները: Այս ամենը հնարավորություն ընձեռեց գրեթե երկու անգամ բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը կոլտնտեսություններում և սովխոզներում:

Ստեղծվել են գյուղատնտեսությանն սպասարկող այնպիսի նոր ճյուղեր, ինչպիսիք են՝ անասնապահության և կերարտադրության մեքենաշինությունը, գյուղական շինարարությունը, համակցված կերի և միկրոկենսաբանական արդյունաբերությունը: Զգալիորեն զարգացել է գյուղատնտեսական մեքենաշինությունը: Արդյունաբերության սննդաճյուղերի հիմնական արտադրաֆոնդերը վերջին երեք հնգամյակներում ավելացել են 2,7 անգամ:

Այդ նույն ժամանակ խոր փոփոխություններ են տեղի ունեցել սովետական գյուղացիության կյանքի և աշխատանքի պայմաններում: Հաջողությամբ են լուծվել սոցիալական շատ հարցեր: Նկատելիորեն բարձրացել է գյուղատնտեսության աշխատողների աշխատանքի վարձատրությունը: Բարելավվել է նրանց կենսաթոշակային ապահովությունը և սոցիալական ապահովագրությունը, ավելացել են հանրային ֆոնդերից տրվող վճարումներն ու արտոնությունները: Աճել է կոլտնտեսականների և սովխոզների աշխատողների պրոֆեսիոնալ և կուլտուրական մակարդակը: Գյուղատնտեսական ձեռնարկություններում այժմ աշխատում են բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ մոտ երկու միլիոն մասնագետներ:

Երկրի շատ շրջաններում ամբողջովին կերպարանափոխվել է գյուղը:

Ուրիշ՝ զգալիորեն ավելի բովանդակալից, հետաքրքրական է դառնում գյուղական աշխատավորների ապրելակերպը:

Կուսակցության ձեռնարկած միջոցները, կոլտնտեսականների, սովխոզների բանվորների, մասնագետների, արդյունաբերության աշխատողների անձնվեր աշխատանքը տալիս են իրենց արդյունքները և բավական տպավորիչ արդյունքները: Պլենումի մասնակիցներին քաջածանոթ են սոցիալիզմի հակառակորդների ճիգերը՝ լռության մատնելու կամ նսեմացնելու սովետական գյուղատնտեսության հաջողությունները: Սակայն փաստերը այլ բան են ասում: Գյուղատնտեսության համախառն արտադրանքը, չնայած բնության բոլոր քմահաճույքներին, իսկ այդպիսիք քիչ չեն եղել, յոթերորդ հնգամյակում տարեկան միջին հաշվով 82,8 միլիարդ ռուբլուց տասներորդ հնգամյակում հասել է 123,9 միլիարդ ռուբլու, այսինքն՝ ավելացել է 50 տոկոսով: Համեմատության համար նշենք, որ եվրոպական տնտեսական միավորման երկրներում համապատասխան ցուցանիշը կազմել է 31 տոկոս, իսկ ԱՄՆ-ում՝ 29 տոկոս, թեև բնական պայմանները մեզանում շատ ավելի պակաս նպաստավոր են: Այդ բնագավառում մենք բնավ էլ նախանձելի ժառանգություն չենք ստացել:

Սովետական գյուղատնտեսության արտադրանքի աճի մասին ավելի կոնկրետ պատկերացում է տալիս հետևյալ աղյուսակը.

ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ՀԻՄՆԱԿԱՆ ՏԵՍԱԿՆԵՐԻ ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ

(տարեկան միջին հաշվով՝ միլիոն տոննա)

| | *1961—1965 թվականներ* | *1976—1980 թվականներ* | *Աճը՝ տոկոսներով* |
|---|---|---|---|
| *Հացահատիկ* | *130,3* | *205,0* | *157* |
| *Շաքարի ճակնդեղ* | *59,2* | *88,7* | *150* |
| *Բանջարեղեն* | *16,9* | *26,3* | *156* |
| *Պտուղ և խաղող* | *6,5* | *15,2* | *234* |
| *Միս (սպանդային քաշ)* | *9,3* | *14,8* | *159* |
| *Կաթ* | *64,7* | *92,7* | *143* |
| *Ձու (միլիարդ հատ)* | *28,7* | *63,1* | *220* |

Մենք հասանք այն բանին, որ գյուղատնտեսական արտադրության աճը սիստեմատիկաբար առաջ էր անցնում բնակչության աճից, որը 1965 թվականի համեմատությամբ ավելացավ 35 միլիոնով: Որպես արդյունք, քննության առնվող ժամանակամիջոցում գյուղատնտեսության համախառն արտադրանքի բնակչության մեկ շնչին ընկնող տարեկան միջին ծավալը ավելացավ 28 տոկոսով: Տասնհինգ տարում մսի և մսամթերքների մեկ շնչին ընկնող սպառումը ավելացավ 41 տոկոսով, կաթինը և կաթնամթերքներինը՝ 25 տոկոսով, ձվինը՝ գրեթե երկու անգամ, բանջարեղենինը՝ 35 տոկոսով, ձեթինը՝ 24, շաքարինը 30 տոկոսով:

Այնպես որ, ընկերնե՛ր, կուսակցության ագրարային քաղաքականությունը, գյուղատնտեսության մեջ ներդրված մեծ միջոցները, միլիոնավոր մարդկանց ջանքերը ապահովեցին սննդամթերքների արտադրության էական աճ: **(Ծափահարություններ):** Եվ, այնուամենայնիվ, մենք չենք կարող բավարարվել ձեռք բերածով, չենք կարող չտեսնել, որ պարենային պրոբլեմը դեռ բնավ էլ օրակարգից չի հանված: Եթե կալորիականության ընդհանուր մակարդակով սովետական մարդու սննդի օրաբաժինը համապատասխանում է ֆիզիոլոգիական նորմաներին, ապա սննդի կառուցվածքը բարելավման կարիք ունի: Չի բավարարվում մսեղենի և կաթնեղենի պահանջարկը, չեն բավականացնում բանջարեղենն ու միրգը: Մի շարք շրջաններում խափանումներ կան պարենային ապրանքների առևտրի ասպարեզում:

Բանն ինչո՞ւմն է այստեղ: Նախ և առաջ, բանն այն է, որ սննդամթերքների պահանջարկն առայժմ դեռ առաջ է անցնում պարենի արտադրությու-



նից, թեև վերջինս տարեցտարի ավելանում է: Դրա պատճառը բնակչության դրամական եկամուտների աճն է, որը հիմնական պարենային ապրանքների պետական մանրածախ գների կայունության պայմաններում հանգեցնում է դրանց սպառման ավելացման: Դա պայմանավորված է նաև էկոնոմիկայի ագրարային սեկտորում անմիջականորեն զբաղված մարդկանց թվի նվազմամբ, քաղաքային բնակչության աճով: Դա կապված է նաև այն բանի հետ, որ տարեցտարի աճում են պետական առևտրական ցանցում սննդամթերքների գնումները բուն գյուղական բնակչության կողմից: Վերջապես, դրա վրա անդրադառնում է նաև գյուղատնտեսության, ամբողջ ագրոարդյունաբերական կոմպլեքսի արդյունավետության ոչ բավականաչափ արագ աճը:

Հաշվի առնելով այս բոլոր գործոնները, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն անհրաժեշտ համարեց մշակել մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հատուկ պարենային ծրագիր: Այդպիսի ծրագրի նախապատրաստումն ու իրականացումը սկզբունքորեն նոր քայլ է մեր պլանավորման սիստեմում, սոցիալիստական էկոնոմիկայի կառավարման գործում: Ծրագիրը մարմնավորում է նպատակային, կոմպլեքսային մոտեցում պարենային պրոբլեմի լուծմանը:

Այդպիսի մոտեցման կարևորագույն առանձնահատկությունն է՝ իրար հետ շաղկապել, միավորել ինչպես բուն գյուղատնտեսության, այնպես էլ արդյունաբերության, տրանսպորտի, առևտրի՝ դրան սպասարկող ճյուղերի աշխատանքը, դրանց ամբողջ գործունեությունը ենթարկել ընդհանուր վերջնական նպատակին՝ բարձրորակ սննդամթերքների արտադրությանն ու դրանք սպառողին հասցնելուն:

Դա հրատապ խնդիր է, մանավանդ որ մի շարք պատճառներով ագրոարդյունաբերական կոմպլեքսի ճյուղերի զարգացման գործում որոշակի անհամամասնություններ են ստեղծվել: Թերություններ են կուտակվել գյուղատնտեսական մթերքների մթերումների ու պահպանման, փոխադրման, վերամշակման և առևտրի ասպարեզում: Հետևաբար, պարենային պրոբլեմի լուծումը առաջ մղելու համար անհրաժեշտ է ուժեղացնել ուշադրությունը այն շղթայի բոլոր օղակների նկատմամբ, որով գյուղատնտեսության արտադրանքը հասնում է սպառողին:

Մյուս կարևորագույն պահանջը, որը ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն անհրաժեշտ էր համարում ներառնել ծրագրի մեջ, ինչպես գյուղատնտեսության, այնպես էլ դրա հետ կապված արդյունաբերության ճյուղերի աշխատանքի արդյունավետության հետագա բարձրացումն է, վճռական անցումը աճի գերազանցապես ինտենսիվ գործոններին: ՍՄԿԿ վերջին համագումարները հենց այդպիսի մոտեցումն են համարել կուսակցության տնտեսական քաղաքականության հիմքը: Դա նաև պարենային պրոբլեմի լուծման առավել ներգործուն և փաստորեն միակ հնարավոր ուղին է:

Մենք վստահորեն ընթանում ենք այդ ուղիով: Բայց առջևում դեռ շատ աշխատանք կա: Չէ՞ որ հայտնի է, որ ոչ բոլոր տնտեսություններում է արդյունավետ օգտագործվում գլխավոր բնական հարստությունը՝ հողը: Կոլտնտեսությունները ու սովխոզները մեծ քանակությամբ արտադրանք պակաս են տալիս՝ գյուղատնտեսական արտադրության կոմպլեքսային մեքենայացման դեռևս անբավարար մակարդակի, գյուղատնտեսական տեխնիկայի շատ տեսակների վատ շահագործման և ցածր որակի հետևանքով: Չեն բավականացնում հանքային պարարտանյութերն ու հերբիցիդները, ամենուրեք չէ, որ ապահովվում են դրանց հուսալի պահպանումն ու արդյունավետ օգտագործումը: Գնման գները չեն համապատասխանում արտադրության անհրաժեշտ ծախքերին: Այս ամենը հանգեցրել է գյուղատնտեսական մթերքների աճի տեմպերի դանդաղեցման:

Այսպիսով, ընկերնե՛ր, ասվածից բխում է, որ երկրի զարգացման արդի փուլը գյուղատնտեսության առջև, մեր էկոնոմիկայի ամբողջ ագրարային-արդյունաբերական սեկտորի առջև դնում է նոր խնդիրներ՝ մեծ, բարդ, պատասխանատու խնդիրներ: Անհրաժեշտ են գործուն, խոշոր մասշտաբի միջոցառումներ, որոնք նպատակամղված լինեն ծագած դժվարությունների և անհա-

մամասնությունների վերացմանը, գյուղատնտեսական արտադրության արդյունավետության բարձրացմանը, սննդամթերքների ասպարեզում երկրի աճող պահանջմունքների բավարարմանը: Այդպիսի միջոցառումներ մշակված են, և դրանք պետք է քննարկվեն ՍՄԿԿ Կենտկոմի սույն պլենումում:

Կառավարությանը կողմնորոշելով պարենային պրոբլեմի կոմպլեքսային լուծմանը, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, ինչպես ես արդեն ասացի, խնդիր դրեց ապահովել պարենամթերքի բոլոր տեսակների կայուն մատակարարումը բնակչությանը, նկատելիորեն ավելացնել բարձրորակ մթերքների սպառումը, էապես բարելավել սննդի կառուցվածքը: ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի ներկայացրած պարենային ծրագրի նախագիծը համապատասխանում է այդ խնդրին: Դա էլ հենց կոնկրետ հոգատարությունն է մարդկանց նկատմամբ, սովետական մարդու նկատմամբ: **(Ծափահարություններ):**

Գյուղատնտեսական արտադրության պլանավորվող դինամիկայի տվյալները բերված են ծրագրում: Կհիշատակեմ միայն մի քանի թվեր: Այսպես, ենթադրվում է հացահատիկի տարեկան միջին արտադրությունը տասներկուերորդ հնգամյակում հասցնել 250—255 միլիոն տոննայի, միսը՝ 20—20,5 միլիոն տոննայի, կաթինը՝ 104—106 միլիոն տոննայի, բանջարեղենինը՝ 37—39 միլիոն տոննայի, պտուղներինն ու հատապտուղներինը՝ 14—15 միլիոն տոննայի:

Արդեն տասնմեկերորդ հնգամյակում հացի և հացաբուլկեղենի լայն տեսականու, կարտոֆիլի և շաքարի ասպարեզում բնակչության պահանջարկը բավարարելու հետ մեկտեղ ծրագրվում է ապահովել ձավարեղենի, հրուշակեղենի, մարգարինի, ձվի և ձկան պահանջմունքները, ինչպես նաև բարելավել մսի, կաթի, ձեթի և պտուղ-բանջարեղենի մատակարարումը: Իսկ տասներկուերորդ հնգամյակում հիմնական շեշտը կդրվի մսի, ձեթի, բանջարեղենի ու մրգերի հիմնական տեսակների սպառումն ավելացնելու վրա:

ՀԻՄՆԱԿԱՆ ՍՆՆԴԱՄԹԵՐՔՆԵՐԻ ՍՊԱՌՈՒՄԸ

(տարեկան բնակչության մեկ շնչին՝ կիլոգրամ)

| | 1980 *թվական* | 1990 *թվական* |
|---|---|---|
| *Միս և մսամթերք* | 58 | 70 |
| *Ձուկ և ձկնամթերք* | 17,6 | 19,0 |
| *Կաթ և կաթնամթերք* | 314 | 330—340 |
| *Ձու (հատ)* | 239 | 260—266 |
| *Շաքար* | 44,4 | 45,5 |
| *Ձեթ* | 8,8 | 13,2 |
| *Բանջարեղեն և բոստանային կուլտուրաներ* | 97 | 126—135 |
| *Միրգ և հատապտուղ* | 38 | 66— 70 |

Ընդ որում, իհարկե, ենթադրվում է, որ սպառման ծրագրում նշված մակարդակը երկրի միջինն է: Կոնկրետ շրջաններում այն կգոյավորվի՝ հաշվի առնելով ազգային ավանդույթները, կլիմայական պայմանները և մյուս առանձնահատկությունները:

Առաջադրված նպատակների իրականացման համար ծրագրով նախատեսվում է ամբողջ ագրոարդյունաբերական կոմպլեքսի փոխշաղկապված, առավել հավասարակշռված զարգացում: Տասներկուերորդ հնգամյակում այդ կոմպլեքսը կստանա ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ կատարվող կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալի մոտ մեկ երրորդը:

Ծրագրում շարունակվում է գյուղատնտեսության հետագա զարգացման՝ կուսակցության գիծը: Եվ դա ճիշտ է, քանի որ հենց այդ զարգացումն է ներկայացնում պարենային պրոբլեմի արմատական լուծման ելակետը: Գյուղատնտեսության մեջ հիմնական արտադրաֆոնդերը պլանավորվում է ավելացնել մոտավորապես 1,5 անգամ, կոլտնտեսությունների և սովխոզների էներգետիկ կարողությունները՝ 1,6 անգամ, գյուղին հանքային պարարտանյութերի մատակարարումները՝ 1,7 անգամ: Ընթացիկ տասնամյակում կաճի տրակտորների, կոմբայնների և գյուղի համար նախատեսված մյուս մեքենաների արտադրությունը, կբարելավվեն դրանց որակական բնութագրերը: Նախատեսված է ոռոգելի հողերի տարածությունը 1990 թվականին հասցնել 23—25 միլիոն հեկտարի:

Բայց հիշյալ միջոցառումները հարկ եղած փոխհատուցում կտան միայն այն դեպքում, եթե մենք սովորենք շատ ավելի լավ, քան այժմ, օգտագործել մեքենաներն ու պարարտանյութերը, այն ամենը, ինչ ունի և ինչ ունենալու է գյուղատնտեսությունը: Մենք ընդարձակ ցանքատարածություններ ունենք: Մենք ունենք անասունների հսկայական գլխաքանակ: Բայց բերքատվությունն ու մթերատվությունը բացահայտորեն անբավարար են աճում:

Միանգամայն հասկանալի է, հատկապես մեր ոչ դյուրին կլիմայական պայմաններում, հնարավորին չափ մեծ ցանքատարածություններ ունենալու ձգտումը:

Բայց գլխավորն այսօր, և մանավանդ վաղը՝ բերքատվության բարձրացումն է: Դա նշանակում է առաջին պլանի վրա դնել սելեկցիան և սերմնաբուծությունը: Դա ենթադրում է պարարտանյութերի բոլոր տեսակների արդյունավետ օգտագործում: Դա պահանջում է հողագործության գիտականորեն հիմնավորված, լավ մտածված սիստեմի արմատավորում, որը լիովին հաշվի է առնում յուրաքանչյուր գոտու և մարզի, յուրաքանչյուր շրջանի, յուրաքանչյուր տնտեսության բնատնտեսական պայմանները:

Հասկանալի է նաև ավելի շատ անասուններ ունենալու ձգտումը: Բայց արդի պայմաններում անասնապահության ասպարեզում էլ գլխավորը յուրաքանչյուր կովի կաթնատվությունը և հանձնվող անասունների միջին քաշն ավելացնելն է: Դա գլխավոր խնդիր է դարձնում գլխաքանակի որակական կազմի կատարելագործումը, տոհմային աշխատանքի բարելավումը, բարձր մթերատու ցեղատեսակների պատկանող կենդանիների բազմացումը: Եվ, իհարկե, կերի արտադրության զգալի աճը, դրա որակի բարձրացումը և ռացիոնալ օգտագործումը:

Մի խոսքով, գյուղատնտեսության արդյունավետության բանալին արտադրության ինտենսիվացումն է: Եվ պարենային ծրագիրը նպատակամղում է հենց դեպի այդ ուղին: Այստեղից էլ այն պատասխանատու խնդիրները, որոնք ծառացած են նաև մեր գիտության առջև: Սովետական գիտնականները քիչ բան չեն արել գյուղատնտեսության վերելքի համար: Բայց այն, ինչով մենք կարող էինք բավարարվել երեկ, արդեն բացահայտորեն անբավարար է վաղը և նույնիսկ այսօր: Ահա դրանից էլ պետք է ելնի գիտությունը:

Արդյունավետության կուրսը պահանջում է գյուղատնտեսության հետ կապված ճյուղերի առավել արագ զարգացում: Մենք ավելի ու ավելի հաճախ ենք հանդիպում այնպիսի դրության, երբ նեղ տեղ է դառնում արտադրանքի ոչ թե արտադրությունը, այլ դրա պահպանումը, վերամշակումը, այն սպառողին հասցնելը: Արդեն հիմա, օրինակ, ունենալով ավելի զարգացած սննդարդյունաբերություն, մենք կարող էինք շատ ավելի մարգարին, մակարոնեղեն և հրուշակեղեն, մանկական սննդամթերքներ, կոնցենտրատներ և այլ մթերքներ արտադրել: Ես արդեն առիթ եմ ունեցել ասելու այն մեծ կորուստների մասին, որոնց պատճառն այն է, որ վերամշակող ճյուղերի կարողությունները չեն համապատասխանում անասունների, թռչունների, կաթի մթերումների ծավալներին: Կամ կարտոֆիլի, բանջարեղենի, մրգերի պահպանման ու վերամշակման ժամանակ առաջացող կորուստների մասին:

Դրությունը շտկելու համար նախագիծը նպատակամղում է դեպի սննդի և մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության վերելքը: Մեծացվում են սառցարանների կարողությունները և էլևատորների տարողությունները: Զարգացվում է տարայի տնտեսությունը: Սակայն ծրագրի կատարման ընթացքում այստեղ կպահանջվեն որոշակի ճշգրտումներ: Մենք ամենքս հասկանում ենք, որ մեր հնարավորությունները բնավ էլ անսահմանափակ չեն, մանավանդ հրնգ-

ամյակի կեսերին: Բայց մինչև 1990 թվականը հարկավոր է հասնել այն բանին, որ կարտոֆիլն ու բանջարեղենը ավելի լրիվ ապահովված լինեն պահեստներով, շաքարի ճակնդեղը ավելի կարճ ժամկետում վերամշակվի: Այս ամենի համար հարկ է լրացուցիչ կերպով աշխատել:

Առավելագույն ուշադրություն պետք է նվիրվի ագրոարդյունաբերական կոմպլեքսի այն օբյեկտների ժամանակին գործարկմանը, որոնք հնարավորություն են ընձեռում կարճ ժամկետում ապահովելու սննդամթերքների առավելագույն աճ: Այս ասպարեզում առայժմ կարգուկանոն չկա: Գյուղատնտեսական մեքենաշինության և քիմիական արդյունաբերության ձեռնարկությունների, անասնապահական համալիրների, հանքային պարարտանյութերի պահպանման մեքենայացված պահեստների, սիլոսային կառույցների, ջերմոցային կոմբինատների, մրգապահեստների, համակցված կերի ձեռնարկությունների, ինչպես նաև սննդարդյունաբերության և առևտրի օբյեկտների գործարկման պլանները անբավարար են կատարվում: Կուսակցական, սովետական և տընտեսական մարմինները, արհմիությունները ու կոմերիտմիությունը պետք է վճռականորեն փոխեն ագրոարդյունաբերական կոմպլեքսի կառույցներին ցույց տրվող վերաբերմունքը: Դրանք հարկավոր է համարել երկրի հարվածային կառույցներ: **(Ծափահարություններ):**

Պարենային ծրագրի օրգանական մասն են կազմում գյուղի սոցիալական վերակառուցման միջոցառումները: Նկատի է առնվում բարեկարգ բնակարանների կառուցումը, հիմնականում առանձնատնային տիպի, անձնական օժանդակ տնտեսություն՝ բակային շինություններով: Կընդլայնվի դպրոցների, մանկական նախադպրոցական հիմնարկների, ակումբների շինարարությունը: Բարելավվում է գյուղական բնակչության բժշկական, առևտրական և կենցաղային սպասարկումը:

Հարկ չկա ապացուցելու, որ ինչքան մենք եռանդուն և հիմնավոր կերպով զբաղվենք գյուղում բնակարանային, կուլտուր-կենցաղային, ճանապարհային շինարարությամբ, այնքան արտադրողական կլինի գյուղացու աշխատանքը: Ուստի նախատեսվում է 80-ական թվականներին այդ նպատակներին հատկացնել մոտավորապես 160 միլիարդ ռուբլի: Նույնիսկ մեր մասշտաբներով դա մեծ թիվ է: Բայց դա ո՛չ միայն մեծ թիվ է: Դա մեծ քաղաքականություն է, որն ուղղված է քաղաքի և գյուղի միջև եղած սոցիալական տարբերությունների վերացմանը: Ուրեմն և՝ մարքսիզմ-լենինիզմի կողմից գիտականորեն հիմնավորված մեր ծրագրային պահանջներից մեկի կենսագործմանը: **(Երկարատև ծափահարություններ):**

Հանգամանորեն մշակված է նաև ծրագրի այնպիսի ասպեկտը, ինչպիսին արտաքին տնտեսական կապերն են: ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի մասնակիցներին հայտնի է, որ վերջին տարիներս, հատկապես անբերրիության պատճառով, մենք ստիպված էինք արտասահմանից գնել հացահատիկ, միս և մի շարք այլ մթերքներ: Դա արվում էր ժողովրդի շահերից ելնելով: Ապագայում ևս մենք ամենևին էլ մտադիր չենք հրաժարվել այն բանից, ինչը կարող է տալ արտաքին առևտուրը պարենի ռեսուրսները համալրելու նպատակով, բնականաբար, հաշվի առնելով տնտեսական նպատակահարմարությունը: Ուստի միանգամայն օրինաչափ է, որ ծրագրի նախագծում կանխատեսվում է համագործակցություն արտասահմանյան երկրների, առաջին հերթին՝ սոցիալիստական երկրների հետ:

Նախագիծը ելնում է կապիտալիստական երկրներից պարենի ներմուծումը կրճատելու անհրաժեշտությունից: Երկրի շահերը պահանջում են, որ մենք ունենանք բավարար չափով սեփական պարենային և փուրաժային ռեսուրսներ, որը մեզ ապահովեր ամեն տեսակ պատահականություններից: Դրա հետ մեկտեղ, ինչպես դուք գիտեք, որոշ պետությունների ղեկավարություններ ձըգտում են սովորական առևտրական գործառնությունները, այնպիսիք, ինչպիսիք են, օրինակ, հացահատիկի վաճառքը, դարձնել մեր երկրի վրա ճնշում գործադրելու միջոց, քաղաքական ճնշման գործիք: Դրա հետ մենք երբեք չենք հաշտվել և մտադիր չենք հաշտվել: **(Ծափահարություններ):** Կարծում եմ, որ



ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի անդամները կպաշտպանեն նման հարցադրումը: **(Երկարատև ծափահարություններ):**

Այսպիսով, ընկերնե՛ր, պարենային ծրագրի նախագիծը համապատասխանում է ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումներին, ժողովրդի բարեկեցության բարձրացման՝ կուսակցության գծին: Եվ մենք կարող ենք դրան հիմնականում հավանություն տալ: **(Ծափահարություններ):**

Ինչ վերաբերում է պարենի այս կամ այն տեսակի արտադրության կոնկրետ ցուցանիշներին, ապա դրանք հարկավոր է դիտել որպես նվազագույն: Անհրաժեշտ է բոլոր ջանքերը գործադրել դրանք ոչ միայն կատարելու, այլև գերակատարելու համար: **(Ծափահարություններ):** Նախագծի վրա աշխատելիս ոչ քիչ առաջարկություններ եղան կապիտալ ներդրումների և նյութատեխնիկական ռեսուրսների ծավալն ավելացնելու մասին: Դրանցից մի քանիսը հաշվի են առնված: Մյուսները նպատակահարմար է համարվել քննության առնել տարեկան պլանները և տասներկուերորդ հնգամյակի պլանը մշակելիս: Հետևաբար, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը և պետպլանը պետք է շարունակեն աշխատանքը, խորացնելով և կոնկրետացնելով, իսկ ինչ-որ տեղ նաև կատարելագործելով ծրագիրը, այն հաշվով, որ մենք հաստատ իմանանք, որ յուրաքանչյուր տարին, յուրաքանչյուր նոր ներդրված միլիարդը մեզ մոտեցնում է նպատակին, և իմանանք, թե հատկապես որքան է մոտեցնում: **(Ծափահարություններ):**

Ընկերնե՛ր: Պարենային ծրագիրը առաջադրում է ըստ ժամկետների տարբեր խնդիրներ՝ թե՛ երկարաժամկետ, թե՛ միջին ժամկետի, թե՛ շտապ, անհետաձգելի խնդիրներ: Ինձ թվում է, որ այժմ հենց վերջիններս է հարկավոր դնել մեր հոգսերի կենտրոնում:

Ըստ երևույթին, մենք բոլորս համախոհ ենք այն բանում, որ պարենային ծրագիրն իր առաջին պտուղները պետք է տա արդեն ընթացիկ տարում: Դա ավելի բարձր պահանջներ է ներկայացնում գյուղատնտեսության ասպարեզում, ամբողջ ագրոարդյունաբերական կոմպլեքսում կատարվող աշխատանքների ամբողջ ցիկլին:

Յուրաքանչյուր շրջանում, յուրաքանչյուր մարզում, յուրաքանչյուր հանրապետությունում պետք է մշակվի և իրականացվի կորուստների դեմ մղվող պայքարի, մթերող, տրանսպորտային և առևտրական կազմակերպությունների անխափան աշխատանքի միջոցառումների հստակ սիստեմ: Որքան կարճ, որքան պարզ լինեն դաշտի և խանութի միջև եղած կապերը, այնքան լավ կլինի գործի համար, սպառողի համար: Ընթացիկ տարին պետք է, մասնավորապես, դառնա լուրջ քննություն պտղաբանջարեղենի տնտեսության մինիստրության համար:

Անդրադառնալով կորուստների դեմ մղվող պայքարին, կկամենայի նկատել, որ այդ պայքարը պետք է մղել նաև սպառման ոլորտում: Ի՛նչ մեղքներս թաքցնենք, հասարակական սննդի ասպարեզում, սանատորիաներում և հանգստյան տներում թափոնները անչափ շատ են: Այդ բոլոր հիմնարկությունները, ինչպես հայտնի է, առաջին հերթին են ապահովվում մթերքներով: Այդպես էլ պետք է արվի: Բայց կերակրի պատրաստման վատ որակի, փաթեթված կիսաֆաբրիկատների բացակայության, հաճախ էլ աշխատողների անբարեխղճության պատճառով մեծ քանակությամբ արժեքավոր սննդամթերքներ փչացվում-թափվում են կամ նպատակին չեն ծառայում: Մթերքների նկատմամբ հոգածո վերաբերմունքը, դրանց խնայողությունը սպառման բարձր կուլտուրայի նշան է:

Այն խոշոր հարցը, որին ըստ արժանվույն ուշադրություն է նվիրվում նաև պարենային ծրագրում, անձնական օժանդակ տնտեսություններն են և այգեգործական-բանջարաբուծական կոոպերատիվները: Ինչպես հայտնի է, մսի, կաթի, թռչունների, մանավանդ կարտոֆիլի, բանջարեղենի և մրգերի արտադրության մեջ դրանց բաժինը բավական ծանրակշիռ է: Պետության, տեղական սովետների, կոլտնտեսությունների և սովխոզների կողմից այդ տնտեսություններին ցույց տրվող օգնության հետագա մեծացումը,— իսկ այդ օգնությունը հարկավոր է ցույց տալ անպայման և սիստեմատիկաբար,— կարող է

արագ և շոշափելի փոխհատուցում տալ: Այս ասպարեզում շատ բան պետք է անի նաև Ցենտրոսոյուզը: Այն կոչված է, եթե կարելի է այսպես ասել, դեմքով դառնալու դեպի անձնական տնտեսությունները, նպաստելու դրանց նորմալ գործունեությանը:

Ավելի լրիվ կարելի էր օգտագործել նաև ձեռնարկությունների օժանդակ տնտեսությունների հնարավորությունները: Յուրաքանչյուր արդյունաբերական ձեռնարկություն, յուրաքանչյուր կազմակերպություն, որոնք ունակ են վարելու այդպիսի տնտեսություններ, պետք է, որպես կանոն, ունենան այդպիսիք: Այդ նպատակներով արդյունաբերական ձեռնարկություններին և կազմակերպություններին հարկավոր է հատկացնել գյուղատնտեսական անհրաժեշտ հողատարածություններ: Լավ արդյունք կարող է տալ նաև ձկան արտադրության համար այն ջրավազանների օգտագործումը, որպիսիք ունեն շատ ձեռնարկություններ:

Այսպիսի հարցերը պետք է լուծել շտապ կարգով, համարձակորեն և նախաձեռնողաբար: Դա կարող է անմիջապես նկատելի արդյունքներ տալ:

Թույլ տվեք վստահություն հայտնել, որ գյուղի աշխատավորները, ագրոարդյունաբերական կոմպլեքսի բոլոր աշխատողները հարվածային աշխատանքով կնշանավորեն պարենային ծրագրի իրականացման առաջին տարին: **(Ծափահարություններ):**

Ընկերնե՛ր: Պարենային ծրագրի հետ միաժամանակ մենք պետք է քննարկենք և ընդունենք միջոցառումների սիստեմ՝ ագրոարդյունաբերական կոմպլեքսի կառավարումը բարելավելու, տնտեսական մեխանիզմը կատարելագործելու նպատակով: Այդ հարցերի միջև եղած կապը կասկածից վեր է:

Պարենային պրոբլեմի լուծումը ենթադրում է գյուղատնտեսության արտադրուժերի հետագա զարգացում, վերամշակող արդյունաբերության կարողությունների մեծացում: Բայց դա գործի մի կողմն է: Մյուս, ոչ պակաս կարևոր կողմը արտադրահարաբերությունների կատարելագործումն է: Կառավարման և պլանավորման մեթոդները, խթանման եղանակները, տնտեսավարման մեխանիզմը պետք է պայմաններ ստեղծեն բարձր արտադրողական աշխատանքի համար: Հենց այս սկզբունքային դրույթներից են ելնում ձեզ մոտ եղած որոշումները: Համառոտակի՝ ո՞րն է դրանց էությունը:

Առաջին անգամ ագրոարդյունաբերական կոմպլեքսը առանձնացվում է որպես պլանավորման ու կառավարման ինքնուրույն օբյեկտ: Դա հնարավորություն կընձեռի ավելի լավ, ավելի արդյունավետ զուգակցելու տերիտորիալ, ճյուղային և ծրագրային-նպատակային պլանավորումը: Վերջինիս հիմքում դրվում է, կրկնում եմ, վերջնական արդյունքը՝ պարենի անխափան մատակարարումը երկրին: Հենց այդ արդյունքին, այդ նպատակին է ենթարկվում գյուղատնտեսության և դրա հետ կապված ճյուղերի կառավարման՝ մի ամբողջի մեջ շաղկապված սիստեմը ինչպես կենտրոնում, այնպես էլ տեղերում:

Շրջաններում, երկրամասերում, մարզերում և ինքնավար հանրապետություններում ստեղծվում են ագրոարդյունաբերական միավորումներ, իսկ միութենական հանրապետություններում և կենտրոնում՝ ագրոարդյունաբերական հանձնաժողովներ: Զուգահեռաբար կպարզեցվի և կէժանացվի ապարատը, որպեսզի կարելի լինի ազատվել ավելորդ օղակներից, ապահովել կառավարման ավելի մեծ օպերատիվություն և արդյունավետություն:

Հատուկ նշանակություն է տրվում շրջանային օղակին: Այստեղ ձևավորվում է կառավարման իսկապես լիիրավ ու դեմոկրատական մի մարմին, որն ունակ է լրիվ չափով ներգործելու արտադրության վրա՝ հաշվի առնելով կոլտնտեսությունների և սովխոզների շահերը: Ռուսաստանի Ֆեդերացիայի, Ուկրաինայի, Վրաստանի, Լատվիայի, Էստոնիայի մի շարք շրջաններում ագրոարդյունաբերական միավորումների կուտակած փորձը ցույց է տալիս, որ դա ճիշտ, հեռանկարային միջոցառում է: Դրա հետ մեկտեղ բարձրանում է հանրապետական, երկրամասային, մարզային կուսակցական և սովետական մարմինների պատասխանատվությունը թե՛ ընդհանուր միութենական պարենային ֆոնդի ձևավորման համար, թե՛ իրենց ռեգիոններում պարենի վիճակի համար:

Կկամենայի նաև շեշտել եզրափակող օղակի՝ ագրոարդյունաբերական



հանձնաժողովների դերն ու նշանակությունը: Դրանք օժտվում են մեծ իրավունքներով: Դրանց վրա է դրվում բնակչությանը սննդամթերքներ մատակարարելու գործի բարելավման պատասխանատվությունը, ագրոարդյունաբերական կոմպլեքսի մեջ մտնող բոլոր մինիստրությունների և գերատեսչությունների աշխատանքի կոորդինացումը:

Քաջ հայտնի է, որ մեր երկրում գյուղատնտեսության տարբերիչ գիծը արտադրական և բնակլիմայական այն պայմանների արտակարգ բազմազանությունն է, որոնցում կատարվում է գործը: Այստեղ տեղ չունեն շաբլոնները, չի կարող այնպես լինել, որ ինչպես ասվում է, բոլորին նույն սանրի չափով խուզեն: Այստեղ հատկապես հարկավոր են տնտեսատիրոջ շրջահայեցություն, ինքնուրույնություն՝ որոշումներ ընդունելիս, ձեռներեցություն: Ահա թե ինչու ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն ելել և ելնում է կոլտնտեսությունների ու սովխոզների ըստ ամենայնի ամրապնդելու, դրանց կազմակերպական-տնտեսական ինքնուրույնությունը բարձրացնելու անհրաժեշտությունից:

Գյուղում մեր կադրերն անչափ աճել են, նրանք ի վիճակի են լուծելու մեծ ու բարդ խնդիրներ: Վստահություն ղեկավարների նկատմամբ, պահանջկոտ և շահամետ մոտեցում նրանց գործունեությանը, նախաձեռնության խրախուսում և դրա հետ մեկտեղ հանձնարարված գործի համար անձնական պատասխանատվության բարձրացում— այսպիսին է կուսակցության քաղաքականության էությունն այդ հարցում: **(Ծափահարություններ):**

Անհրաժեշտ է վճռականորեն ձերբազատվել վարչարարությունից և մանրախնդիր խնամակալությունից կոլտնտեսությունների և սովխոզների նկատմամբ, որոնք ամենայն իրավամբ կարելի է անվանել ամբողջ գյուղատնտեսական արտադրության հիմքը: Ոչ ոքի չպետք է թույլ տալ, որ նրանցից պահանջեն պետական պլանով չնախատեսված ինչ-որ առաջադրանքի կատարում, պահանջել տեղեկություններ, բացի պետական հաշվետվությամբ սահմանվածից: Հարկավոր է բոլոր մակարդակներում խստիվ պահպանել այս կանոնը և դրանից ոչ մի բացառություն չանել: Հուսով եմ, ընկերնե՛ր, մենք բոլորս համամիտ ենք այն բանում, թե որքան դա կարևոր և որքան դա հարկավոր է: **(Ծափահարություններ):**

Գյուղատնտեսության արդյունավետության բարձրացումն անհնար է առանց իսկական և ոչ թե ձևական տնտհաշվարկի համար կայուն տնտեսական պայմանների ստեղծման: Այժմ, ցավոք, այդպիսի պայմաններ կան բնավ ոչ ամենուրեք: Շատ կոլտնտեսություններ և սովխոզներ աշխատում են վնասով: Նրանք վնասներով են իրացնում միսը, կաթը և անասնապահական արտադրանքի այլ տեսակներ: Նման իրավիճակի պատճառները տարբեր են: Բայց հետևանքը մեկն է՝ գինը, շահույթը, վարկը կորցնում են տնտեսական լծակների դերը, չեն խթանում արտադրության աճը:

Գյուղում տնտեսական իրադրությունը բարելավելու, բարվոքելու համար ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն անհրաժեշտ է համարում իրականացնել մի շարք միջոցառումներ: Դրանք իրենց մասշտաբներով, առանց բացառության բոլոր կոլտնտեսությունների ու սովխոզների վրա խոր ներգործությամբ, ամբողջությամբ վերցված, խոշորագույն տնտեսական-քաղաքական ձեռնարկումներ են:

1983 թվականի հունվարի 1-ից բարձրացվում են խոշոր եղջերավոր անասունների, խոզերի, ոչխարների, կաթի, հացահատիկի, շաքարի ճակնդեղի, կարտոֆիլի, բանջարեղենի և մի քանի մթերքների գնման գները: Կկիրառվեն նաև այն արտադրանքի գների հավելումներ, որն արտադրվում է ավելի վատ պայմաններում, վնասով աշխատող ցածր շահութաբեր տնտեսություններում: Այդ նպատակների համար պետության ծախսերը կկազմեն տարեկան 16 միլիարդ ռուբլի:

Մյուս կարևոր միջոցառումը պետական օգնության ավելացումն է նվազ շահութաբեր և վնասով աշխատող կոլտնտեսություններում բնակարանային շինարարության, մանկական նախադպրոցական հիմնարկությունների, պիոներական ճամբարների, ակումբների, կուլտուրկենցաղային այլ օբյեկտների, ճանապարհների կառուցման և պահպանման համար: Նախատեսվում է այդ նպատակների համար տարեկան հատկացնել 3,3 միլիարդ ռուբլի: Դա պատ-

կառելի օժանդակություն է, և հարկավոր է այն օգտագործել առավելագույն հատույցով:

Եվ, վերջապես, կոլտնտեսությունների ֆինանսական դրության բարելավման համար որոշված է դուրս գրել բանկի վարկերի գծով նրանց պարտքը 9,7 միլիարդ ռուբլի գումարով և ավելի ուշ ժամկետների տեղափոխել ավելի քան 11 միլիարդ ռուբլու չափով պարտքի մարումը:

Դա կոլտնտեսություններին հնարավորություն կընձեռի ազատված միջոցները օգտագործելու արտադրության հետագա ընդլայնման համար:

Բարելավվում է աշխատանքի վարձատրությունը սովխոզներում և կոլտնտեսություններում: Այստեղ գլխավորն այն է, որ յուրաքանչյուր աշխատավոր տեսնի, շոշափելիորեն զգա իր արածի և իր վաստակածի միջև եղած ուղղակի, պարզ և հասկանալի կապը:

Արդեն այս հնգամյակում նախատեսվում է ագրոարդյունաբերական կոմպլեքսի ճյուղերում լայնորեն արմատավորել բրիգադային և կոլեկտիվ կապալը, ակորդային-պարգևային սիստեմը: Գյուղատնտեսության աշխատողների աշխատանքի վարձատրության մեջ, ինչպես այդ արվում է արդյունաբերության մեջ, ավելի մեծ չափով հաշվի կառնվեն բնակլիմայական պայմանները: Սիբիրի, Հեռավոր արևելքի, Ղազախստանի շատ շրջաններում կիրառվելու են շրջանային գործակիցներ: Սովխոզներում և մյուս պետական ձեռնարկություններում անասնապահության աշխատողների վրա տարածվում են աշխատանքի անընդհատ ստաժի համար հավելավճարներ տալու պայմանները. նրանց տրվում են նաև ամենամյա լրացուցիչ վճարովի արձակուրդներ:

Միջին հաշվով 30 տոկոսով բարձրացվում են սովխոզների ղեկավար աշխատողների, մասնագետների և ծառայողների պաշտոնեկան ռոճիկները: Կառավարման մարմիններից կոլտնտեսություններ ու սովխոզներ տեղափոխված մասնագետների համար երեք տարվա ընթացքում (իսկ ցածր շահութաբեր և վնասով աշխատող տնտեսություններ տեղափոխվելիս՝ հինգ տարվա ընթացքում) պահպանվում է ամսական միջին այն վաստակը, որ նրանք ստանում էին աշխատանքի նախկին վայրում. նրանց վճարվում են նաև միանվագ նպաստներ 3-ից մինչև 5 ամսվա ռոճիկի չափով: Նախատեսված են նաև լրացուցիչ արտոնություններ երիտասարդ մասնագետների համար:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեում ստացվող շատ նամակներում նշվում է, որ վերջին տարիներս սկսել է բացահայտորեն թերագնահատվել բնավարձի նշանակությունը:

Դա բացասաբար է անդրադառնում կոլտնտեսականների և սովխոզների բանվորների շահերի վրա, թուլացնում է անձնական օժանդակ տնտեսության զարգացման բազան, նեղացնում կոլտնտեսային շուկայի հնարավորությունները:

Ուստի նախատեսվում է ընդլայնել բնավարձի պրակտիկան: Այսպես, բրիգադների և օղակների այն բանվորները, որոնք զբաղված են հացահատիկային կուլտուրաների աճեցմամբ, անվճար կստանան պլանից ավելի աճեցված հացահատիկի մինչև 15 տոկոսը: Առաջարկվում է աշխատավարձի հաշվին հացահատիկ տալ բոլոր մշտական աշխատողներին, ինչպես նաև բերքահավաքի համար ներգրավված քաղաքացիներին: Թույլատրված է սովխոզների աշխատողներին, ինչպես նաև կարտոֆիլի, բանջարեղենի, պտուղների, հատապտուղների, խաղողի, բոստանային և կերային կուլտուրաների աճեցմանը և բերքահավաքին մասնակցած մյուս քաղաքացիներին տալ պլանի շրջանակներում ստացված արտադրանքի մինչև 15 տոկոսը, իսկ պլանից դուրս՝ տնտեսությունների հայեցողությամբ, խորհուրդ է տրված, որ նույն կարգը կիրառեն նաև կոլտնտեսությունները:

Եվ, ընդհանրապես, ընկերնե՛ր, անհրաժեշտ է խրախուսել կոլտնտեսականների ակտիվությունը, ուժեղացնել վերահսկողությունը արտադրության կառավարման դեմոկրատական սկզբունքների կիրառման նկատմամբ: Չէ՞ որ գաղտնիք չէ, որ մի շարք կոլտնտեսություններում ընդհանուր ժողովները, որոնք, ինչպես հայտնի է, կոլտնտեսության կառավարման բարձրագույն մարմինն են, անցկացվում են ոչ կանոնավոր կերպով: Դա իջեցնում է կոլտնտե-



սականների դերը ներկոլտնտեսային կյանքի հարցերի լուծման գործում: Չի կարելի շրջանցել, սահմանափակել կոլտնտեսությունների կանոնադրություններով նախատեսված դեմոկրատական պրոցեդուրաները: Կյանքը, փորձը պահանջում են բարձրացնել ներկոլտնտեսային դեմոկրատիայի դերը: Դա միայն օգուտ կարող է բերել: **(Ծափահարություններ):**

Ճիշտ այդպես էլ միայն օգտակար կլինի կառավարմանը սովխոզների բանվորների և ծառայողների մասնակցության դեմոկրատական սիստեմի կատարելագործումը: Այստեղ մեծ ռեզերվներ կան: Դրանց օգտագործումը նոր հնարավորություններ կբացի արտադրության վերելքի համար:

Լուրջ փոփոխություններ են մտցվում կոլտնտեսությունների ու սովխոզների և դրանց սպասարկող կազմակերպությունների՝ «գյուղտեխնիկայի», շինարարների, մելիորատորների, մթերողների հարաբերություններում: Այդ կազմակերպությունների աշխատանքի գնահատման, դրանց ղեկավարների և մասնագետների պարգևատրման հիմքում, սպասարկումների կատարման հետ մեկտեղ, կդրվեն նաև գյուղատնտեսական արտադրության արդյունքները, արտադրանքի ստացումը: Եթե ավելացել է հացահատիկի, մսի, կաթի արտադրությունը, մեծացել են պարենի մատակարարումները՝ ստացիր պարգև և բարձր վարձատրություն: Իսկ եթե այդ ցուցանիշներն իջնում են, ապա կոլտնտեսություններն ու սովխոզներն սպասարկող կազմակերպությունների ղեկավարները և մասնագետները զրկվում են պարգևներից: Եվ դա արդարացի կլինի: Ինչ վերաբերում է մթերող կազմակերպությունների գործունեությանը, ապա այն կգնահատվի՝ ուղղակի կախման մեջ դնելով գյուղատնտեսական արտադրանքի մթերումների պետական պլանների կատարումից:

Եվս մի կարևոր հանգամանք: Աճեցված արտադրանքն ավելի լրիվ օգտագործելու, այն լիովին պահպանելու և վերամշակելու համար նախատեսված է տասներկուերորդ հնգամյակում ավարտել անցումը անմիջականորեն կոլտնտեսություններում ու սովխոզներում անասունների, թռչունների, կաթի, կարտոֆիլի, բանջարեղենի, պտուղների և հատապտուղների ընդունմանը: Այդ արտադրանքը կփոխադրվի մթերող կազմակերպությունների տրանսպորտով:

Իմ հիշատակած միջոցառումների, կոլտնտեսությունների և սովխոզների էկոնոմիկայի ամրապնդման, կադրերի ամրակայման, գյուղատնտեսական արտադրության խթանման միջոցառումների իրականացման համար 1983 թվականին լրացուցիչ կհատկացվի ավելի քան 30 միլիարդ ռուբլի: Հիմա խնդիրն այն է, որ այդ միջոցները մոտ ժամանակներս ապահովեն արտադրանքի արտադրության ծանրակշիռ ավելացումը: Եվ այդ խնդիրը անպայման պետք է լուծվի: **(Ծափահարություններ):**

Ընկերնե՛ր: Պարենային ծրագրի կատարումը կպահանջի միլիոնավոր սովետական մարդկանց լարված աշխատանք: Մեր կադրերի գիտելիքներն ու կազմակերպչական արվեստը, մասսաների մեջ կուսակցության աշխատանքի ողջ հարուստ փորձը՝ ամեն բան պետք է գործի դրվի:

Գյուղում կան վեց միլիոն կոմունիստներ՝ կուսակցության կազմի մեկ երրորդ մասը: Ընդ որում, անմիջականորեն գյուղատնտեսական արտադրության մեջ աշխատում են կուսակցության երկու միլիոն 800 հազար անդամներ և անդամության թեկնածուներ, չորս միլիոն կոմերիտականներ: Հենց նրանք, առաջին հերթին նրանք պետք է ցույց տան անձնվեր աշխատանքի, նախաձեռնության, կամքի և հաստատակամության օրինակ: **(Ծափահարություններ):**

Այդ առնչությամբ ուզում եմ հատկապես ասել կոլտնտեսությունների և սովխոզների սկզբնական կուսակցական կազմակերպությունների մասին: Նրանց գործունեությամբ վճռական չափով պայմանավորված են բարոյահոգեբանական կլիման կոլեկտիվներում, կազմակերպվածության ու կարգապահության մակարդակը, աշխատանքային հատույցը և, ուրեմն, վերջնական արդյունքները: Կարևոր է, որ կուսկազմակերպություններն իրենց ջանքերը կենտրոնացնեն գլխավորի վրա: Իսկ գլխավորը մարդկանց հետ տարվող աշխատանքն է:

Շատ բան կախված է նաև գյուղատնտեսական արտադրության ղեկավարներից: Կարելի է վստահ լինել այն տեղամասի համար, որի գլուխ կանգ-

նած է գործիմաց, սրտացավ, մարդկանց հետ աշխատել կարողացող մարդ: Այդպիսի ղեկավարների մասին ասում են՝ մարդն իր տեղում է: Կուսակցության շրջկոմների և մարզկոմների ուղղակի պարտքն է ժամանակին նկատել և առաջ քաշել ընդունակ, հեռանկարային աշխատողներին, նրանց օգնել տիրապետելու ղեկավարման, տնտեսավարման և դաստիարակման արվեստին:

Լավ հայտնի է, որ կոլեկտիվների աշխատանքում բարձր արդյունքները, որպես կանոն, ձեռք են բերվում կայուն ղեկավարության դեպքում: Հենց այդ մասին է վկայում առաջավոր տնտեսությունների օրինակը: Ցավոք, այդ փորձը ամենուրեք չէ, որ պատշաճ կերպով հաշվի է առնվում: Մի շարք մարզերում չարդարացված կերպով հաճախ փոխվում են կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարները:

Պարզ է, որ նման, թույլ տվեք ասել, կադրային քաղաքականության դեպքում դժվար է կոլտնտեսային և սովխոզային արտադրությունը բարձրացնել ժամանակակից պահանջների մակարդակին:

Ինչպես և միշտ, ընկերնե՛ր, հիմնական բեռը կընկնի կուսակցության շրջկոմների ուսերին: Նրանք կուտակել են մասսաների մեջ տարվող կազմակերպչական և գաղափարադաստիարակչական աշխատանքի մեծ փորձ: Այժմ հարկավոր է է՛լ ավելի բարձրացնել այդ աշխատանքի մակարդակը: Նկատի ունենալով շրջանում լուծվող խնդիրների բարդությունն ու բազմազանությունը, որոշված է իրականացնել կուսակցության գյուղական շրջկոմների ամրապնդման մի շարք միջոցառումներ և մասնավորապես շրջկոմներում ստեղծել գյուղատնտեսական բաժիններ:

Մենք բոլորս համոզված ենք, որ երկրում պարենային գործը բարելավելու կուսակցության առաջ քաշած ծրագիրը միահամուռ պաշտպանություն կգտնի սովետական ժողովրդի կողմից, կառաջացնի սոցիալիստական մրցության նոր վերելք: Արհմիությունների ուղղակի պարտականությունն է նպաստել այն բանին, որ մրցությունն ընդգրկի ամբողջ ագրոարդյունաբերական կոմպլեքսը, խթանի գյուղատնտեսական արտադրության որակի և արդյունավետության համար, վերջնական բարձր արդյունքների համար մղվող պայքարը:

Ընկերնե՛ր: Մեր ստեղծարար պլանների իրականացման համար մենք պետք է պահպանենք խաղաղությունը: Ուստի մենք պատշաճ մակարդակի վրա կպահենք երկրի պաշտպանունակությունը, հաստատակամորեն և նպատակալաց կերպով կշարունակենք պայքարը միջազգային լարվածության թուլացման՝ թե՛ քաղաքական և թե ռազմական լարվածության թուլացման համար: **(Երկարատև ծափահարություններ):**

Բայց մենք լավ գիտենք նաև մի ուրիշ բան. մեր պլանների հաջող կատարումը խաղաղության գործի ամրապնդման կարևոր նախադրյալն է: Սովետական մարդկանց աշխատանքը մեր հայրենիքի հզորության ամրապնդման և բարգավաճման ամենահուսալի հիմքն է:

Մեր կողմից քննության առնվող պարենային ծրագիրը ո՛չ միայն արմատական շրջադարձ է գյուղատնտեսության և դրա հետ կապված ճյուղերի վերելքի գործում: Այդ ծրագիրն իր բնույթով, մասշտաբայնությամբ կոչված է ապահովելու ամբողջ ժողովրդական տնտեսության առաջընթացը:

Կարծում եմ, ընկերնե՛ր, մենք կարող ենք վստահություն հայտնել, որ մեր պլենումի որոշումները երկրի կյանքի, նրա էկոնոմիկայի վրա պակաս ազդեցություն չեն գործի, քան իր ժամանակին ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումի որոշումները, որը կուսակցությունն ու ժողովուրդն իրավամբ անվանեցին պատմական: **(Երկարատև ծափահարություններ):**

Մենք՝ կոմունիստներս, ճանապարհ ենք բացում դեպի ապագան, առաջ ենք գնում անծանոթ ուղիներով: Գնում ենք իսկապես հեղափոխական թափով, գրոհելով նորանոր բնագծեր, նվաճելով նոր բարձունքներ:

Այդպիսի բնագծերից մեկը այն խնդիրներն են, որ կառաջադրի այսօրվա պլենումը: Դրանք, ինչպես մենք բոլորս հասկանում ենք, բարդ և պատասխանատու խնդիրներ են: Բայց մենք չենք տարակուսում, որ կոմունիզմի կառուցման այս բնագիծը ևս հաջողությամբ կնվաճվի: **(Երկարատև ծափահարություններ):**

---

# ՄԻՆՉԵՎ 1990 ԹՎԱԿԱՆՆ ԸՆԿԱԾ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆԻ ՍՍՀՄ ՊԱՐԵՆԱՅԻՆ ԾՐԱԳԻՐԸ

**1982 թվականի մայիսի 24-ին կայացած ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումը հավանություն տվեց մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի ՍՍՀՄ պարենային ծրագրին: Ծրագրի շարադրանքը հրապարակվում է ստորև:**

Սովետական ժողովուրդը կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ ակնառու հաջողությունների է հասել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում: Մեր երկիրն այժմ ունի բարձր զարգացած արտադրաուժեր, հզոր առաջավոր ինդուստրիա, խոշոր, բարձր մեքենայացված գյուղատնտեսություն: ՍՍՀՄ-ում կառուցվել է զարգացած սոցիալիզմի հասարակություն: Ձեռք բերված հաջողությունները վառ ու համոզիչ կերպով բացահայտում են սոցիալիստական հասարակարգի մեծ առավելություններն ու հսկայական հնարավորությունները:

Կուսակցության և սովետական պետության ուշադրության կենտրոնում եղել և մնում է հոգատարությունը մարդու, անհատի համակողմանի ու ներդաշնակ զարգացման ավելի ու ավելի բարենպաստ պայմաններ ստեղծելու նպատակով:

Այդ բնագավառում խոշոր միջոցառումներ են իրականացվել վերջին երեք հնգամյակներում: Աշխատանքի վարձատրության մակարդակն աճել է գրեթե 2 անգամ: Սպառման հանրային ֆոնդերից բնակչության ստացած վճարումներն ու արտոնություններն ավելացել են 2,8 անգամ, բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտները բարձրացել են կրկնակի չափով, ավելի քան 160 միլիոն սովետական մարդիկ բարելավել են իրենց բնակարանային պայմանները: Հետագա զարգացում են ստացել լուսավորությունը, կուլտուրան, առողջապահությունը, բնակչության կենցաղային սպասարկումը:

Սովետական մարդիկ ունեն սոցիալ-տնտեսական և քաղաքական լայն իրավունքներ՝ աշխատանքի ու հանգստի, բնակարանի, անվճար կրթության և բժշկական սպասարկման իրավունք, նրանք ակտիվ մասնակցում են հասարակության և պետության գործերի կառավարմանը: Սովետական քաղաքացիների իրավունքները երաշխավորված են ՍՍՀՄ սահմանադրությամբ:

Սովետական մարդկանց կենսամակարդակի բարձրացման հիմքը նրանց բարեխիղճ աշխատանքն է, որն ապահովում է երկրի էկոնոմիկայի մշտական աճը: Միայն վերջին երեք հնգամյակներում ժողովրդական տնտեսության հիմնական արտադրաֆոնդերը ավելացել են 3,2 անգամ, ազգային եկամուտն աճել է 2,4 անգամ: Դինամիկորեն են աճել արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրանքի արտադրության ծավալները, արագացել են գիտատեխնիկական առաջընթացի տեմպերը:

Երկրի՝ այժմ ստեղծված տնտեսական և գիտատեխնիկական պոտենցիա-

լը հնարավորություն է ընձեռում հաջողությամբ լուծելու կոմունիստական շինարարության նոր, խոշոր մասշտաբի խնդիրները:

ՍՄԿԿ XXVI համագումարը, առաջ քաշելով սոցիալական զարգացման և ժողովրդի բարեկեցության բարձրացման լայն ծրագիր, առաջին պլանի վրա դրեց բնակչությանը սննդամթերքներ մատակարարելու գործի բարելավման խնդիրը: ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևի նախաձեռնությամբ այդ խնդրի լուծման համար մշակվել է մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի ՍՍՀՄ պարենային ծրագիր, որը կուսակցության մոտակա տասնամյակի տնտեսական ստրատեգիայի կարևորագույն բաղկացուցիչ մասն է:

# I. ԱԳՐՈԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԿՈՄՊԼԵՔՍԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԻՄՆԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ ԵՎ ԽՆԴԻՐՆԵՐԸ

Կոմունիստական կուսակցությունը, հետևողականորեն իրականացնելով ագրարային քաղաքականության՝ ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պատմական պլենումում մշակված և հաջորդ պլենումներում, ՍՄԿԿ XXIII—XXVI համագումարներում զարգացված կուրսը, մեծ աշխատանք է կատարել գյուղատնտեսական արտադրության վերելքն ապահովելու ուղղությամբ:

Երկրի էկոնոմիկայի արդյունավետության բարձրացման հիման վրա զգալիորեն ամրապնդվել է ագրոարդյունաբերական կոմպլեքսի նյութատեխնիկական բազան:

Էապես բարելավվել է գյուղատնտեսության տեխնիկական զինվածությունը: Որակապես նորացվել է մեքենատրակտորային համակազմը, բարձրացել է բուսաբուծության և անասնապահության աշխատանքների մեքենայացման մակարդակը: Կոլտնտեսություններում և սովխոզներում բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը:

Արագ զարգացել են հողերի քիմիացումն ու մելիորացումը: Վերջին տասնհինգ տարում գյուղատնտեսությանը հանքային պարարտանյութերի մատակարարումն ավելացել է 3 անգամ, իսկ ոռոգելի և չորացված հողատարածությունները՝ 1,7 անգամ:

Գործարկվում են արտադրության արդյունաբերական տեխնոլոգիայով աշխատող մասնագիտացված անասնապահական համալիրներ և խոշոր թռչնաֆաբրիկաներ, զարգացվում են միջտնտեսային և ագրոարդյունաբերական բարձր արդյունավետ ձեռնարկությունները ու միավորումները:

Ստեղծվել են գյուղատնտեսությանն սպասարկող նոր ճյուղեր՝ անասնապահության և կերի արտադրության մեքենաշինություն, գյուղական շինարարություն, համակցված կերի և միկրոկենսաբանական արդյունաբերություն. զարգացել է գյուղատնտեսական մեքենաշինությունը: Աճել են գյուղատնտեսական մթերքների մթերման, պահպանման ու վերամշակման հետ կապված ճյուղերի արտադրակարողությունները: Արդյունաբերության սննդի ճյուղերի հիմնական արտադրաֆոնդերը վերջին տասնհինգ տարում ավելացել են 2,7 անգամ:

Կոլտնտեսությունների և սովխոզների պրակտիկայում ակտիվորեն ներդրվում են գիտության նորագույն նվաճումները, ավելի ու ավելի լայնորեն են կիրառվում հողագործության հողապաշտպանական սիստեմը, գյուղատնտեսական կուլտուրաների բարձր մթերատու սորտերն ու հիբրիդները, արտադրության առաջավոր տեխնոլոգիաներն ու աշխատանքի կազմակերպման ձևերը:



Դրական էական փոփոխություններ են տեղի ունեցել կոլտնտեսություններն ու սովխոզները կադրերով ապահովելու ասպարեզում: Գյուղում աշխատում են բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ 1,8 միլիոն մասնագետներ և գրեթե 4,5 միլիոն տրակտորիստ-մեքենավարներ ու ավտովարորդներ: Աճել է մյուս մասսայական պրոֆեսիաների բարձրորակ աշխատողների թիվը:

Շատ բան է արված գյուղում կյանքի սոցիալ-կենցաղային պայմանների բարելավման համար: 1965 թվականի համեմատությամբ սովխոզների բանվորների ու ծառայողների ամսական միջին աշխատավարձը 1980 թվականին ավելացավ 2, կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունը՝ 2,3 անգամ. բարելավվեց գյուղի աշխատավորների կենսաթոշակային ապահովությունը: Գյուղական վայրերում այդ ժամանակաշրջանում շահագործման են հանձնըվել մոտ 500 միլիոն քառակուսի մետր ընդհանուր մակերեսով բնակելի տներ, 2,6 միլիոն տեղով մանկական նախադպրոցական հիմնարկներ, 7,7 միլիոն տեղով ակումբներ և կուլտուրայի տներ:

Կուսակցության ագրարային քաղաքականության իրականացման միջոցառումների կենսագործումը, չնայած վերջին տարիների անբարենպաստ եղանակների հարուցած որոշակի դժվարություններին, ապահովեց տասներորդ հնգամյակում գյուղատնտեսական մթերքների տարեկան միջին համախառն արտադրության ավելացումը՝ այն հասցնելով 124 միլիարդ ռուբլու կամ ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումին նախորդած հնգամյակի համեմատությամբ ավելացավ 1,5 անգամ:

Երկրում զգալիորեն ավելացավ հացահատիկի արտադրությունը, նրա տարեկան միջին համախառն բերքը 130 միլիոն տոննայից հասավ 205 միլիոն տոննայի: Մսի արտադրությունը (սպանդային քաշով) 9,3 միլիոն տոննայից հասավ 14,8 միլիոնի, կաթինը՝ 65 միլիոն տոննայից՝ 93 միլիոնի, ձվինը՝ 29 միլիարդ հատից՝ 63 միլիարդի: Զեռք բերվեց պտուղբանջարեղենի արտադրանքի արտադրության զգալի աճ. բանջարեղենինը՝ 1,6 անգամ, պտուղներինն ու հատապտուղներինը՝ 2,6 և խաղողինը՝ 2 անգամ:

Այս ամենը հնարավորություն ընձեռեց, 1965 թվականի համեմատությամբ, երկրի բնակչության՝ 35 միլիոնով ավելանալու հետ մեկտեղ, էապես բարձրացնել սննդամթերքների սպառման մակարդակը: Ամենուրեք ապահովված է հացի, հացաբուլկեղենի և մակարոնեղենի, շաքարի անխափան մատակարարումը բնակչությանը: Մսի և մսամթերքների՝ բնակչության մեկ շնչին ընկնող սպառումը միջին հաշվով աճել է 41 տոկոսով, կաթինը և կաթնամթերքներինը՝25 տոկոսով, ձվինը՝ 1,9 անգամ, բանջարեղենինը՝ 35 տոկոսով: Սովետական մարդու սննդի օրաբաժինը ըստ կալորիականության համապատասխանում է ֆիզիոլոգիական նորմաներին:

Այժմ կուսակցությունը խնդիր է դնում՝ օգտագործելով երկրի տնտեսական աճած պոտենցիալը, հնարավորին չափ սեղմ ժամկետներում ապահովել պարենի բոլոր տեսակների կայուն մատակարարումը բնակչությանը, էապես բարելավել սովետական մարդկանց սննդի բաղադրակազմը առավել արժեքավոր մթերքների հաշվին:

Տասնմեկերորդ հնգամյակում բնակչության՝ հացի, հացաբուլկեղենի և մակարոնեղենի լայն տեսականու, կարտոֆիլի ու շաքարի պահանջմունքները բավարարելու հետ մեկտեղ նախատեսվում է լիովին ապահովել այնպիսի մթերքների պահանջարկը, ինչպիսին են՝ ձավարեղենը, հրուշակեղենը, մարգարինը, ձուն և ձուկը, բարելավել մսի, կաթի, ձեթի և պտուղ-բանջարեղենի մատակարարումը:

Նախատեսվում է տասներկուերորդ հնգամյակում նկատելիորեն բարձրացնել մսի, ձեթի, բանջարեղենի սպառումը արտադրության հետագա ավելացման հիման վրա:

Բնակչության մեկ շնչին ընկնող հիմնական մթերքների սպառումը տասներկուերորդ հնգամյակի վերջում կլինի մոտավորապես հետևյալը. միս և մսամթերք՝ 70 կիլոգրամ, ձկնամթերք՝ 19, կաթ և կաթնամթերք՝ 330—340 կիլոգրամ, ձու՝ 260—266 հատ, ձեթ՝ 13,2 կիլոգրամ, բանջարեղեն և բոստանային կուլտուրաներ՝ 126—135, պտուղ և հատապտուղ՝ 66—70, կարտոֆիլ՝ 110 կիլոգրամ, շաքար՝ 45,5, հացամթերք՝ 135 կիլոգրամ: Դա մթերքների սպառման երկրի միջին մակարդակն է: Կոնկրետ ռեգիոններում այդ մակարդակը կորոշվի՝ հաշվի առնելով բնակլիմայական պայմանները, ազգային ավանդույթները և մյուս առանձնահատկությունները:

ՍՍՀՄ պարենային ծրագրի իրականացման հիմնական ուղղություններն են՝

ագրոարդյունաբերական կոմպլեքսի համամասնական և հաշվեկշռված զարգացումը, դրա բոլոր ճյուղերում կառավարման, պլանավորման և տնտեսական խթանման կատարելագործումը՝ արտադրությունը առավելագույնս կողմնորոշելով դեպի վերջնական բարձր արդյունքների ձեռքբերումը.

գյուղատնտեսական արտադրության արագ տեմպերի ապահովումը դրա հետևողական ինտենսիվացման, հողի բարձրարդյունավետ օգտագործման, նյութատեխնիկական բազայի ըստ ամենայնի ամրապնդման, գիտության ու առաջավոր փորձի նվաճումների առավել արագ ներդրման հիման վրա.

ագրոարդյունաբերական կոմպլեքսի արտադրատեխնիկական պոտենցիալի օգտագործման ըստ ամենայնի բարելավումը, կապիտալ ներդրումների և նյութական ռեսուրսների հատույցի զգալի բարձրացումը, արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման զարգացումը՝ միջտնտեսային և միջճյուղային կապերի ընդլայնման հիման վրա.

խնայողության ու տնտեսման, գյուղատնտեսական արտադրանքի կորուստների կրճատման և որակի բարձրացման համար մղվող պայքարը՝ արտադրանքի արտադրության, վերամշակման ու պահպանման առաջավոր տեխնոլոգիաների լայն ներդրման, մասնագիտացված տրանսպորտով փոխադրումների կազմակերպման միջոցով.

գյուղում կյանքի սոցիալ-կենցաղային պայմանների հետագա բարելավումը:

Գյուղատնտեսական արտադրանքի արտադրությունն ավելացնելու գործում վճռական դեր է պատկանում կոլտնտեսություններին ու սովխոզներին: Կուսակցական, սովետական և գյուղատնտեսական մարմինների ջանքերը պետք է նպատակամղված լինեն բոլոր տնտեսություններում աշխատանքի արտադրողականության անշեղ աճի ապահովմանը, նրանց գործունեության վճռական բարելավմանը, վնասով աշխատող և ցածր շահութաբեր կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկայի բարձրացմանը:

Պարենի ռեսուրսները համալրելու համար հարկավոր է ամենուրեք, որտեղ դրա համար պայմաններ կան, զարգացնել ձեռնարկությունների ու կազմակերպությունների օժանդակ գյուղական տնտեսությունները այն հաշվով, որ առավելագույն չափերով ապահովվեն բանվորների և ծառայողների հասարակական սննդի պահանջմունքները մսի, կաթի, բանջարեղենի և կարտոֆիլի ասպարեզում: Լայնորեն օգտագործել քաղաքացիների անձնական օժանդակ տնտեսությունների, կոլեկտիվ այգեգործության և բանջարաբուծության հնարավորությունները:

Պարենային պրոբլեմը թե՛ տնտեսական, թե՛ քաղաքական առումով ընթացիկ տասնամյակի կենտրոնական պրոբլեմն է: Դրա հաջող լուծման երաշխիքը տարեկան պլանների և ամբողջությամբ վերցրած տասնմեկերորդ հնգամյակի պլանի կատարումն ու գերակատարումն է:

ՍՍՀՄ պարենային ծրագրի խնդիրների լուծումը համաժողովրդական գործ է, բոլոր կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների, ագրոարդյունաբերական կոմպլեքսի մյուս ձեռնարկությունների, բոլոր աշխատավորների, ամեն մի սովետական մարդու առաջնագույն պարտքն է:



# II. ՊԱՐԵՆԻ ՀԻՄՆԱԿԱՆ ՏԵՍԱԿՆԵՐԻ ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ

# ՊԱՐԵՆԱՅԻՆ ԱՊՐԱՆՔՆԵՐԻ ԱՌԵՎՏՐԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄԸ

**Հացահատիկի և դրա վերամշակման մթերքների արտադրությունը:** Պարենային ծրագրում շեշտվում է, որ հացահատիկի արտադրության արագ և հաստատուն ավելացումը գյուղատնտեսության հիմնական պրոբլեմն է:

Խնդիր է դրվում մոտակա տարիներս ապահովել երկրի հարաճուն պահանջմունքները բարձրորակ պարենային և փուրաժային հացահատիկի ասպարեզում, ունենալ հացահատիկի անհրաժեշտ պետական ռեզերվներ և դրա արտահանման ռեսուրսներ:

Հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունների կայունությունը պահպանելու հետ մեկտեղ հացահատիկի արտադրության ավելացման հիմնական ուղին ամենուրեք բերքատվության բարձրացումն է: Անհրաժեշտ է տասնամյակում հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը բարձրացնել հեկտարից 6—7 ցենտներով և մինչև 1990 թվականը այն հասցնել հեկտարից 21—22 ցենտների:

Նախատեսվում է տասնմեկերորդ հնգամյակում հացահատիկի տարեկան միջին արտադրությունը հասցնել 238—243 միլիոն տոննայի և տասներկուերորդ հնգամյակում՝ 250—255 միլիոն տոննայի:

Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին և մինիստրների խորհուրդներին, ՍՍՀՄ գյուղատնտեսության մինիստրությանը, տեղական կուսակցական, սովետական և գյուղատնտեսական մարմիններին, կոլտնտեսություններին ու սովխոզներին առաջարկված է անհրաժեշտ միջոցառումներ իրականացնել՝ ավելացնելու հացահատիկի բերքատվությունը և համախառն բերքը, բարձրացնելու դրա որակը և կրճատելու կորուստները:

Ղազախական ՍՍՀ-ի, Հյուսիսային Կովկասի, Պովոլժիեի, Ուրալի և Սիբիրի տափաստանային շրջանների, Ուկրաինական ՍՍՀ հարավային շրջանների տնտեսություններում ապահովել կարծր և ուժեղ սորտերի բարձրորակ ցորենի համախառն բերքի կայուն աճը:

Ապահովել աշնանացան տարեկանի արտադրության կայուն աճը ՌՍՖՍՀ ոչ սևահողային գոտում, Պովոլժիեում, Ուկրաինայի Պոլեսիեում, Բելոռուսական ՍՍՀ-ում և մերձբալթյան հանրապետություններում:

Ավելացնել գարեջրի պատրաստման համար օգտագործվող գարու սորտերի համախառն բերքը դրա ապրանքային արտադրության բոլոր գոտիներում:

Բարձրացնել կորեկի և հնդկացորենի բերքատվությունն ու համախառն բերքը, ամենից առաջ ՌՍՖՍՀ-ի կենտրոնական-սևահողային և ոչ սևահողային գոտու, Պովոլժիեի, Հարավային Ուրալի, Արևմտյան Սիբիրի, Ուկրաինական ՍՍՀ-ի և Ղազախական ՍՍՀ-ի կոլտնտեսություններում և սովխոզներում:

Կերի հացահատիկի ռեսուրսներն ավելացնելու համար, գարու և վարսակի արտադրության ավելացման հետ մեկտեղ, ավելի լրիվ օգտագործել եգիպտացորենի մեծ հնարավորությունները: 1985 թվականին ապահովել հատիկացու եգիպտացորենի առնվազն 17 միլիոն տոննա և 1990 թվականին 20 միլիոն տոննա համախառն բերք: Միջոցառումներ իրականացնել հատիկացու եգիպտացորենի արտադրության հետագա մասնագիտացման ու համակենտրոնացման նպատակով Ուկրաինական ՍՍՀ-ի, Մոլդավական ՍՍՀ-ի, Հյուսիսային Կովկասի, Ստորին Պովոլժիեի, ՌՍՖՍՀ-ի կենտրոնական-սևահողային շրջանի հարավի, Ղազախական ՍՍՀ-ի, Միջին Ասիայի և Անդրկովկասի հանրապետությունների կոլտնտեսություններում ու սովխոզներում: Այդ կուլտուրայի ողջ

ցանքատարածության վրա ներդնել աճեցման և բերքահավաքի արդյունաբերական տեխնոլոգիան:

Ապահովել հատիկալոբազգի կուլտուրաների արտադրությունը 1985 թվականին 12—14 միլիոն տոննա և 1990 թվականին՝ 18—20 միլիոն տոննա քանակությամբ: Զգալիորեն ավելացնել այդ կուլտուրաների համախառն բերքը Պովոլժիեում, ՌՍՖՍՀ-ի կենտրոնական-սևահողային և կենտրոնական շրջաններում, Ուկրաինական ՍՍՀ-ում, Բելոռուսական ՍՍՀ-ում և Ղազախական ՍՍՀ-ում:

Ելնելով կոնկրետ բնատնտեսական պայմաններից՝ ապահովել հողագործության գիտականորեն հիմնավորված սիստեմների արմատավորումն ու յուրացումը: Տասնմեկերորդ հնգամյակում իրագործել հացահատիկային կուլտուրաների սերմնաբուծության փոխադրումը արդյունաբերական հիմքի վրա: Արագացնել արտադրության մեջ նոր, բարձր մթերատու սորտերի ու հիբրիդների ներդրումը: Ստեղծել հացահատիկային և հատիկալոբազգի կուլտուրաների անհրաժեշտ չափի ապահովագրական և փոխանցվող սերմաֆոնդեր:

ՍՍՀՄ գյուղատնտեսության մինիստրությանը և միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդներին հանձնարարված է 1985 թվականին, 1980 թվականի համեմատությամբ, հացահատիկային կուլտուրաների համար հանքային պարարտանյութերի մատակարարումը ավելացնել առնվազն 1,7 անգամ և 1990 թվականին՝ 2 անգամ: Պարարտանյութերի ռեսուրսների աճը գերազանցապես ուղղել ապրանքային հացահատիկի բերքի առավել մեծ ավելացում ապահովող գոտիները:

Ամեն կերպ ավելացնելով հացահատիկի արտադրությունը, անհրաժեշտ է մշտական հոգածություն ցուցաբերել պարենային և փուրաժային հացահատիկը, հացն ու հացամթերքները խնայողաբար ու տնտեսաբար ծախսելու նկատմամբ:

Ծրագրում սահմանված են պետական ռեսուրսների հացահատիկից ալյուր, ձավարեղեն և մակարոնեղեն արտադրելու առաջադրանքներ:

**Անասնապահական մթերքների արտադրությունը:** Խնդիր է դրվում տասնմեկերորդ հնգամյակում մսի (սպանդային քաշով) տարեկան միջին արտադրությունը հասցնել 17—17,5 միլիոն տոննայի և տասներկուերորդ հնգամյակում՝ 20—20,5 միլիոն տոննայի, կաթինը՝ համապատասխանաբար 97—99 միլիոն տոննայի և 104—106 միլիոն տոննայի, ձվինը՝ 72 միլիարդ հատի և 78—79 միլիարդ հատի:

Ծրագրում շեշտվում է, որ միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմները և մինիստրների խորհուրդները, ՍՍՀՄ գյուղատնտեսության մինիստրությունը, տեղական կուսակցական, սովետական և գյուղատնտեսական մարմինները, կոլտնտեսություններն ու սովխոզները, հոգատարություն ցուցաբերելով գլխաքանակի աճի ու պահպանման նկատմամբ, պետք է ամենուրեք ապահովեն անցումը անասնապահության վարման ինտենսիվ մեթոդների և անասունների ու թռչունների բոլոր տեսակների մթերատվության զգալի բարձրացումը: Անասնապահական ֆերմաներն ու համալիրները ամրապնդել որակյալ կադրերով:

Անհրաժեշտ է բարձրացնել սելեկցիոն-տոհմային աշխատանքի մակարդակը: Ընդլայնել տոհմային տնտեսությունների ցանցը: Ռացիոնալ օգտագործել տոհմային անասունների ռեսուրսները: Բարելավել հոտի վերարտադրությունը և ավելացնել կենդանիների մատղաշի ստացումը: Իրագործել անասնաբուժական-կանխարգելիչ այնպիսի միջոցառումների սիստեմ, որոնք հնարավորություն ընձեռեն նվազեցնելու անասունների և թռչունների հիվանդությունները ու անկումը: Ընդլայնել և ամրապնդել պետական անասնաբուժական ծառայության, ինչպես նաև կենսաբանական պրեպարատների արտադրության ձեռնարկությունների նյութական բազան:

Մսի ռեսուրսների ավելացման հիմնական ուղղությունը պետք է դառնա **տավարի մսի** արտադրության արագ աճը: Տավարի մսի արտադրությունը (սպանդային քաշով) 1985 թվականին հասցնել առնվազն 7,8 միլիոն տոննայի և 1990 թվականին՝ 9,5 միլիոն տոննայի: Կոլտնտեսություններում, սովխոզ-



ներում և միջտնտեսային ձեռնարկություններում շարունակել խոշոր եղջերավոր անասունների աճեցման և բտման հետևողական փոխադրումը արդյունաբերական հիմքի վրա, կերապահովմամբ՝ հիմնականում տնտեսություններում կերի արտադրության հաշվին:

Կրճատել բտման ժամկետները, հասնել այն բանին, որ խոշոր եղջերավոր անասունների մատղաշը իրացվի քաշային բարձր կոնդիցիաներով՝ 400—500 կիլոգրամից ոչ ցածր: Անասունների բտումն ու գիրացումը կատարել առավելապես օգտագործելով կանաչ, կոշտ, հյութալի կեր, ինչպես նաև սննդարդյունաբերության կողմնակի արտադրանքը:

Ուժեղացնել մսատու անասնապահության ճյուղի զարգացման աշխատանքը այն շրջաններում, որտեղ կան անհրաժեշտ արոտավայրեր և հնարավորություններ մելիորացված հողերում ինտենսիվ կերարտադրություն ստեղծելու համար:

Ավելի մեծ ուշադրություն նվիրել **խոզաբուծության**՝ որպես անասնապահության առավել վաղահաս ճյուղի, հետագա զարգացմանը: Ապահովել խոզի մսի արտադրությունը (սպանդային քաշով) 1985 թվականին առնվազն 6,5 միլիոն տոննա քանակությամբ և 1990 թվականին՝ 7—7,3 միլիոն տոննա քանակությամբ: Բարձրացնել խոզաբուծության արդյունավետությունը:

Արդյունաբերական ֆերմաներում ու համալիրներում բարձր ինտենսիվ խոզաբուծություն կազմակերպելու հետ մեկտեղ ավելի լրիվ իրականացնել չմասնագիտացված կոլտնտեսությունների և սովխոզների ֆերմաներում, ձեռնարկությունների ու կազմակերպությունների գյուղական օժանդակ տնտեսություններում և քաղաքացիների անձնական օժանդակ տնտեսություններում խոզի մսի ավելացման հնարավորությունները: Յուրաքանչյուր կոլտնտեսությունում ու սովխոզում, որտեղ համապատասխան պայմաններ կան, ունենալ խոզաբուծական ֆերմաներ տնտեսությունների մսի պահանջմունքները բավարարելու, ինչպես նաև բնակչությանը խոճկորներ վաճառելու համար:

Երկրի տափաստանային, անտառատափաստանային, կիսաանապատային և լեռնային շրջանների հնարավորություններն ավելի արդյունավետ օգտագործել **ոչխարի մսի** արտադրությունն ավելացնելու համար, դրա արտադրությունը 1985 թվականին հասցնել առնվազն 1 միլիոն տոննայի (սպանդային) քաշով և 1990 թվականին՝ 1,2—1,3 միլիոն տոննայի: Միջոցներ ձեռնարկել ավելացնելու ռոմանովյան, ցիգայական և այլ նրբագեղմ ցեղատեսակների ոչխարների թիվը դրանց ավանդական բազմացման վայրերում: Ինտենսիվ ոչխարաբուծության գոտիներում հետևողականորեն փոխադրել այն արդյունաբերական հիմքի վրա:

Ապահովել **թռչնի մսի** (սպանդային քաշով) արտադրությունը 1985 թվականին առնվազն 2,6 միլիոն տոննա քանակությամբ և 1990 թվականին 3,4—3,6 միլիոն տոննա քանակությամբ: Արագացնել բրոյլերային նոր թռչնաֆաբրիկաների կառուցումը և գործող թռչնաֆաբրիկաների վերակառուցումը, լրացուցիչ կերպով ստեղծել հնդկահավերի, բադերի և սագերի մսի արտադրության մասնագիտացված տնտեսություններ:

Ավելացնել **ճագարի մսի** արտադրությունը: Բարելավել կամավոր ճագարաբուծական ընկերությունների աշխատանքը, ավելի լրիվ բավարարել բնակչության պահանջարկը տոհմային ճագարների նկատմամբ:

Միջոցներ ձեռնարկել ավելացնելու մսի ռեսուրսները ձիաբուծության և եղջերվաբուծության զարգացման հաշվին:

**Կաթի և կաթնամթերքների** արտադրությունն ավելացնելու գլխավոր ուղին կովերի մթերատվության բարձրացումն է: Խնդիր է դրվում մինչև 1990 թվականը կոլտնտեսություններում ու սովխոզներում մեկ կովի միջին կաթնատվությունն ավելացնել 500—600 կիլոգրամով: Կաթնային զարգացած անասնապահության շրջաններում մեկ կովի տարեկան միջին կաթնատվությունը հասցնել 4 հազար կիլոգրամի:

Կաթնանասնապահությունը հետևողականորեն փոխադրել արդյունաբերական հիմքի վրա, առաջին հերթին՝ գոյություն ունեցող ֆերմաներն ընդլայնելու և վերակառուցելու հաշվին: Բարելավել կաթի որակը:

Կատարելագործել անասունների, կաթի և անասնապահական մյուս մթերքների մթերումների կազմակերպումը, ընդլայնել մթերող ձեռնարկությունների ու կետերի ցանցը, դրանք առավելագույն չափով մոտեցնել արտադրության վայրերին: Բարձրացնել մթերող մարմինների և ձեռնարկությունների պատասխանատվությունը արտադրանքը ժամանակին ընդունելու և դրա պահպանումն ապահովելու համար: Արագացնել անցումը անասունների ու կաթի ընդունմանը անմիջականորեն տնտեսություններում:

Ելնելով անասնապահական մթերքների արտադրության նախատեսված ծավալներից, ծրագրում սահմանվել են պետական ռեսուրսների հումքից միս և մսամթերքներ արտադրելու առաջադրանքներ: Նախատեսվել են մսամթերքների և կաթնամթերքների տեսականին բարելավելու և որակը բարձրացնելու միջոցառումներ:

**Անասնապահության կերի ամուր բազայի ստեղծումը:** Ծրագրով նախատեսված է երկրում կերի արտադրությունը 1985 թվականին հասցնել 500 միլիոն տոննա և 1990 թվականին՝ 540—550 միլիոն տոննա կերամիավորի: 1990 թվականին խոտի կուտակումը հասցնել 110—112 միլիոն տոննայի, կերի արմատապտուղներինը՝ 60—63 միլիոն տոննայի:

Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմները և մինիստրների խորհուրդները, ՍՍՀՄ գյուղատնտեսության մինիստրությունը, ՍՍՀՄ մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրությունը, ՍՍՀՄ գյուղտեխպետկոմը, տեղական կուսակցական, սովետական և գյուղատնտեսական մարմինները, կոլտնտեսություններն ու սովխոզները պետք է անհրաժեշտ միջոցառումներ իրականացնեն դաշտային և մարգագետնաարոտավայրային կերարտադրության հետագա ինտենսիվացման, բոլոր կերահանդակների արդյունավետության բարձրացման նպատակով, որպեսզի յուրաքանչյուր տնտեսություն լիովին բավարարի անասնապահության՝ բարձրորակ կոշտ, հյութալի և արոտավայրային կերի պահանջմունքները:

Կոլտնտեսություններում և սովխոզներում կերարտադրությունը դարձնել մասնագիտացված ճյուղային: Հատուկ ուշադրություն նվիրել կերի հաշվեկշռվածության ապահովմանը սպիտակուցի և մյուս բաղադրիչների առումով, կերի որակի բարելավմանը, ռացիոնալ օգտագործմանը և կորուստների կրճատմանը:

Ընդլայնել առվույտի, երեքնուկի, լյուպինի, սոյայի, կանճրակի և սպիտակուցի բարձր պարունակություն ունեցող մյուս կուլտուրաների ցանքերը: Տասնամյակում կատարել բնական կերահանդակների արմատական բարելավում 27—29 միլիոն հեկտար տարածության վրա, ստեղծել ոռոգելի խոտհարքներ և արոտավայրեր 2—2,2 միլիոն հեկտար տարածության վրա, ջրարբիացնել 36—38 միլիոն հեկտար արոտավայրեր:

Բարելավել առվույտի, երեքնուկի և մյուս կերային կուլտուրաների սերմնաբուծությունը: Ուզբեկական ՍՍՀ-ում, Ղազախական ՍՍՀ-ում, Կիրգիզական ՍՍՀ-ում, ՌՍՖՍՀ-ի և Ուկրաինական ՍՍՀ-ի հարավային շրջաններում կազմակերպել մասնագիտացված տնտեսություններ առվույտի սերմացու արտադրելու և դա անհրաժեշտ քանակություններով ընդհանուր միութենական ֆոնդին մատակարարելու համար:

Լայնորեն արմատավորել կերի կուտակման ու պահպանման առաջավոր տեխնոլոգիաները: Տասնամյակում շահագործման հանձնել սիլոսային և սենաժային կառուցվածքներ 240—245 միլիոն խորանարդ մետր տարողությամբ, խոտի պահեստներ՝ 60—65 միլիոն տոննա և արմատապտուղների պահեստներ՝ 30—35 միլիոն տոննա միաժամանակյա պահպանման տարողությամբ: Զգալիորեն ընդլայնել հատիկաֆուրաժի, խոտալյուրի, բրիկետավորված և գրանուլացված կերախառնուրդների պահեստների շինարարությունը, այն հաշվով, որպեսզի լիովին բավարարվեն կոլտնտեսությունների և սովխոզների պահանջմունքները:

Միջոցառումներ են նախատեսվել պետական, միջտնտեսային ձեռնարկություններում, կոլտնտեսություններում և սովխոզներում համակցված կերերի արտադրության ավելացման ուղղությամբ, նպատակ ունենալով ռացիոնալ օգ-



տագործել ֆուրաժային հացահատիկը: Նախատեսված է զգալիորեն ավելացնել անարատ կաթնամթերքի փոխարինիչների թողարկումը, որը հնարավորություն կընձեռի կաթ ունենալ սննդի կարիքների համար: Անհրաժեշտ է ամենուրեք ավելի լրիվ օգտագործել սննդի մնացուկները անասունների բտման նպատակով:

Սահմանված են լիարժեք սպիտակուցավիտամինային խառնուրդների արտադրությունն ավելացնելու առաջադրանքներ՝ դրանք միջտնտեսային ձեռնարկություններին, կոլտնտեսություններին և սովխոզներին մատակարարելու համար:

ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին առընթեր միկրոկենսաբանական արդյունաբերության գլխավոր վարչության, ՍՍՀՄ անտառային, ցելյուլոզի-թղթի և փայտամշակման արդյունաբերության մինիստրության և ՍՍՀՄ սննդարդյունաբերության մինիստրության համար սահմանվել են կերախմորիչների և կերային լիզինի արտադրությունն ավելացնելու առաջադրանքներ, ՍՍՀՄ ձկնային տնտեսության մինիստրության համար՝ ձկնալյուրի, իսկ ՍՍՀՄ մսեղենի-կաթնեղենի մինիստրության համար՝ կենդանական ծագում ունեցող կերի արտադրության ավելացման առաջադրանքներ:

**Պտուղբանջարեղենի և կարտոֆիլի արտադրությունը:** Ծրագրով նախատեսվում են խոշոր միջոցառումներ բարելավելու պտուղբանջարեղենի և կարտոֆիլի մատակարարումը բնակչությանը՝ դրանց արտադրության հետագա ավելացման և որակի բարձրացման, ինչպես նաև դաշտից մինչև սպառողն ընկած ճանապարհին արտադրանքի կորուստների խիստ կրճատման հաշվին:

Բանջարեղենի և բոստանային կուլտուրաների տարեկան միջին արտադրությունը տասնմեկերորդ հնգամյակում նախատեսված է հասցնել 33—34 միլիոն տոննայի և տասներկուերորդ հնգամյակում՝ 37—39 միլիոն տոննայի, պտղինը և հատապտղինը՝ համապատասխանաբար 11—12 միլիոն տոննայի և 14—15 միլիոն տոննայի, խաղողինը՝ 7,5—8 միլիոն տոննայի և 10—11 միլիոն տոննայի: Զգալիորեն ավելացնել բանջարեղենի արտադրությունը պաշտպանված հողերում: Կարտոֆիլի տարեկան միջին համախառն բերքը տասնմեկերորդ հնգամյակում ապահովել 87—89 միլիոն տոննա և տասներկուերորդ հնգամյակում՝ 90—92 միլիոն տոննա քանակությամբ:

ՌՍՖՍՀ-ի, Ուկրաինական ՍՍՀ-ի և Ղազախական ՍՍՀ-ի հարավային շրջաններում, Միջին Ասիայի, Անդրկովկասի հանրապետություններում և Մոլդավական ՍՍՀ-ում նախատեսված է ստեղծել մասնագիտացված խոշոր տնտեսություններ և ագրոարդյունաբերական ձեռնարկություններ պտուղբանջարեղենի արտադրության ու վերամշակման համար, այդ շրջանները դարձնել երկրի կենտրոնի և եվրոպական մասի հյուսիսի, Ուրալի, Սիբիրի և Հեռավոր Արևելքի քաղաքների բնակչությանը ջերմասեր բանջարանոցային, պտղային և հատապտղային կուլտուրաների արտադրանք մատակարարելու հիմնական բազա: Կարտոֆիլի, ուշահաս բանջարանոցային, պտղային և հատապտղային կուլտուրաների արտադրանքի նկատմամբ բնակչության պահանջարկը հիմնականում բավարարել այդպիսիք սպառման շրջաններում արտադրելու հաշվին:

Ավարտել արդյունաբերական հիմքի վրա ապրանքային կարտոֆիլ արտադրելու մասնագիտացված գոտիների ստեղծումը և առաջին հերթին Բելոռուսական ՍՍՀ-ում, ՌՍՖՍՀ-ի ոչ սևահողային գոտու մարզերում և մերձբալթյան հանրապետություններում:

Ընդլայնել վաղահաս կարտոֆիլի աճեցման գոտիները Ուկրաինական ՍՍՀ-ի շրջաններում, Անդրկովկասի և Միջին Ասիայի հանրապետություններում: Ապահովել դրա արտադրությունը կոլտնտեսություններում և սովխոզներում 1985 թվականին առնվազն 7 միլիոն տոննա քանակությամբ և 1990 թվականին՝ 9—10 միլիոն տոննա քանակությամբ:

Սիբիրի և Հեռավոր Արևելքի շրջաններում, հատկապես ԲԱՄ-ի գոտում առավել արագ տեմպերով զարգացնել գյուղատնտեսական բազան կարտոֆիլ և բանջարեղեն արտադրելու համար, նկատի ունենալով այդ արտադրանքի

նկատմամբ բնակչության պահանջմունքների առավելագույն չափով բավարարումը տեղական արտադրության հաշվին:

ՍՍՀՄ պտուղբանջարեղենի տնտեսության մինիստրությանը, ՍՍՀՄ գյուղատնտեսության մինիստրությանը, ՍՍՀՄ առևտրի մինիստրությանը, Ցենտրոսոյուզին և միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդներին՝ միջոցառումներ իրականացնել պտուղբանջարեղենի և կարտոֆիլի պահեստների ռացիոնալ տեղաբաշխման ուղղությամբ, այն հաշվով, որպեսզի զգալիորեն կրճատվեն այդ արտադրանքի կորուստները և մասսայական մթերումների շրջանում դրա փոխադրումների ծավալները: Լայնորեն կիրառել կարտոֆիլի, պտուղների և բանջարեղենի պահպանման առաջավոր եղանակները: Ավելացնել պտուղբանջարեղենի փոխադրումների ծավալը իզոթերմիկ վագոններով, ավտոսառնարաններով և մասնագիտացված գետային տրանսպորտով:

Ցենտրոսոյուզին և ՍՍՀՄ անտառային տնտեսության պետական կոմիտեին՝ զգալիորեն ընդլայնել վայրի պտուղների, հատապտուղների և սունկերի հավաքումն ու մթերումը:

Սահմանվել են պտուղբանջարեղենի վերամշակման ու պահպանման կարողությունների առավել արագ մեծացման միջոցառումներ: Սահմանվել են պտուղբանջարեղենի պահածոների, թարմ-սառեցված մրգերի, հատապտուղների, բանջարեղենի և դրանցից պատրաստվող կիսաֆաբրիկատների թողարկումն ավելացնելու, ինչպես նաև կարտոֆիլը կիսաֆաբրիկատների և պատրաստի արտադրանքի ձևով վերամշակելու առաջադրանքներ: Մանկական և դիետիկ սննդի համար պահածոների արտադրությունը մինչև 1985 թվականը, 1980 թվականի համեմատ, կավելանա 2 անգամ և մինչև 1990 թվականը՝ 2,5 անգամ: Զգալիորեն ընդլայնվում է տոմատի, մրգի ու խաղողի հյութերի, ջեմի, մուրաբայի, կոմպոտների արտադրությունը:

Հանձնարարված է գործուն պրակտիկա դարձնել պտուղբանջարեղենը անմիջականորեն կոլտնտեսություններում և սովխոզներում վերամշակելու և պահպանելու կարողությունների ստեղծումը, այն հաշվով, որ նրանց արտադրած ողջ արտադրանքը պահպանվի, վերամշակվի և իրացվի:

**Շաքարի արտադրությունը:** Շաքարի ճակնդեղի տարեկան միջին արտադրությունը տասներկուերորդ հնգամյակում նախատեսված է հասցնել 102—103 միլիոն տոննայի:

Այդ նպատակներով նախատեսված է հիմնականում տասներկուերորդ հնգամյակում ավարտել անցումը շաքարի ճակնդեղի մշակության ինդուստրիալ տեխնոլոգիաների, ապահովել ճակնդեղացան տնտեսությունների պահանջմունքները անհրաժեշտ տեխնիկայի, տրանսպորտային և բեռնման միջոցների, հանքային պարարտանյութերի, բարձրարդյունավետ հերբիցիդների և վնասատուներից ու հիվանդություններից բույսերի պաշտպանության քիմիական միջոցների սապարեզում: Արագացնել 17—18 տոկոսից ոչ ցածր շաքարայնությամբ միասերմ շաքարի ճակնդեղի բարձր մթերատու սորտերի ու հիբրիդների ստեղծումը և ներդրումը: Ընդլայնել երկրի հարավային շրջաններում շաքարի ճակնդեղի սերմացուի արտադրությունը ոչ սածիլային եղանակով:

Կուսակցական, սովետական, գյուղատնտեսական մարմիններին, կոլտնտեսություններին և սովխոզներին՝ ուշադրությունը կենտրոնացնել շաքարի ճակնդեղի բերքատվության բարձրացման, դրա որակի բարելավման և կորուստների զգալի կրճատման վրա:

Սահմանվել են շաքարի արտադրության առաջադրանքներ: Կորուստները կանխելու նպատակով սահմանվել են միջոցառումներ շաքարի ճակնդեղի վերամշակման սեզոնի տևողությունը կրճատելու և մինչև 1990 թվականը 100—105 օրվա հասցնելու համար: Նախատեսված է տասնամյակում ճակնդեղի ընդունման կետերում կառուցել ամուր ծածկույթով մեքենայացված պահեստներ ու հարթակներ մինչև 15 միլիոն քառակուսի մետր ընդհանուր մակերեսով՝ շաքարի ճակնդեղի պահպանման համար, կիրառելով ակտիվ օդափոխում, ինչպես նաև դրա պահպանման ժամանակ զգալիորեն ընդլայնել կենսաբանորեն ակտիվ նյութերի և նոր նյութերի օգտագործումը կիտուկները ծածկելու



նպատակով: Կանի շաքարավազի՝ առանց տարայի փոխադրումը և զգալիորեն կավելանա հեղուկ շաքարի մատակարարումը արդյունաբերության սննդի ճյուղերին: Կզարգանա օսլա պարունակող հումքից և հումքի այլ տեսակներից շաքարանյութերի արտադրությունը:

Զգալիորեն կավելանա մեղրի արտադրությունը: Նախատեսված է շարունակել մասնագիտացված մեղվաբուծական տնտեսությունների և արդյունաբերական հիմքի վրա գործող մեղվանոցների ստեղծումը, ավելի մեծ ուշադրություն նվիրել տնամերձ մեղվաբուծության զարգացմանը:

Կընդլայնվի շաքարի փոխարինիչների արտադրությունը, այն հաշվով, որ լիովին բավարարվեն դիաբետիկ սննդի մթերքների՝ բնակչության պահանջմունքները:

**Ձեթի և մարգարինային արտադրանքի արտադրությունը:** Կուսակցական, սովետական, գյուղատնտեսական մարմինների, կոլտնտեսությունների և սովխոզների, մթերող ու վերամշակող ձեռնարկությունների կարևոր խնդիրն է ապահովել ձիթատու կուլտուրաների սերմերի արտադրության զգալի աճը, բարելավել դրանց ընդունման, պահպանման և վերամշակման կազմակերպումը, ձիթասերմերի կորուստների կրճատումը:

Նախատեսված է արևածաղկի սերմերի տարեկան միջին արտադրությունը տասնմեկերորդ հնգամյակում հասցնել 6,7 միլիոն տոննայի և տասներկուերորդ հնգամյակում՝ 7,2—7,5 միլիոն տոննայի, սոյայինը՝ համապատասխանաբար 1,4 միլիոն տոննայի և 2,2—2,3 միլիոն տոննայի: Ընդլայնել սոյայի ցանքատարածությունները երկրի եվրոպական մասի, Միջին Ասիայի և Ղազախստանի ոռոգելի հողերում: Ձեթի ռեսուրսներն ավելացնելու նպատակով տասնմեկերորդ հնգամյակում յուրացնել կանճրակի (հլածուկի) մշակությունը Ուկրաինայի արևմտյան մարզերում, Բելոռուսիայում, մերձբալթյան հանրապետություններում, ինչպես նաև ՌՍՖՍՀ-ի կենտրոնական և կենտրոնական-սևահողային շրջաններում, Պովոլժիեում, Ուրալում, Սիբիրում և Հյուսիսային Ղազախստանում, ապահովել կանճրակի սերմերի համախառն բերքը 1985 թվականին 0,5 միլիոն տոննա և 1990 թվականին՝ մոտավորապես 1,5 միլիոն տոննա քանակությամբ: Արմատավորել ձիթատու կուլտուրաների մշակության ինդուստրիալ տեխնոլոգիաներ:

Ծրագրում սահմանված առաջադրանքները նախատեսում են տասնմեկերորդ և տասներկուերորդ հնգամյակներում ձեթի և մարգարինային արտադրանքի արտադրության արագ աճ, նախատեսված են դրանց որակը բարելավելու միջոցառումներ:

**Հրուշակեղենի, սննդի կոնցենտրատների, խաղողի գինու, գարեջրի և ոչ ոգելից խմիչքների արտադրությունը:**

Նախատեսված է ավելացնել հրուշակեղենի արտադրությունը և 1990 թվականին այն հասցնել առնվազն 4,4 միլիոն տոննայի, իսկ սննդի կոնցենտրատներինը՝ 350 հազար տոննայի: Կավելանա բնակչության շրջանում ավելի մեծ պահանջարկ վայելող արտադրանքի՝ պաստեղամարմելադային արտադրանքի, ինչպես նաև շաքարի նվազ պարունակությամբ խմորեղենի արտադրությունը:

Ընդլայնվում է ոչ ոգելից խմիչքների, գարեջրի, խաղողի և պտղահատապտղային գինիների թողարկումը: Նախատեսված է ավելի արագ տեմպերով զարգացնել խաղողի վերամշակման կարողությունները Ադրբեջանական ՍՍՀ-ում, Ուկրաինական ՍՍՀ-ում և Մոլդավական ՍՍՀ-ում:

Նախատեսված է 1985 թվականին **թեյատերևի** հավաքումը հասցնել 560 հազար տոննայի և 1990 թվականին՝ 740—750 հազար տոննայի, իսկ բնական թեյի արտադրությունը՝ համապատասխանաբար 230 հազար տոննայի և 280—300 հազար տոննայի: Զգալիորեն բարելավել թողարկվող թեյի որակը, ընդլայնել տեսականին:

**Ձկնամթերքների արտադրությունը:** Սահմանված են ձկան որսն ու ծովամթերքների արդյունահանումն ավելացնելու, ձկնորսության արտադրողականությունն ու ձկնարդյունաբերության նավատորմի օգտագործման արդյունավետությունը բարձրացնելու միջոցառումներ: Նախատեսված է նավահան-

գիտներն ապահովել անհրաժեշտ սարքավորումներով ու մեխանիզմներով, ծառայողական-օժանդակ նավերով և ավտոտրանսպորտով, ստեղծել ու ներդնել այնպիսի տեխնիկական միջոցներ, որոնք հնարավորություն են ընձեռում արդյունավետ իրականացնելու բեռնման-բեռնաթափման աշխատանքները եղանակի տարբեր պայմաններում:

Լճակային ձկնաբուծության ինտենսիֆիկացման հիման վրա տասը տարվա ընթացքում ձկնաբուծական տնտեսություններում ապրանքային ձկան արտադրությունն ավելացնել մոտ երեք անգամ: Իրականացնել ձկնաբուծական ձեռնարկությունների վերակառուցում, տեխնիկական վերազինում և դրանց նյութատեխնիկական բազայի զարգացում, դրանք ապահովել ժամանակակից նյութատեխնիկական միջոցներով ջրամբարների և հիդրոտեխնիկական կառուցվածքների արդյունավետ շահագործման համար:

Մինիստրություններին և գերատեսչություններին՝ ձկան արտադրության համար լայնորեն օգտագործել ենթակա ձեռնարկությունների արդյունաբերական այն ջրամբարները, որոնք պիտանի են այդ նպատակների համար:

1985 թվականին սննդաձկնային արտադրանքի արտադրությունը հասցնել 4,2 միլիոն տոննայի և 1990 թվականին՝ 4,3—4,5 միլիոն տոննայի, ձկան պահածոներինը համապատասխանաբար՝ 3 միլիարդ պայմանական տուփի և առնվազն 3,2 միլիարդ պայմանական տուփի:

ՍՍՀՄ ձկնատնտեսության մինիստրությանը՝ միջոցներ ձեռնարկել զգալիորեն ընդլայնելու և նորացնելու ձկնեղենի տեսականին, բարձրացնելու ձկնամթերքների որակը և համեղությունը: Տասը տարում կենդանի և սառեցված ձկան արտադրությունն ավելացնել մոտ երկու անգամ:

Մինչև 1990 թվականը արդյունաբերության մեջ արմատավորել ձկան և ձկնամթերքների սառեցման ու պահպանման հեռանկարային եղանակներ:

Տասը տարում գործարկել 220—240 հազար տոննա միաժամանակյա պահպանման տարողությամբ սառնարաններ:

**Մթերքների արտադրությունը օժանդակ տնտեսություններում:** Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին և մինիստրների խորհուրդներին, մինիստրություններին և գերատեսչություններին, կուսակցական, սովետական, տնտեսական և արհմիութենական մարմիններին՝ միջոցներ ձեռնարկել զգալիորեն ավելացնելու պարենի արտադրությունը ձեռնարկությունների և կազմակերպությունների օժանդակ գյուղական տնտեսություններում:

Այդ տնտեսությունների համար առանձնացնել անհրաժեշտ հողատարածություններ, ինչպես նաև կոլտնտեսությունների ու սովխոզների հետ համաձայն նրանց մատակարարել գյուղատնտեսական տեխնիկա, պարարտանյութեր և նյութատեխնիկական այլ ռեսուրսներ: Լայն պրակտիկա դարձնել հիշյալ ձեռնարկություններին և կազմակերպություններին կից ջերմամնոցների օգտագործմամբ ջերմոցային տնտեսությունների, ինչպես նաև անասնապահական ֆերմաների և պտուղ-բանջարեղենի պահեստների կառուցումը:

Օժանդակ գյուղական տնտեսությունների ստեղծումն ու զարգացումն իրականացնել համապատասխան մինիստրություններին և գերատեսչություններին հատկացվող ընդհանուր կապիտալ ներդրումների և նյութատեխնիկական ռեսուրսների հաշվին:

Միութենական և ինքնավար հանրապետությունների մինիստրների խորհուրդների, երկրգործկոմների, մարզգործկոմների, շրջգործկոմների, գյուղատնտեսական մարմինների, տնտեսությունների և ձեռնարկությունների ղեկավարների, արհմիութենական կազմակերպությունների կարևորագույն խնդիրն է պայմաններ ստեղծել, որպեսզի գյուղում բնակվող յուրաքանչյուր ընտանիք կարողանա ունենալ տնամերձ հողամաս, պահել անասուն և թռչուն:

Սպառողական կոոպերացիային՝ կազմակերպել բնակչությունից գյուղատնտեսական մթերքների ավելցուկների ժամանակին գնումը: Ընդլայնել մթերքների ընդունման և մթերման, անասունների և թռչունների մորթման մշտական ու ժամանակավոր կետերի, գյուղատնտեսական մթերքների վերամշակման արտադրամասերի ցանցը: Տասը տարվա ընթացքում սպառողական կոոպե-



րացիայի ձեռնարկություններում երշիկեղենի արտադրությունն ավելացնել 1,5 անգամ, պահածոներինը՝ 1,4 անգամ և հրուշակեղենինը՝ 1,7 անգամ:

**Պարենային ապրանքների առևտրի կազմակերպումը:** Միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդներին, առևտրական ցանց ունեցող ՍՍՀՄ մինիստրություններին ու գերատեսչություններին՝ զգալիորեն բարձրացնել բնակչության առևտրական սպասարկման մակարդակը:

Միջոցներ ձեռնարկել ընդլայնելու և ռացիոնալ տեղաբաշխելու խանութների, ճաշարանների և առևտրական մյուս ձեռնարկությունների ցանցը, բարելավելու դրանց աշխատանքի ռեժիմը բնակչության համար առավելագույն հարմարություններ ստեղծելու նպատակով: Ճաշարաններ ունենալ բոլոր խոշոր ձեռնարկություններում, կառույցներում և ուսումնական հաստատություններում:

Ակտիվ աշխատանք կատարել գործող առևտրական ձեռնարկությունների վերակառուցման և տեխնիկական վերազինման, ապրանքների վաճառքի առաջավոր ձևերի, մասնավորապես ինքնասպասարկման արմատավորման ասպարեզում:

Ընդլայնել կոլտնտեսային շուկաների ցանցը, բարելավել առևտրի կազմակերպումը շուկաներում, ամրապնդել դրանց նյութատեխնիկական բազան:

Ամեն կերպ նպաստել սպառողական կոոպերացիայի գործունեության զարգացմանը, քաղաքացիների անձնական օժանդակ տնտեսություններից գնվող գյուղատնտեսական մթերքների առևտրի ընդլայնմանը, կոոպերատիվ կազմակերպությունների համար այդ մթերքների վաճառման խանութների շենքեր առանձնացնել արդյունաբերական կենտրոններում, նրանց օգնություն ցույց տալ փոխադրամիջոցներով ապահովելու գործում:

Բարելավել հացի, հացաբուլկեղենի և մակարոնեղենի, ձավարեղենի և պարենային մյուս ապրանքների առևտրի կազմակերպումը: Բարձրացնել առևտրական ցանցին դրանց առաքման օպերատիվությունը: Միջոցառումներ իրականացնել ընդլայնելու սեզոնային առևտրական ցանցը և պտուղ-բանջարեղենի խանութները: Ավելացնել փոքր քանակությամբ չափակշռված և փաթեթավորված պարենային ապրանքների վաճառքը:

Զարգացնել և կատարելագործել առևտրի ուղղակի կապերը կոլտնտեսությունների, սովխոզների և ագրոարդյունաբերական կոմպլեքսի մյուս ձեռնարկությունների հետ:

## III. ԱԳՐՈԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԿՈՄՊԼԵՔՍԻ ՆՅՈՒԹԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԲԱԶԱՅԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

ՍՍՀՄ պարենային ծրագրի հաջող իրականացման կարևորագույն պայմանն է գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, արտադրական պոտենցիալի բարձրարդյունավետ օգտագործումը և գյուղատնտեսության, ագրոարդյունաբերական կոմպլեքսի բոլոր ճյուղերի նյութատեխնիկական բազայի ամրապնդումը՝ արտադրության մեքենայացման և քիմիացման, հողերի լայն մելիորացման հետագա զարգացման հիման վրա:

**Գյուղատնտեսական արտադրության կոմպլեքսային մեքենայացումը և արդյունաբերության սննդի ճյուղերի տեխնիկական վերազինումը:**

Ծրագրում շեշտվում է, որ մեքենաշինական մինիստրությունների, ագրոարդյունաբերական կոմպլեքսի բոլոր մինիստրությունների ու գերատեսչությունների առաջնակարգ խնդիրն է մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանում հիմնականում ավարտել հողագործության ու անասնապահության կոմպլեքսային մեքենայացումը և նոր տեխնիկական հիմքի վրա արդյունաբերության սննդի ճյուղերի վերազինումը: Անշեղորեն բարձրացնել տրակտոր-

ների, կոմբայնների, բուսաբուծության, անասնապահության և կերարտադրության համար, ինչպես նաև արդյունաբերության սննդի ճյուղերի համար նախատեսված մեքենաների ու սարքավորումների տեխնիկական մակարդակը, որակը և հատկապես հուսալիությունը: Հետևողականորեն իջեցնել թողարկվող տեխնիկայի նյութատարությունը:

Նախատեսված է տասը տարում գյուղատնտեսությանը մատակարարել.
3.740—3.780 հազար տրակտոր, առնվազն 200 հազար էքսկավատոր, 215 հազար բուլդոզեր, 93 հազար սկրեպեր, 13 հազար ավտոգրեյդեր.

հացահատիկի 1.170 հազար կոմբայն և գյուղատնտեսական այլ մեքենաներ՝ 67—70 միլիարդ ռուբլի գումարով, այդ թվում 38—40 միլիարդ ռուբլի գումարով՝ բուսաբուծության համար և 29—30 միլիարդ ռուբլի գումարով՝ անասնապահության ու կերարտադրության համար:

Արդյունաբերության սննդի ճյուղերի, պետական առևտրի և սպառողական կոոպերացիայի համար տասը տարում հատկացվում են 15—17 միլիարդ ռուբլի գումարով տեխնոլոգիական սարքավորումներ:

Կավելանա էլեկտրաէներգիայի մատակարարումը գյուղատնտեսությանը, 1990 թվականին այն կկազմի 210—235 միլիարդ կիլովատ-ժամ:

Միջոցներ են նախատեսված ամրապնդելու գյուղատնտեսության մեջ ինժեներական ծառայությունը, բարձրացնելու դրա պատասխանատվությունը տեխնիկայի օգտագործման ու պահպանման համար, է՛լ ավելի զարգացնելու և մասնագիտացնելու նորոգման-սպասարկման բազան կոլտնտեսություններում, սովխոզներում և գյուղտեխնիկայի կազմակերպություններում, ապահովելու հաստոցային, դարբնամամլակային և նորոգման-տեխնոլոգիական սարքավորումներով արհեստանոցների, նորոգման ձեռնարկությունների կոմպլեկտավորումը: Անհրաժեշտ է բարելավել մեքենաների ու սարքավորումների նորոգման որակը և բարձրացնել դրանց տեխնիկական պատրաստության մակարդակը, թույլ չտալ, որ դրանք ժամանակից շուտ դուրս գրվեն:

Մեքենաշինական մինիստրություններին առաջարկված է կազմակերպել տրակտորների, ավտոմոբիլների, գյուղատնտեսական մեքենաների և տեխնոլոգիական սարքավորումների պահեստամասերի արտադրություն՝ սահմանված նորմաներով, դրանց պահանջարկին համապատասխան: ՍՍՀՄ գյուղտեխպետկոմին՝ զգալիորեն մեծացնել մաշված դետալների վերականգնման ծավալները:

Խնդիր է դրվում տասներկուերորդ հնգամյակում տրակտորային և գյուղատնտեսական մեքենաշինության մեջ ապահովել նոր և արդիականացված էներգահագեցված տրակտորների թողարկումը, ձեռնամուխ լինել մոտավորապես 150 ձիաուժ կարողությամբ միջշարային մշակության ունիվերսալ տրակտորների արտադրությանը:

Տասնմեկերորդ հնգամյակում իրականացնել «Նիվա», «Կոլոս», «Սիբիրյակ» հացահատիկահավաք կոմբայնների արդիականացումը և բարձրացնել դրանց հուսալիությունը: Ընդլայնել բրնձահավաք թրթուրավոր կոմբայնների թողարկումը: 1986 թվականին սկսել ավելի բարձր թողունակություն ունեցող հացահատիկահավաք կոմբայնների սերիական թողարկումը:

Արագորեն զարգացնել արտադրական կարողությունները և կազմակերպել գյուղատնտեսության համար անհրաժեշտ քանակությամբ հետևյալ մեքենաների թողարկումը·

հողապաշտպանական տեխնոլոգիաների ներդրման մեքենաներ.

կոմբինացված ագրեգատներ, ծանր սկավառակավոր գործիքներ, ճշգրիտ ցանքի շարքացաններ, ճակնդեղաբեռնիչներ և շաքարի ճակնդեղի, եգիպտացորենի, կարտոֆիլի, բանջարեղենի ու գյուղատնտեսական մյուս կուլտուրաների մշակության ինդուստրիալ տեխնոլոգիաների ներդրման համար անհրաժեշտ այլ տեխնիկա.

հանքային պինդ պարարտանյութերի և կոմպլեքսային հեղուկ պարարտանյութերի, ինչպես նաև հեղուկ ամոնիակի փոխադրման, խառնման և դրանցով հողի պարարտացման բարձրարտադրողական մեքենաներ ու սարքավորումներ.



պեստիցիդների անհրաժեշտ լուծույթների պատրաստման և փոքրածավալ դոզաներով դրանց օգտագործման մեքենաներ ու սարքավորումներ.

ինքնագնաց և կցանքային գլանիկավոր լայնակալ հնձիչներ, բերքահավաքից հետո գյուղատնտեսական մթերքների մշակման ու պահպանման հոսքային գծեր ու սարքավորումներ.

կոլտնտեսությունների, սովխոզների և բնակչության պահանջմունքը բավարարելու համար փոքր չափսերի տեխնիկա:

Տասնմեկերորդ հնգամյակում անասնապահության և կերարտադրության մեքենաշինության մեջ անցնել հիմնականում այնպիսի մեքենաների ու սարքավորումների թողարկման, որոնք կազմում են միասնական տեխնոլոգիական կոմպլեքսներ կերի կուտակման, պատրաստման ու բաժանման և անասնապահության արտադրապրոցեսների մեքենայացման համար: Ստեղծել ու գործարկել տարեկան 20 հազար ինքնագնաց և 20 հազար կցանքային կերահավաք կոմբայնների արտադրության, ինչպես նաև ինքնագնաց հնձիչ-տափանիչների և կերարտադրության մեջ կոմպլեքսային մեքենայացման, անասնապահության ու թռչնաբուծության մեջ աշխատանքների մեքենայացման ավարտման համար անհրաժեշտ այլ մեքենաների արտադրության կարողություններ:

Ապահովել գյուղատնտեսության պահանջմունքը պինդ և հեղուկ օրգանական պարարտանյութերի փոխադրման և դրանցով հողի պարարտացման մեքենաների ու սարքավորումների նկատմամբ, հատուկ ուշադրություն դարձնելով 8—16 տոննա բեռնատարությամբ մեքենաների և բարձրարտադրողական բեռնման միջոցների թողարկման ավելացմանը:

Շինարարական և ճանապարհային մեքենաշինության մեջ նախատեսվում է յուրացնել նոր բարձրարտադրողական բեռնիչների, բուլդոզերների, ինքնագնաց սկրեպերների, ցամաքեցման ոչ խրամատային խողովակադիր մեքենաների թողարկումը, ինչպես նաև ավելացնել ռոտորային ջրանցքափորիչների և ջրանցքամաքրիչների արտադրությունը:

Թեթև և սննդի արդյունաբերության մեքենաշինության մեջ պատրաստել հիմնականում այնպիսի հոսքային գծեր և սարքավորումների կոմպլեկտներ, որոնք ապահովեն արդյունաբերության սննդի ճյուղերում աշխատանքի արտադրողականության զգալի բարձրացումը, գյուղատնտեսական մթերքների հիմնավոր վերամշակումն ու դրանց կորուստների կրճատումը, սննդամթերքների որակի բարձրացումն ու տեսականու ընդլայնումը: Ավելացնել մյուս մեքենաշինական մինիստրությունների ձեռնարկությունների հետ կոոպերացված կարգով տեխնոլոգիական սարքավորումների արտադրությունը:

Մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանում յուրացնել օրական վեց հազար տոննա շաքարի ճակնդեղի վերամշակման արտադրողականությամբ կոմպլեկտային տեխնոլոգիական սարքավորումների, ինչպես նաև ձեթի անընդհատ զտման բարձրարտադրողական կայանքների թողարկումը:

Հացաթխման արդյունաբերության համար ստեղծել հացի մասսայական տեսակների արտադրության, փոքր քանակությամբ չափակշռված հացաբուլկեղենի թողարկման հոսքային մեքենայացված գծեր, ինչպես նաև աշխատանքի ավտոմատացումն ու մեքենայացումն ապահովող այլ սարքավորումների կոմպլեկտներ:

Ընդլայնել մակարոնեղենի արդյունաբերության ձեռնարկությունների ապահովման համար ժամանակակից տեխնիկայի արտադրությունը:

Ապահովել մանկական սննդի համար պահածոների արտադրության և պոմիդորի նախնական վերամշակման սարքավորումների կոմպլեկտների, բանջարեղենի պահածոների, կարտոֆիլից պատրաստվող արտադրության և պտուղների ու բանջարեղենի արագ սառեցման հոսքային մեքենայացված գծերի, ինչպես նաև երշիկեղենի, մսի կիսաֆաբրիկատների, կաթնաշոռի և այլ մթերքների արտադրության բարձրարտադրողական գծերի թողարկումը:

Կազմակերպել էլևատորների, աղացների և համակցված կերի ձեռնարկությունների համար, ինչպես նաև կարտոֆիլի, բանջարեղենի ու մրգի պա-

հեստների ապահովման համար ժամանակակից բարձրարտադրողական կոմպլեկտային սարքավորումների սերիական թողարկումը:

Նավաշինության մեջ նախատեսվում է ստեղծել այնպիսի ձկնորսանավեր, որոնք կարողանան արդյունավետ իրականացնել ձկան որսը, հումքի վերամշակումը և սննդի ձկնամթերքի, պահածոների ու կիսաֆաբրիկատների արտադրությունը անմիջականորեն որսի շրջաններում: Ձկնարդյունաբերության նավատորմը համալրել ձկնորսանավերով և սառնարան-փոխադրանավերով:

**Գյուղատնտեսության քիմիացման զարգացումը:** 1985 թվականին ապահովել գյուղատնտեսությանը 26,5 միլիոն տոննա և 1990 թվականին՝ 30—32 միլիոն տոննա հանքային պարարտանյութերի մատակարարումը (սննդարար նյութերի 100-տոկոսանոց պարունակության վերածած), համապատասխանաբար 950 հազար տոննա և 1,2 միլիոն տոննա քիմիական կերահավելումների մատակարարումը:

Սահմանված են հանքային պարարտանյութերի որակը բարձրացնելու միջոցառումներ:

Մինչև 1990 թվականը գերխիտ և բարդ պարարտանյութերի արտադրությունը կկազմի պարարտանյութերի թողարկման ընդհանուր ծավալի առնվազն 90 տոկոսը: 1988 թվականից սկսած գյուղատնտեսության համար պարարտանյութերը կթողարկվեն միայն հատիկներով կամ խոշոր բյուրեղների ձևով (բացառությամբ ֆոսֆորիտային ալրի): Ընդլայնվում է սուպերֆոսֆորաթթվի հիման վրա հեղուկ կոմպլեքսային պարարտանյութերի արտադրությունը:

Նախատեսված է ավելացնել գյուղատնտեսությանը բույսերի պաշտպանության քիմիական միջոցների մատակարարումները՝ 1985 թվականին հասցնելով 680 հազար տոննայի և 1990 թվականին՝ 750—790 հազար տոննայի, ընդ որում ընդլայնվում է բույսերի պաշտպանության բարձրարդյունավետ միջոցների արտադրությունը: Բավարարվում են գյուղատնտեսության պահանջմունքները հերբիցիդների նկատմամբ, որոնք անհրաժեշտ են գյուղատնտեսական կուլտուրաների մշակության ինդուստրիալ տեխնոլոգիաների արմատավորման համար:

Ավելացվում է կերի կոնսերվանտների արտադրությունը, 1985 թվականին կոլտնտեսություններին ու սովխոզներին կմատակարարվեն առնվազն 110 հազար տոննա և 1990 թվականին՝ 380—400 հազար տոննա կոնսերվանտներ:

Միջոցառումներ են մշակված գյուղատնտեսությունը կրանյութերով ապահովելու, դրանց որակը բարելավելու համար:

Անհրաժեշտ է յուրաքանչյուր տնտեսության մեջ կազմակերպել օրգանական և մյուս տեղական պարարտանյութերի բոլոր առկա ռեսուրսների լրիվ ու ռացիոնալ օգտագործումը, ընդլայնել տորֆի օգտագործմամբ բաղադրյալ պարարտանյութերի, կրանյութերի, ֆոսֆորիտային ալրի և այլ պարարտանյութերի պատրաստման աշխատանքների ծավալները: Ավելացնել կոլտնտեսություններում և սովխոզներում օրգանական պարարտանյութերի կիրառումը՝ 1985 թվականին հասցնելով 1,2 միլիարդ տոննայի և 1990 թվականին՝ առնվազն 1,5 միլիարդ տոննայի: Տասներկուերորդ հնգամյակում բաղադրյալ պարարտանյութերի պատրաստման և որպես փռոց օգտագործելու համար տորֆի հանույթը հասցնել տարեկան առնվազն 170 միլիոն տոննայի:

Սահմանված են միջոցառումներ կոլտնտեսություններում ու սովխոզներում, ինչպես նաև գյուղտնտքիմիայի կազմակերպություններում քիմիացման անհրաժեշտ նյութատեխնիկական բազայի ստեղծման ուղղությամբ, նախատեսված է պահեստների, մեքենաների տեխնիկական սպասարկման կետերի, թռիչքադաշտերի, գոմաղբի պահեստների և այլ օբյեկտների շինարարություն՝ այն հաշվով, որ առավելագույնս կրճատվեն հանքային պարարտանյութերի, բույսերի պաշտպանության միջոցների և քիմիական մյուս արտադրանքի կորուստները դրանց փոխադրման, պահպանման և օգտագործման ժամանակ:

Պետք է բարձրացվի ագրոքիմիական ծառայության պատասխանատվությունը հանքային պարարտանյութերի և քիմիացման մյուս միջոցների արդյունավետ օգտագործման, արտադրության մեջ գիտության, տեխնիկայի նվաճումների ու առաջավոր փորձի արմատավորման համար:



**Հողերի մելիորացման զարգացումը:** Ծրագրով նախատեսվում է գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման գործում մելիորացիայի դերի հետագա բարձրացում: Նախատեսված է 1985 թվականին ոռոգելի հողատարածությունը հասցնել 20,8 միլիոն հեկտարի և 1990 թվականին՝ 23—25 միլիոն հեկտարի, ցամաքեցված հողատարածությունը՝ համապատասխանաբար 15,5 միլիոն հեկտարի և 18—19 միլիոն հեկտարի:

ՍՍՀՄ մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրությանը, ՍՍՀՄ գյուղատնտեսության մինիստրությանը, ՍՍՀՄ պտղաբանջարեղենի տնտեսության մինիստրությանը և միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդներին՝ հիմնական ուշադրությունը կենտրոնացնել հողերի մելիորացման կոմպլեքսային անցկացման և դրանց գյուղատնտեսական յուրացման ապահովման, ոռոգելի և ցամաքեցված հողերում գյուղատնտեսական կուլտուրաների նախագծային բերքատվության ձեռքբերման վրա: Իրագործել առաջին հերթին ոռոգման ու ցամաքեցման գործող սիստեմների վերակառուցումը մելիորացված հողերի արդյունավետությունը բարձրացնելու նպատակով:

Ոռոգելի հողագործության շրջաններում ստեղծել հացահատիկի, հատկապես եգիպտացորենի երաշխավորված արտադրության գոտիներ: Ապահովել ոռոգելի հողերից հացահատիկի համախառն բերքը 1985 թվականին առնվազն 15 միլիոն տոննա և 1990 թվականին՝ 20—22 միլիոն տոննա քանակությամբ, այդ թվում բրնձինը՝ համապատասխանաբար 3 միլիոն տոննա և 3,3—3,5 միլիոն տոննա:

Մելիորացված հողերում կերարտադրությունը հասցնել 1985 թվականին 63 միլիոն տոննա և 1990 թվականին՝ 80—82 միլիոն տոննա կերամիավորի: Անասնապահական համալիրներին կից ստեղծել ոռոգելի կերահանդակներ: Այդ հողերում ավելացնել բազմամյա խոտաբույսերի, արմատապտուղների, սիլոսացու կուլտուրաների և կերի այլ կուլտուրաների արտադրությունը:

Ավարտել խոշոր քաղաքների և արդյունաբերական կենտրոնների մոտակայքում ոռոգելի հողերում բանջարեղենի և վաղահաս կարտոֆիլի երաշխավորված արտադրության գոտիների ստեղծումը: Ծավալել բրնձի խոշոր ոռոգման սիստեմների կառուցումը:

Մելիորացված հողերում արտադրանքի արտադրության համար կոլտնտեսություններին ու սովխոզներին հարկ եղած չափով հատկացնել տեխնիկա, հանքային պարարտանյութեր և բույսերի պաշտպանության քիմիական միջոցներ:

Արմատավորել մելիորատիվ սիստեմների շահագործման և դրանց տեխնիկական սպասարկման նոր կազմակերպական ձևեր: Ընդլայնել ոռոգման բարձրարդյունավետ եղանակների կիրառումը, ընդ որում օգտագործել ավտոմատիկայի և հեռուստակառավարման սիստեմները, մելիորատիվ շինարարության մեջ ավելի լայնորեն կիրառել պոլիմերային նյութերը:

Մեքենաշինական մինիստրություններին՝ ապահովել մելիորատիվ աշխատանքների կատարման համար նոր բարձրարտադրողական ոռոգման տեխնիկայի, մեքենաների ու մեխանիզմների մշակումը և դրանց սերիական թողարկման կազմակերպումը: Նավաշինական արդյունաբերության մինիստրությանը՝ 1982—1990 թվականներին պատրաստել և գյուղատնտեսությանը մատակարարել «Ֆրեգատ» և «Կուբան» տիպերի 32 հազար անձրևող մեքենա:

Մինչև 1990 թվականն իրականացնել հյուսիսային գետերի հոսքի մի մասը Վոլգա գետի ավազանը փոխադրելու առաջին փուլի օբյեկտների, ինչպես նաև Վոլգա—Դոն, Ռոստով—Կրասնոդար և Դանուբ—Դնեպր ջրանցքների շինարարությունը:

**Ագրոարդյունաբերական կոմպլեքսի ճյուղերի արտադրական կարողությունների զարգացումը:** Ծավալել երկրի ագրոարդյունաբերական կոմպլեքսի նյութատեխնիկական բազայի հետագա ամրապնդման կուրսը: Տասներկուերորդ հնգամյակում ապահովել այդ ճյուղերում 233 միլիարդ ռուբլի ծավալով, այդ թվում գյուղատնտեսության մեջ 189,6 միլիարդ ռուբլի ծավալով կապիտալ ներդրումների իրացումը:

Տասներկուերորդ հնգամյակում գյուղատնտեսության, ձկնատնտեսության, սննդի, մսեղենի-կաթնեղենի, միկրոբիոլոգիական, ալրի-ձավարեղենի և համակցված կերի արդյունաբերության, տրակտորային և գյուղատնտեսական մեքենաշինության, անասնապահության և կերարտադրության մեքենաշինության, արդյունաբերության սննդի ճյուղերի մեքենաշինության համար, հանքային պարարտանյութերի և բույսերի պաշտպանության քիմիական միջոցների արտադրության համար, ինչպես նաև առևտրի և սպառողական կոոպերացիայի ձեռնարկությունների ու կազմակերպությունների համար հատկացնել ժողովրդական տնտեսության գծով կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալի 33—35 տոկոսի չափով, իսկ անմիջականորեն գյուղատնտեսության համար՝ 27—28 տոկոսի չափով կապիտալ ներդրումներ:

Բարձրացնել կուսակցական, սովետական և գյուղատնտեսական մարմինների շինարարական կազմակերպությունների, ինչպես նաև ձեռնարկությունների և տնտեսությունների ղեկավարների պատասխանատվությունը կապիտալ ներդրումներն արդյունավետ օգտագործելու, գյուղատնտեսության, սննդի արդյունաբերության և ագրոարդյունաբերական կոմպլեքսի մյուս ճյուղերի օբյեկտներում կարողությունները ժամանակին գործարկելու և յուրացնելու համար:

Ծրագրով նախատեսվում է կապիտալ ներդրումներն օգտագործել առաջին հերթին այն կարողությունների զարգացման համար, որոնք հնարավորություն են ընձեռում ամենակարճ ժամկետներում ավելացնելու պարենի արտադրությունը, գործող ձեռնարկությունների և արտադրությունների տեխնիկական վերազինման, ընդլայնման ու վերակառուցման, կառուցվող օբյեկտների գործարկման արագացման համար: Ագրոարդյունաբերական կոմպլեքսի կառույցները համարել երկրի կարևորագույն հարվածային կառույցներ:

Գյուղատնտեսության մեջ կապիտալ ներդրումները կենտրոնացնել հողերի բերրիության բարձրացման, անասնապահության կերի կայուն բազայի և արտադրանքի նախնական վերամշակման կարողությունների ստեղծման, պահեստների կառուցման, անասնապահական շենքերի վերակառուցման և ընդլայնման վրա, ինչպես նաև գյուղի սոցիալական զարգացման վրա: Սահմանված են գյուղական շինարարության կազմակերպումը բարելավելու միջոցառումներ: Բարձրացվում է կոլտնտեսություններում և սովխոզներում շինարարության կապալային եղանակի տեսակարար կշիռը, հետագայում կզարգանա գյուղական շինարարության արտադրական բազան՝ գործարանային պատրաստության ավելի բարձր աստիճան ունեցող թեթև կոնստրուկցիաների կոմպլեկտների թողարկման կարողությունների ստեղծման հիման վրա, ավելացվում է տեղական շինանյութերի արտադրությունը:

Սննդարդյունաբերության ճյուղերում նախատեսված է կապիտալ ներդրումներն օգտագործել ամենից առաջ մսամթերքների, կաթնամթերքների, պտուղբանջարեղենի և ձկնամթերքների, ձեթի, մարգարինի, շաքարի, հրուշակեղենի և մակարոնեղենի, ալյուրի, ձավարեղենի արտադրության զարգացման, ինչպես նաև էլևատորների, պահեստների և սառնարանների կառուցման համար: Սահմանված են համապատասխան կարողությունների գործարկման կոնկրետ առաջադրանքներ:

Գյուղատնտեսական մթերքների վերամշակման ու պահպանման խոշոր ձեռնարկությունների կառուցման հետ մեկտեղ, որտեղ տնտեսապես նպատակահարմար է ստեղծել ոչ մեծ ձեռնարկություններ կոլտնտեսությունների և սովխոզների մոտակայքում, ինչպես նաև անմիջականորեն տնտեսություններում, ընդսմին լայնորեն օգտագործելով մետաղյա թեթև կոնստրուկցիաներից հավաքովի շենքերը (մոդուլները): Սիբիրի, Պովոլժիեի, Ղազախստանի խորքային շրջաններում և երկրի այլ շրջաններում իրականացնել հացահատիկի ընդունման ոչ մեծ ձեռնարկությունների, ինչպես նաև համակցված կերի արտադրամասերի շինարարություն:



# IV. ԱԳՐՈԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԿՈՄՊԼԵՔՍԻ ՃՅՈՒՂԵՐԻ ԱՊԱՀՈՎՈՒՄԸ ՏՐԱՆՍՊՈՐՏՈՎ, ՏԱՐԱՅՈՎ ԵՎ ՏԱՐԱՓԱԹԵԹԱՎՈՐՄԱՆ ՆՅՈՒԹԵՐՈՎ

Ագրոարդյունաբերական կոմպլեքսի **տրանսպորտային ապահովումը** պարենային ծրագրի կարևոր խնդիրներից մեկն է: Դրա լուծման համար նախատեսված են հետևյալ միջոցները:

Տասը տարվա ընթացքում գյուղատնտեսությանը հատկացնել 3.000—3.060 հազար բեռնատար ավտոմոբիլ և 3.200—3.300 հազար տրակտորային կցան: Կոլտնտեսություններին, սովխոզներին և արդյունաբերության սննդի ճյուղերի ձեռնարկություններին մատակարարել 110—116 հազար կաթնատար մեքենա և 50—53 հազար անասնատար կիսակցան: Ավելացնել շաքարավազի և հեղուկ շաքարի, կենդանի ձկան, այլ սննդամթերքների, գարեջրի և հանքային ջրի փոխադրման համար մասնագիտացված ավտոտրանսպորտի մատակարարումը սննդարդյունաբերության և ձկնատնտեսության ճյուղերին:

Տասը տարվա ընթացքում ագրոարդյունաբերական կոմպլեքսի ճյուղերի և ընդհանուր օգտագործման տրանսպորտին մատակարարել 76—78 հազար սառնարան-ավտոմոբիլ: Հաղորդակցության ճանապարհների մինիստրությանը հատկացնել 29—30 հազար սառնարանային և ջերմամեկուսիչ երկաթուղային վագոն:

Երկաթուղային տրանսպորտում՝ իրականացնել ագրոարդյունաբերական կոմպլեքսի ճյուղերի սպասարկումը կատարելագործելու միջոցառումներ, բարելավել գյուղատնտեսական բեռների և պարենի փոխադրման համար օգտագործվող վագոնների համակազմի կառուցվածքը:

Օդային տրանսպորտում՝ ապահովել թարմ բանջարեղենի ու մրգի փոխադրումների ծավալների ավելացումը, և առաջին հերթին դեպի Սիբիրի և Ծայրագույն Հյուսիսի հեռավոր շրջաններ:

Ծովային տրանսպորտում՝ պարենային բեռների փոխադրումների լրիվ ապահովման նպատակով Բալթյան, Սևծովյան և Հեռավորարևելյան ավազանների նավահանգիստներում ստեղծել այդ բեռների փոխաբեռնման մասնագիտացված կոմպլեքսներ:

Գետային տրանսպորտում՝ կրճատել Ստորին Վոլգայի շրջաններից դեպի երկրի արդյունաբերական կենտրոններ բանջարեղենի և բոստանային կուլտուրաների առաքման ժամկետները: Առավել զարգացնել նավամատույցների և պտուղբանջարեղենի գետամերձ բազաները:

Ավտոմոբիլային արդյունաբերության մինիստրությանը՝ տասնմեկերորդ հնգամյակում ապահովել տարեկան 20 հազար գյուղատնտեսական ավտոգնացքների արտադրության կարողությունների ստեղծումը Քութայիսի ավտոմոբիլային գործարանում, ինչպես նաև 7—8 տոննա բեռնամբարձությամբ մեծ անցունակություն ունեցող 10 հազար ավտոմոբիլների արտադրության կարողությունների ստեղծումը Ուրալյան ավտոմոբիլային գործարանում:

Տասնմեկերորդ հնգամյակում յուրացնել սորուն և հեղուկ կոմպլեքսային պարարտանյութերի փոխադրման համար մասնագիտացված տրանսպորտային միջոցների սերիական արտադրությունը:

Ապահովել գյուղատնտեսական ավտոմոբիլների կոնստրուկցիաների հետագա կատարելագործումը: Արագացնել փոխովի մասնագիտացված թափքերի մշակումն ու ստեղծումը:

Ծանր և տրանսպորտային մեքենաշինության ապարեզում կարողություններ ստեղծել հանքային պարարտանյութերի, կրանյութերի փոխադրման ինքնաբեռնաթափվող վագոնների ու մասնագիտացված ցիստեռնների արտադրու-

թյունն ավելացնելու համար, տարեկան արտադրելով 6—7 հազար վագոն (ցիստեռն) և 2 հազար ջերմամեկուսացված սառնարան-վագոններ:

Նավաշինական արդյունաբերության մինիստրությանը և ՌՍՖՍՀ գետային նավատորմի մինիստրությանը՝ 1983—1990 թվականներին ապահովել բանջարեղեն փոխադրող 90 գետային նավերի կառուցումը, արագացնել փոքր գետերի համար հատուկ փոխադրամիջոցների նախագծումն ու կառուցումը:

ՍՍՀՄ պետպլանին և ՍՍՀՄ պետմատին՝ անհրաժեշտ միջոցառումներ իրականացնել արդյունաբերության սննդի ճյուղերի, առևտրի ու գյուղատնտեսության **տարայի և տարափաթեթավորման նյութերի** պահանջմունքների ապահովման ուղղությամբ: Առավել արագ տեմպերով զարգացնել ալյումինից, լամինացված թղթից, փայլաթիթեղից, պոլիմերներից և պրոգրեսիվ այլ նյութերից պատրաստված տարայի նոր տեսակների արտադրությունը:

Փաթեթավորված հիմնական պարենային ապրանքների թողարկումը 1990 թվականին հասցնել դրանց վաճառքի ընդհանուր ծավալի 60—70 տոկոսին:

Արդյունաբերության սննդի ճյուղերում արագացնել պատրաստի արտադրանքի փաթեթավորման հարահոս մեքենայացված գծերի արմատավորումը:

Թեթև ու սննդի արդյունաբերության մեքենաշինության մեջ տասնմեկերորդ հնգամյակում նախագծել և արտադրել ծալքավոր և հարթ ստվարաթղթի թողարկման բարձրարտադրողական սարքավորումներ: Ապահովել կաթի, ոչ ոգելից խմիչքների և գարեջրի լցարկման, ինչպես նաև պարենային ապրանքների տուփավորման ու փաթեթավորման ունիվերսալ բարձրարտադրողական ավտոմատ գծերի ստեղծումն ու սերիական արտադրության յուրացումը:

Հաստոցաշինական արդյունաբերության մեջ ապահովել սարքավորումների արտադրությունը պոլիէթիլենե տարա պատրաստելու և արտադրանքը թաղանթից պատրաստված փոխադրատուփակների մեջ զետեղելու համար:

# V. ԳԻՏՈՒԹՅԱՆ ԴԵՐԻ ՈՒԺԵՂԱՑՈՒՄԸ ՊԱՐԵՆԱՅԻՆ ԾՐԱԳՐԻ ԻՐԱԿԱՆԱՑՄԱՆ ԳՈՐԾՈՒՄ

ՍՍՀՄ գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեին, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիային, ՍՍՀՄ գյուղատնտեսության մինիստրությանը, ՍՍՀՄ պտուղբանջարեղենի տնտեսության մինիստրությանը, Վ. Ի. Լենինի անվան գյուղատնտեսական գիտությունների համամիութենական ակադեմիային, մյուս մինիստրություններին ու գերատեսչություններին հանձնարարված է 1982—1990 թվականներին միջոցառումներ իրականացնել գիտական հետազոտությունների հետագա զարգացման ուղղությամբ և ագրոարդյունաբերական կոմպլեքսի ճյուղերում արտադրության մեջ գիտության նվաճումների արմատավորումն արագացնելու ուղղությամբ:

Զարգացնել ճյուղային և զոնալ գիտահետազոտական ու կոնստրուկտորական կազմակերպությունների հիման վրա ստեղծվող գիտաարտադրական միավորումների ցանցը: Այդ միավորումներում կենտրոնացնել տեսակավոր և հիբրիդային սերմացուի և բարձր վերարտադրության տնկանյութի արտադրությունը և տոհմային անասունների աճեցումը՝ դրանցով կոլտնտեսություններն ու սովխոզներն ապահովելու համար:

Պրակտիկայի ընդհանրացմամբ գիտականորեն հիմնավորված հանձնարարականներ մշակել արտադրության մասնագիտացման, համակենտրոնացման, միջտնտեսային կոոպերացման հետագա կատարելագործման, աշխատանքի կազմակերպման և դրա վերջնական արդյունքների համար գործը խթանելու առաջավոր ձևերի արմատավորման վերաբերյալ:



Ուժեղացնել բուսաբուծության ասպարեզում կիրառվող ինդուստրիալ տեխնոլոգիաների պահանջներին համապատասխանող գյուղատնտեսական կուլտուրաների նոր սորտերի ու հիբրիդների սելեկցիայի աշխատանքները: Ստեղծել և արմատավորել միջավայրի աննպաստ պայմանների նկատմամբ կայուն, բարձրորակ, հիվանդություններին ու վնասատուներին հակակայող, պոտենցիալ բերքատվությամբ հացահատիկի սորտեր. աշնանացան ցորենը՝ հեկտարից առնվազն 80—90 ցենտներ, գարնանացան ցորենը՝ 45—60 ցենտներ, կարճացողուն աշնանացան տարեկանը, աշնանացան և գարնանացան գարին՝ 55—65 ցենտներ, եգիպտացորենի հիբրիդները՝ ոռոգելի հողերում 120—130 ցենտներ և անջրդի հողերում՝ 80—90 ցենտներ, սիսեռը՝ 40—45 ցենտներ և մյուս հատիկաընդեղենային կուլտուրաները՝ հեկտարից 25—30 ցենտներ:

Հատուկ ուշադրություն նվիրել եգիպտացորենի ու արևածաղկի վաղահաս ու միջահաս հիբրիդների, կանճրակի, միամյա ու բազմամյա խոտաբույսերի բարձրորակ ու բարձր մթերատու սորտերի ու հիբրիդների ստեղծմանը: Արագացնել սննդային ու տեխնոլոգիական բարձր հատկություններով օժտված կարտոֆիլի, բանջարանոցային, բոստանային, պտղատու ու հատապտղատու կուլտուրաների և խաղողի բարձր բերքատու սորտերի ու հիբրիդների ստացումը:

Միջոցառումներ իրականացնել անասունների ու թռչունների տոհմային ու մթերատու հատկությունները կատարելագործելու, գոյություն ունեցող բարձր մթերատու տոհմերը, տոհմային խմբերը, գծերը, հիբրիդներն ու խաչավորումները բարելավելու և նորերը ստեղծելու ուղղությամբ, որոնք հարմար լինեն անասնապահության ճյուղերի արդյունաբերական տեխնոլոգիաներին:

Ապահովել՝

հողակլիմայական տարբեր պայմանների համար գյուղատնտեսական կուլտուրաների մշակության հողապաշտպան և ինդուստրիալ նվազ էներգատար տեխնոլոգիաների մշակումն ու արմատավորումը.

բնական կերահանդակներում և վարելահողերում բարձրարդյունավետ այնպիսի կերերի արտադրության տեխնոլոգիաների մշակումն ու արմատավորումը, որոնք ապահովեն մեկ հեկտարից 10—15 հազար կերամիավորի ստացումը ոռոգման պայմաններում և 5—6 հազար կերամիավորի ստացումը առանց ոռոգման, ինչպես նաև կանաչ կերի պահածոյացման այնպիսի տեխնոլոգիական պրոցեսների մշակումն ու արմատավորումը, որոնք հնարավորություն ընձեռեն պահպանելու սննդարար հատկությունների առնվազն 90 տոկոսը.

կենդանիների հիվանդությունների կանխման ու բուժման ավելի կատարյալ մեթոդների ու միջոցների, կենսաբանորեն արդյունավետ և քիմիաթերապևտիկ անասնաբուժական պրեպարատների ու դրանց արտադրության տեխնոլոգիայի, կենդանիների մասսայական հետազոտությունների ու մշակման սարքերի և գործիքների մշակումն ու արմատավորումը.

ակտիվ օդափոխմամբ, արհեստական սառեցմամբ և կարգավորվող գազային միջավայրում գյուղատնտեսական մթերքների պահպանման նոր տեխնոլոգիաների մշակումն ու արմատավորումը:

Խորացնել ջրային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման և աղտոտումից ու սպառվելուց դրանց պահպանման, շահագործական առումով հնայողաբեր և մեքենայացված ու ավտոմատացված ջրաբաշխում ունեցող ոռոգիչ համակարգերի ռացիոնալ օգտագործման հետազոտությունները:

ՍՍՀՄ գիտությունների ակադեմիային, միութենական հանրապետությունների գիտությունների ակադեմիաներին, Վ. Ի. Լենինի անվան գյուղատնտեսական գիտությունների համամիութենական ակադեմիային՝ զարգացնել բույսերի, միկրոօրգանիզմների ու կենդանիների սելեկցիայի մեջ գենային ինժեներիայի պրոբլեմներին, սպիտակուցի, կենսաբանորեն ակտիվ նյութերի սինթեզի կենսատեխնոլոգիայի պրոբլեմներին վերաբերող տեսական հետազոտությունները: Ապահովել վնասատուներից, հիվանդություններից ու մոլախոտերից բույսերի պաշտպանության նոր արդյունավետ միջոցների, աճի կարգա-

վորիչների և գյուղատնտեսության համար նախատեսված այլ պրեպարատների ստեղծումը, ինչպես նաև այդ միջոցների արդյունաբերական արտադրության տեխնոլոգիայի մշակումն ու արմատավորումը:

ՍՍՀՄ ստանդարտների պետական կոմիտեին, ՍՍՀՄ Մինիստրություններին ու գերատեսչություններին և միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդներին՝ ապահովել կոմպլեքսային ստանդարտացման այնպիսի ծրագրերի մշակումն ու իրացումը, որոնք նախատեսեն գյուղատնտեսական մթերքների ու պարենային ապրանքների, հանքային պարարտանյութերի, բույսերի պաշտպանության միջոցների, մեքենաների ու սարքավորումների, գյուղատնտեսական արտադրության համար տարայի ու փաթեթավորման նյութերի որակի նկատմամբ պահանջների փոխկապված բարձրացում, ինչպես նաև այդ արտադրանքի որակի գնահատման ժամանակակից մեթոդների կիրառման ընդլայնում:

## VI. ԿՅԱՆՔԻ ՍՈՑԻԱԼ-ԿԵՆՑԱՂԱՅԻՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԻ ԲԱՐԵԼԱՎՈՒՄԸ ԳՅՈՒՂՈՒՄ

Ծրագրում շեշտված է, որ կուսակցական, սովետական, տնտեսական ու արհմիութենական մարմինների կարևորագույն խնդիրն է հետևողականորեն կենսագործել գյուղի սոցիալական զարգացման, գյուղի բնակիչների բարեկեցության, կուլտուրայի, բժշկական ու կենցաղային սպասարկման մակարդակի հետագա բարձրացման միջոցառումներ:

Անհրաժեշտ է ըստ ամենայնի բարձրացնել գյուղատնտեսության բնագավառում աշխատանքի վարկը, ավելի ակտիվ արմատավորել սովխոզների աշխատողների և կոլտնտեսականների աշխատանքի ու հանգստի ռացիոնալ ռեժիմը: Աշխատանքի արտադրողականության աճի հիման վրա ապահովել գյուղատնտեսության ու արդյունաբերության աշխատողների աշխատանքի վարձատրության մակարդակների մերձեցումը:

Նախատեսված է կոլտնտեսություններում, սովխոզներում և մյուս գյուղատնտեսական ձեռնարկություններում առավել արագ տեմպերով կատարել տնտեսական շինություններով բնակելի բարեկարգ տների, մանկական նախադպրոցական հիմնարկների, ակումբների, գրադարանների և կուլտուր-կենցաղային նշանակության մյուս օբյեկտների, առևտրի, հասարակական սննդի և բնակչության կենցաղային սպասարկման ձեռնարկությունների, ինչպես նաև ճանապարհների կառուցումը:

Տասնմեկերորդ հնգամյակում կոլտնտեսություններում, սովխոզներում և մյուս գյուղատնտեսական ձեռնարկություններում կառուցել ընդհանուր մակերեսով առնվազն 176 միլիոն քառակուսի մետր բնակելի տներ, իսկ տասներկուերորդ հնգամյակում՝ դրանից 15—18 տոկոսով ավելի:

Զգալիորեն բարձրացնել գյուղական բնակչության կոմունալ սպասարկումների ապահովումը: Հաշվի առնելով կոլտնտեսություններում ու սովխոզներում կադրերի ամրակայման կարևորությունը, ՍՍՀՄ պետպլանին և միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդներին՝ տարեկան և հնգամյա պլանները մշակելիս կոլտնտեսություններում ու սովխոզներում ոչ արտադրական շինարարության համար լրացուցիչ միջոցներ գտնել դրանց ընդհանուր ծավալը հօգուտ գյուղի վերաբաշխելու հաշվին, որպեսզի ավելացվի գյուղական վայրերում բարեկարգ բնակելի տների և կուլտուր-կենցաղային նշանակության օբյեկտների գործարկումը:

Ընդլայնել բնակելի տների անհատական շինարարությունը կոլտնտեսություններում ու սովխոզներում: Կառուցապատողներին համակողմանի օգնություն ցույց տալ ֆինանսական ու նյութական ռեսուրսներով: Պլաններում նախատեսել անհրաժեշտ շինանյութերի հատկացում այդ նպատակների համար:



Ավելացնել դաստակերտային տիպի բնակելի տների կոնստրուկցիաների թողարկումը, փայտյա պանելային տների և գյուղական շինարարության համար դետալների կոմպլեկտների արտադրությունը:

Տասնամյակի ընթացքում գյուղական վայրերում կրկնապատկել կենցաղային սպասարկումների իրացման ծավալը: Բարձրացնել բնակչության սպասարկման որակն ու կուլտուրան, ընդլայնել կենցաղային սպասարկումների բոլոր անհրաժեշտ տեսակների պատվերների ընդունումը անմիջականորեն կոլտնտեսություններում ու սովխոզներում:

Կոլտնտեսություններում ու սովխոզներում զգալիորեն ընդլայնել ինքնասպասարկման լվացքատների և նորոգման մանր աշխատանքների ու սպասարկումների կատարման համար ընդունման կոմպլեքսային կետերի շինարարությունը:

Մասնագիտացված ձեռնարկություններ ու կազմակերպություններ ստեղծել գյուղում բնակարանային ֆոնդի և կոմունալ կենցաղային նշանակության օբյեկտների շահագործումը բարելավելու համար:

Ընդլայնել ամբուլատոր-պոլիկլինիկական հիմնարկների ու դեղատների շինարարությունը: Միջոցներ ձեռնարկել գյուղական վայրերի բժշկական հիմնարկները մասնագետների կադրերով կոմպլեկտավորելու համար: Բարձրացնել սովխոզների աշխատողների ու կոլտնտեսականների բժշկական սպասարկման և սանատորակուրորտային բուժման մակարդակն ու որակը:

Ծառունակել գյուղական դպրոցների ուսումնական բազայի ամրապնդման գործը: Տասնմեկերորդ հնգամյակում գյուղական վայրերում կառուցել 2,3 միլիոն աշակերտական տեղով հանրակրթական դպրոցներ, իսկ 12-րդ հնգամյակում՝ դրանից մոտավորապես 14,17 տոկոսով ավելի:

Ապահովել կոլտնտեսությունների ու սովխոզների տրանսպորտային հուսալի կապը շրջկենտրոնների հետ: Տասնամյակի ընթացքում գյուղական վայրերում կառուցել ընդհանուր օգտագործման մոտ 130 հազար կիլոմետր ավտոճանապարհ և 150 հազար կիլոմետր ներտնտեսային ճանապարհ:

Պլանաչափորեն ավելացնել գյուղական ավտոբուսային գծերի երկարությունը, այն հաշվով, որ մինչև 1990 թվականը կոլտնտեսությունների ու սովխոզների հիմնականում բոլոր կենտրոնական բնակատեղերը ավտոբուսային հաղորդակցություն ունենան շրջկենտրոնների հետ:

Կոլտնտեսականների և սովխոզների աշխատողների զբաղվածությունը ամբողջ տարին ապահովելու նպատակով այն տնտեսություններում, որտեղ դա նպատակահարմար է, զարգացնել օժանդակ արտադրություններ և արհեստագործությունը, ինչպես նաև արդյունաբերական ձեռնարկությունների հետ արտադրական կոոպերացումը:

## VII. ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ, ՍՈՎԽՈԶՆԵՐԻ, ԱԳՐՈԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԿՈՄՊԼԵՔՍԻ ՄՅՈՒՍ ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՈՒ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՈՒՄԸ

ՍՍՀՄ պարենային ծրագրով նշվում են գյուղատնտեսության և դրա հետ կապված ճյուղերի հետագա զարգացման խոշոր միջոցառումներ, դրա համար նախատեսվում են անհրաժեշտ ռեսուրսներ:

Գյուղատնտեսության մեջ և արդյունաբերության սննդի ճյուղերում հիմնական արտադրաֆոնդերը տասնամյակի ընթացքում կաճեն 1,5 անգամ: Կոլտնտեսություններում ու սովխոզներում էներգետիկ հզորությունները կաճեն ավելի քան 1,6 անգամ, իսկ գյուղին հանքային պարարտանյութերի մատակա-

վորիչների և գյուղատնտեսության համար նախատեսված այլ պրեպարատների ստեղծումը, ինչպես նաև այդ միջոցների արդյունաբերական արտադրության տեխնոլոգիայի մշակումն ու արմատավորումը:

ՍՍՀՄ ստանդարտների պետական կոմիտեին, ՍՍՀՄ Մինիստրություններին ու գերատեսչություններին և միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդներին՝ ապահովել կոմպլեքսային ստանդարտացման այնպիսի ծրագրերի մշակումն ու իրացումը, որոնք նախատեսեն գյուղատընտեսական մթերքների ու պարենային ապրանքների, հանքային պարարտանյութերի, բույսերի պաշտպանության միջոցների, մեքենաների ու սարքավորումների, գյուղատնտեսական արտադրության համար տարայի ու փաթեթավորման նյութերի որակի նկատմամբ պահանջների փոխկապված բարձրացում, ինչպես նաև այդ արտադրանքի որակի գնահատման ժամանակակից մեթոդների կիրառման ընդլայնում:

## VI. ԿՅԱՆՔԻ ՍՈՑԻԱԼ-ԿԵՆՑԱՂԱՅԻՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԻ ԲԱՐԵԼԱՎՈՒՄԸ ԳՅՈՒՂՈՒՄ

Ծրագրում շեշտված է, որ կուսակցական, սովետական, տնտեսական ու արհմիութենական մարմինների կարևորագույն խնդիրն է հետևողականորեն կենսագործել գյուղի սոցիալական զարգացման, գյուղի բնակիչների բարեկեցության, կուլտուրայի, բժշկական ու կենցաղային սպասարկման մակարդակի հետագա բարձրացման միջոցառումներ:

Անհրաժեշտ է ըստ ամենայնի բարձրացնել գյուղատնտեսության բնագավառում աշխատանքի վարկը, ավելի ակտիվ արմատավորել սովխոզների աշխատողների և կոլտնտեսականների աշխատանքի ու հանգստի ռացիոնալ ռեժիմը: Աշխատանքի արտադրողականության աճի հիման վրա ապահովել գյուղատնտեսության ու արդյունաբերության աշխատողների աշխատանքի վարձատրության մակարդակների մերձեցումը:

Նախատեսված է կոլտնտեսություններում, սովխոզներում և մյուս գյուղատնտեսական ձեռնարկություններում առավել արագ տեմպերով կատարել տնտեսական շինություններով բնակելի բարեկարգ տների, մանկական նախադպրոցական հիմնարկների, ակումբների, գրադարանների և կուլտուր-կենցաղային նշանակության մյուս օբյեկտների, առևտրի, հասարակական սննդի և բնակչության կենցաղային սպասարկման ձեռնարկությունների, ինչպես նաև ճանապարհների կառուցումը:

Տասնմեկերորդ հնգամյակում կոլտնտեսություններում, սովխոզներում և մյուս գյուղատնտեսական ձեռնարկություններում կառուցել ընդհանուր մակերեսով առնվազն 176 միլիոն քառակուսի մետր բնակելի տներ, իսկ տասներկուերորդ հնգամյակում՝ դրանից 15—18 տոկոսով ավելի:

Զգալիորեն բարձրացնել գյուղական բնակչության կոմունալ սպասարկումների ապահովումը: Հաշվի առնելով կոլտնտեսություններում ու սովխոզներում կադրերի ամրակայման կարևորությունը, ՍՍՀՄ պետպլանին և միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդներին՝ տարեկան և հնգամյա պլանները մշակելիս կոլտնտեսություններում ու սովխոզներում ոչ արտադրական շինարարության համար լրացուցիչ միջոցներ գտնել դրանց ընդհանուր ծավալը հօգուտ գյուղի վերաբաշխելու հաշվին, որպեսզի ավելացվի գյուղական վայրերում բարեկարգ բնակելի տների և կուլտուր-կենցաղային նշանակության օբյեկտների գործարկումը:

Ընդլայնել բնակելի տների անհատական շինարարությունը կոլտնտեսություններում ու սովխոզներում: Կառուցապատողներին համակողմանի օգնություն ցույց տալ ֆինանսական ու նյութական ռեսուրսներով: Պլաններում նախատեսել անհրաժեշտ շինանյութերի հատկացում այդ նպատակների համար:



Ավելացնել դաստակերտային տիպի բնակելի տների կոնստրուկցիաների թողարկումը, փայտյա պանելային տների և գյուղական շինարարության համար դետալների կոմպլեկտների արտադրությունը:

Տասնամյակի ընթացքում գյուղական վայրերում կրկնապատկել կենցաղային սպասարկումների իրացման ծավալը: Բարձրացնել բնակչության սպասարկման որակն ու կուլտուրան, ընդլայնել կենցաղային սպասարկումների բոլոր անհրաժեշտ տեսակների պատվերների ընդունումը անմիջականորեն կոլտնտեսություններում ու սովխոզներում:

Կոլտնտեսություններում ու սովխոզներում զգալիորեն ընդլայնել ինքնասպասարկման լվացքատների և նորոգման մանր աշխատանքների ու սպասարկումների կատարման համար ընդունման կոմպլեքսային կետերի շինարարությունը:

Մասնագիտացված ձեռնարկություններ ու կազմակերպություններ ստեղծել գյուղում բնակարանային ֆոնդի և կոմունալ կենցաղային նշանակության օբյեկտների շահագործումը բարելավելու համար:

Ընդլայնել ամբուլատոր-պոլիկլինիկական հիմնարկների ու դեղատների շինարարությունը: Միջոցներ ձեռնարկել գյուղական վայրերի բժշկական հիմնարկները մասնագետների կադրերով կոմպլեկտավորելու համար: Բարձրացնել սովխոզների աշխատողների ու կոլտնտեսականների բժշկական սպասարկման և սանատորակուրորտային բուժման մակարդակն ու որակը:

Ծարունակել գյուղական դպրոցների ուսումնական բազայի ամրապնդման գործը: Տասնմեկերորդ հնգամյակում գյուղական վայրերում կառուցել 2,3 միլիոն աշակերտական տեղով հանրակրթական դպրոցներ, իսկ 12-րդ հնգամյակում՝ դրանից մոտավորապես 14,17 տոկոսով ավելի:

Ապահովել կոլտնտեսությունների ու սովխոզների տրանսպորտային հուսալի կապը շրջկենտրոնների հետ: Տասնամյակի ընթացքում գյուղական վայրերում կառուցել ընդհանուր օգտագործման մոտ 130 հազար կիլոմետր ավտոճանապարհ և 150 հազար կիլոմետր ներտնտեսային ճանապարհ:

Պլանաչափորեն ավելացնել գյուղական ավտոբուսային գծերի երկարությունը, այն հաշվով, որ մինչև 1990 թվականը կոլտնտեսությունների ու սովխոզների հիմնականում բոլոր կենտրոնական բնակատեղերը ավտոբուսային հաղորդակցություն ունենան շրջկենտրոնների հետ:

Կոլտնտեսականների և սովխոզների աշխատողների զբաղվածությունը ամբողջ տարին ապահովելու նպատակով այն տնտեսություններում, որտեղ դա նպատակահարմար է, զարգացնել օժանդակ արտադրություններ և արհեստագործությունը, ինչպես նաև արդյունաբերական ձեռնարկությունների հետ արտադրական կոոպերացումը:

## VII. ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ, ՍՈՎԽՈԶՆԵՐԻ, ԱԳՐՈԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԿՈՄՊԼԵՔՍԻ ՄՅՈՒՍ ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՈՒ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՈՒՄԸ

ՍՍՀՄ պարենային ծրագրով նշվում են գյուղատնտեսության և դրա հետ կապված ճյուղերի հետագա զարգացման խոշոր միջոցառումներ, դրա համար նախատեսվում են անհրաժեշտ ռեսուրսներ:

Գյուղատնտեսության մեջ և արդյունաբերության սննդի ճյուղերում հիմնական արտադրաֆոնդերը տասնամյակի ընթացքում կաճեն 1,5 անգամ: Կոլտնտեսություններում ու սովխոզներում էներգետիկ հզորությունները կաճեն ավելի քան 1,6 անգամ, իսկ գյուղին հանքային պարարտանյութերի մատակա-

բարումները՝ 1,7 անգամ: Կարևորագույն խնդիրն է վճռականորեն բարձրացնել գյուղատնտեսական արտադրության ագրոարդյունաբերական կոմպլեքսի բոլոր ճյուղերի արդյունավետությունը:

Այժմ ծանրության կենտրոնը, և դա 80-ական թվականների ագրարային քաղաքականության բնորոշ առանձնահատկությունն է, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVI համագումարում, փոխադրվում է կապիտալ ներդրումներից ստացվող փոխհատուցման, գյուղատնտեսության մթերատվության աճի վրա, ագրոարդյունաբերական կոմպլեքսի բոլոր ճյուղերի հետ գյուղատնտեսության կապերի խորացման ու կատարելագործման վրա: Տասնամյակի ընթացքում անհրաժեշտ է աշխատանքի արտադրողականությունը կոլտնտեսություններում ու սովխոզներում բարձրացնել մոտ 1,5 անգամ, իսկ հողահանդակների մեկ հեկտարից գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնել առնվազն մեկ երրորդով:

Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմները և մինիստրների խորհուրդները, ՍՍՀՄ մինիստրություններն ու գերատեսչությունները, տեղական կուսակցական, սովետական և տնտեսական մարմինները, կոլտնտեսություններն ու սովխոզները, ձեռնարկություններն ու կազմակերպությունները պետք է կտրուկ շրջադարձ ապահովեն դեպի տնտեսավարման ինտենսիվ մեթոդներ, դեպի հողի, արտադրական կարողությունների, աշխատանքային, նյութական ու ֆինանսական ռեսուրսների, առկա բոլոր ռեզերվների ու հնարավորությունների ավելի լավ օգտագործում սննդամթերքների արտադրությունն ավելացնելու համար: Հաստատակամ պայքար ծավալել աշխատանքի արդյունավետության բարձրացման, տնտեսման ու խնայողության համար, արտադրանքի ինքնարժեքի իջեցման, անտնտեսվարության ու վատնողության փաստերի վերացման համար:

Բարձրացնել տնտեսությունների կայուն շահութաբերության հասնելու գործում տնտհաշվարկային սկզբունքների՝ որպես ընդլայնված վերարտադրության հիմքի, դերը: Տնտեսությունների գործունեության պլանավորման և հաշվառման պրակտիկայում ավելի ակտիվ օգտագործել հողային, ջրային, նյութական ու աշխատանքային ռեսուրսների տնտեսագիտական գնահատումը:

Հատուկ ուշադրություն նվիրել ետ մնացող կոլտնտեսությունների ու սովխոզների տնտեսական գործունեության բարելավմանը, այն հաշվով, որ ամենամոտ ժամանակներս ապահովվեն արտադրության աճի կայուն և արագ տեմպեր: Վնասաբեր և ցածր շահութաբեր յուրաքանչյուր կոլտնտեսությունում ու սովխոզում կոնկրետ միջոցառումներ իրականացնել հողագործության և անասնապահության վարման մակարդակը բարձրացնելու, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասունների ու թռչունների մթերատվությունը ավելացնելու համար: Ամրապնդել այն տնտեսությունների նյութատեխնիկական բազան, որոնք հիմնական և շրջանառու բավարար ֆոնդեր չունեն:

Հոգալ աշխատուժով անբավարար ապահովված կոլտնտեսությունների ու սովխոզների մասին, նրանց անհրաժեշտ միջոցներ հատկացնելով բնակելի տներ և սոցիալ-կուլտուրական նշանակության այլ օբյեկտներ կառուցելու համար: Այդ տնտեսություններին առաջին հերթին մատակարարել բարձրարտադրողական տեխնիկա՝ արտադրական պրոցեսների մեքենայացման և ավտոմատացման մակարդակի բարձրացման նպատակով: Ետ մնացող տնտեսությունների ամրապնդումը, դրանց շահութաբերության բարձրացումը համարել գյուղատնտեսական արտադրության արդյունավետության աճի ապահովման ողջ աշխատանքի կարևորագույն օղակը:

Զգալիորեն կրճատել գյուղատնտեսական արտադրանքի մեկ միավորի վրա կատարվող նյութական միջոցների ծախսումը, ինչպես նաև այդ մթերքների բոլոր տեսակների կորուստները: Անասնակերի սպիտակուցի հաշվեկշռի բարելավման և կերի ռացիոնալ օգտագործման հաշվին մինչև 1990 թվականը, 1980 թվականի համեմատությամբ, անասնապահական մթերքների վրա մեկ միավորի հաշվով ծախսվող կերի քանակը իջեցնել առնվազն 5—7 տոկոսով: Միջոցառումներ իրականացնել պարարտանյութերի օգտագործման ռացիոնալ համակարգ արմատավորելու համար: Գյուղատնտեսության մեջ հանքային պարարտանյութերից և քիմիացման մյուս միջոցների կիրառումից ստացվող փոխհատուցումը ընթացիկ տասնամյակում բարձրացնել մոտ 12—15 տոկոսով: Մեքենայացված և տրանսպորտային աշխատանքներ կատարելիս վառելիքաքսանյութերի տնտեսում ապահովել առնվազն հինգ տոկոսի չափով: Մինչև 1990 թվականը տրակտորների, բերքահավաք մեքենաների և տրանսպորտային միջոցների օրական արտադրողականությունը բարձրացնել մոտ 20 տոկոսով:



Սննդարդյունաբերության ճյուղերում բարձրարտադրողական տեխնոլոգիական սարքավորումների արմատավորմամբ միջոցառումներ իրականացնել գյուղատնտեսական հումքի կոմպլեքսային վերամշակման և դրա կորուստների կրճատման համար:

Կոլտնտեսային ու սովխոզային արտադրության բոլոր տեղամասերն ամրապնդել լավ պատրաստված ղեկավարներով, մասնագետներով, մասսայական պրոֆեսիաների կադրերով, ապահովել նրանց որակավորման հետագա բարձրացումը և հուսունության կրճատումը: Հատուկ ուշադրություն նվիրել միջին օղակի աշխատողների անձնակազմի բարելավմանը, այն հաշվով, որ բաժանմունքները, արտադրամասերը, արտադրական տեղամասերը, բրիգադները ու ֆերմաները մոտակա տարիներս, որպես կանոն, գլխավորեն մասնագիտական կրթություն ունեցող մարդիկ: Կադրերին դաստիարակել գործարարության ու սկզբունքայնության ոգով, թերությունների նկատմամբ անհաշտ վերաբերմունքի ոգով, ըստ ամենայնի զարգացնել նրանց նախաձեռնությունն աշխատանքում:

Ավելի ակտիվ արմատավորել գիտատեխնիկական առաջընթացի նորագույն նվաճումները, աշխատանքի գիտական կազմակերպումը, հասնել աշխատողների նյութական ու բարոյական խթանման համակարգի արդյունավետության զգալի բարձրացման:

**Պլանավորման և կառավարման բնագավառում:** Անցում իրագործել դեպի ագրոարդյունաբերական կոմպլեքսի գործունեության պլանավորումը և բոլոր մակարդակներում այդ կոմպլեքսի կառավարմանը՝ որպես մի ամբողջության: Հասնել նրա բոլոր ճյուղերի համակշռված զարգացման ու սերտ փոխգործողության:

Պարզեցնել ագրոարդյունաբերական կոմպլեքսի կառավարման կազմակերպական կառուցվածքը, վերացնել ավելորդ և կրկնվող օղակները, զգալիորեն կրճատել կառավարչական ապարատի թվակազմը, բարձրացնել ագրոարդյունաբերական կոմպլեքսի յուրաքանչյուր օղակի պատասխանատվությունը արտադրության ծավալների մեծացման և պարենային ապրանքների ու արդյունաբերական հումքի որակի բարելավման համար, բնակչությանն սամեն տեսակ պարենամթերքի հուսալի և անխափան մատակարարում կազմակերպելու համար:

Ըստ ամենայնի զարգացնել կոլտնտեսությունների, սովխոզների, ագրոարդյունաբերական կոմպլեքսի մյուս բոլոր ձեռնարկությունների ու կազմակերպությունների տնտեսական նախաձեռնությունն ու սոցիալիստական ձեռներեցությունը, կոլեկտիվներին խրախուսել արտադրանքի արտադրության աճի և նյութական ռեսուրսների խնայողական օգտագործման համար: Նրանց աշխատանքը նպատակամղել ոչ թե միջանկյալ ցուցանիշներին, այլ վերջնական բարձր արդյունքին: Թույլ չտալ կոլտնտեսությունների ու սովխոզների նկատմամբ մանրախնդիր խնամակալություն:

Միջոցառումներ իրականացնել կապիտալ ներդրումների և հիմնական նյութական ռեսուրսների ծախսումների պլանավորման նորմատիվ մեթոդը գյուղատնտեսության մեջ արմատավորելու համար:

Կոլտնտեսությունների ու սովխոզների պլաններում կոնկրետ միջոցառումներ նախատեսել գյուղատնտեսական արտադրանքի արտադրության անհրաժեշտ շահութաբերություն ապահովելու նպատակով, նախ և առաջ արտադրանքի ինքնարժեքի իջեցման և աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին:

**Արտադրության նյութական խթանման բնագավառում:** Ձեռնարկությունների ու կազմակերպությունների կոլեկտիվների, ագրոարդյունաբերական կոմպլեքսի բոլոր օղակների ղեկավարների ու մասնագետների խթանման հիմնական ձևը պետք է դառնա խրախուսանքը աշխատանքի վերջնական բարձր արդյունքների համար:

Կոլտնտեսություններին ու սովխոզներին սպասարկող կազմակերպություններում ու ձեռնարկություններում ավելի լայնորեն կիրառել խրախուսանքը գյուղատնտեսական արտադրանքի արտադրության աճի համար: Ագրոարդյունաբերական միավորումների վերամշակող ձեռնարկություններում կոլտընտեսությունների, սովխոզների և մյուս գյուղատնտեսական ձեռնարկությունների ու կազմակերպությունների աշխատողների նյութական խթանման փոնդ ստեղծել նրանց կողմից արտադրանքի մատակարարումների ծավալը մեծացնելու և դրա որակը բարձրացնելու համար:

Բարձրացնել կոլտնտեսականների, սովխոզների աշխատողների աշխատանքը բնամթերքով, և ամենից առաջ հացահատիկով, պտուղբանջարեղենով և անասնակերով վարձատրելու չափերը:

Միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդներին, ՍՍՀՄ գյուղատնտեսության մինիստրությանը, ՍՍՀՄ պտուղբանջարեղենի տնտեսության մինիստրությանը, ՍՍՀՄ գյուղտեխպետկոմին, ՍՍՀՄ մթերումների մինիստրությանը, ՍՍՀՄ աշխատանքի ու սոցիալական հարցերի պետական կոմիտեին և ՀԱՄԿԽ-ին՝ մշակել և ագրոարդյունաբերական կոմպլեքսի ճյուղերում միջոցառումներ իրականացնել աշխատանքի կազմակերպման ու խթանման այնպիսի մեթոդների լայն կիրառման ուղղությամբ, որոնք ապահովեն աշխատողների աշխատավարձի չափերի սերտ կապը գյուղատնտեսական տարվա վերջնական արդյունքների հետ: Տարածել ըստ բրիգադային կապալի աշխատանքի, ինչպես նաև արտադրանքի համար ակորդային պարգևային վարձատրմամբ օղակների աշխատանքի փորձը: Ընդ որում միջոցառումներ իրականացնել ավելի բարձրացնելու մասսայական պրոֆեսիաների աշխատողների, տնտեսությունների ղեկավարների ու մասնագետների շահագրգռությունը գյուղատնտեսական արտադրության բարձր ցուցանիշների հասնելու նկատմամբ:

Անասնապահության մեջ զբաղված աշխատողների համար տասներկերորդ հնգամյակում աշխատանքի վարձատրության հավելում սահմանել տվյալ տընտեսությունում աշխատանքի անընդհատ ստաժի համար և նրանց տալ լրացուցիչ արձակուրդ:

## VIII. ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԻՄՆԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԸ ՍՍՀՄ ՊԱՐԵՆԱՅԻՆ ԾՐԱԳՐԻ ԻՐԱԳՈՐԾՄԱՆ ԱՍՊԱՐԵԶՈՒՄ

ՍՍՀՄ պարենային ծրագրի իրագործման ասպարեզում պետք է առավելագույն ավանդ ներդնի յուրաքանչյուր միութենական հանրապետություն: Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմները ու մինիստրների խորհուրդները պարտավոր են ապահովել գյուղատնտեսական մթերքների արտադրության ու գնումների, ընդհանուր միութենական փոնդին դրանց մատակարարումների պլանների անվերապահ կատարումը:

Անհրաժեշտ է առկա հնարավորությունները ու ռեզերվները համակողմանիորեն օգտագործել գյուղատնտեսական արտադրության, սննդարդյունաբերության և ագրոարդյունաբերական կոմպլեքսի մյուս ճյուղերի արդյունավետությունը բարձրացնելու համար, առավելագույն փոխհատուցում ստանալ արտադրատեխնիկական պոտենցիալից:



Հանրապետությունների, երկրամասերի ու մարզերի կուսակցական և սովետական մարմինները լիակատար պատասխանատվություն են կրում բնակչությանը հուսալիորեն պարենամթերք մատակարարելու համար, և ամենից առաջ տեղերում այդ մթերքների արտադրությունն ավելացնելու հաշվին:

Մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի համար ՍՍՀՄ պարենային ծրագրի իրագործման ուղղությամբ սահմանել միութենական հանրապետությունների հետևյալ հիմնական խնդիրները:

**Ռուսաստանի Սովետական Ֆեդերատիվ Սոցիալիստական Հանրապետությունում** ապահովել տասնմեկերորդ հնգամյակում հացահատիկի միջին տարեկան արտադրությունը 134—136 միլիոն տոննայի չափով և տասներկուերորդ հնգամյակում՝ 140—142 միլիոն տոննայի չափով, 1990 թվականին տասներորդ հնգամյակի միջին տարեկան արտադրության համեմատությամբ շաքարի ճակնդեղի համախառն բերքը ավելացնել 1,3 անգամ, արևածաղկի սերմինը՝ 1,5 անգամ, կարտոֆիլինը՝ 1,2 անգամ, բանջարանոցային ու բոստանային կուլտուրաներինը՝ 1,4 անգամ, պտուղներինն ու հատապտուղներինը՝ 1,4 անգամ և խաղողինը՝ 2,6 անգամ: 1990 թվականին կանեփակի սերմի արտադրությունը հասցնել մոտ 1 միլիոն տոննայի:

Տասնամյակի ընթացքում անասնակերի բոլոր տեսակների արտադրությունն ավելացնել 1,3—1,4 անգամ:

Բարձրացնել կաթնատու և մսատու անասնապահության ինտենսիվացման մակարդակը: Տասնամյակի ընթացքում կովերի միջին կաթնատվությունը բարձրացնել 600—700 կիլոգրամով:

Ապահովել մսի միջին տարեկան արտադրությունը (սպանդային քաշով) տասնմեկերորդ հնգամյակում՝ 8,4—8,7 միլիոն տոննայի և տասներկուերորդ հնգամյակում՝ 9,8—10 միլիոն տոննայի չափով, կաթինը՝ համապատասխանաբար 50—52 միլիոն տոննայի և 53—54 միլիոն տոննայի չափով:

ՌՍՖՍՀ ոչ սևահողային գոտում շարունակել հողերի մելիորատիվ բարելավման աշխատանքները, միջոցառումների կոմպլեքս իրականացնել երկրագործության ու անասնապահական մթերքների արտադրության արագ աճի ուղղությամբ:

Սիբիրի ու Հեռավոր Արևելքի շրջաններում ապահովել գյուղատնտեսության բոլոր ճյուղերի արդյունավետության բարձրացումը, նպատակ ունենալով այդ շրջանների բնակչության պարենային հուսալի մատակարարումը, հիմնականում տեղական արտադրության հաշվին:

Կենտրոնական սևահողային շրջանում և Հյուսիսային Կովկասում միջոցառումներ իրականացնել երկրագործության, անասնապահության և այգեգործության հետագա ինտենսիվացման ուղղությամբ:

Պովոլժիեում հողերի ոռոգումը զարգացնելու հիման վրա զգալիորեն ավելացնել հացահատիկի, անասնակերի, բանջարեղենի, բոստանային կուլտուրաների և անասնապահական մթերքների արտադրությունը:

Տասնամյակի ընթացքում շրջանառության մեջ դնել 3,3 միլիոն հեկտար ոռոգելի հողատարածություն, ցամաքեցնել 3,7 միլիոն հեկտար գերխոնավ հողեր:

Ավարտել Սարատովի մարզի Կոմսոմոլսկայա և Պրիվոլժսկայա, Վոլգոգրադի մարզի Գորոդիշչենսկայա ոռոգման սիստեմների, ինչպես նաև Կրասնոդարի սիստեմի շինարարությունը: Ծավալել Ստավրոպոլի մեծ ջրանցքի շինարարությունը, ընդարձակել ոռոգելի հողատարածությունը այդ ջրանցքի գոտում, ինչպես նաև Կույբիշևի մարզի Սպասսկի զանգվածում: Գործարկել Կալմիկական ԻՍՍՀ-ի Հյուսիսային, Կրասնոդարի երկրամասի Օտրադնայայի, Սարատովի մարզի Վարֆոլոմեևսկի և Ալթայի երկրամասի Չառիշսկոյեի խմբային ջրատարների գործարկումը: Արագացնել Կոլխիդայի տափաստանի և Բարաբինսկի ցածրավայրի հողերի մելիորացումը: Աշխատանքներ կատարել Կարասուկ գետի ջուրը Օբ գետի ջրերի հոսքի հաշվին ավելացնելու համար:

Տասնամյակի ընթացքում ավելացնել ճակնդեղից շաքարավազի արտադրությունը՝ 1,9—2 անգամ, պետական ռեսուրսների հումքից պտուղբանջարեղենի պահածոների պատրաստումը՝ 1,5—1,6 անգամ, ձեթինը՝ առնվազն

2,5 անգամ, մսինը՝ 1,3 անգամ, պանրինը՝ 1,5—1,6 անգամ, ինչպես նաև կարտոֆիլամթերքներինը հասցնել մինչև 100—110 հազար տոննայի:

**Ուկրաինական ՍՍՀ-ում** հացահատիկի միջին տարեկան արտադրությունն ապահովել 51—52 միլիոն տոննա, տասներկուերորդ հնգամյակում՝ 53—54 միլիոն տոննա, շաքարի ճակնդեղինը՝ համապատասխանաբար մինչև 57 միլիոն տոննա և 60 միլիոն տոննա քանակությամբ: Տասնամյակի ընթացքում արևածաղկի, պտուղների և հատապտուղների համախառն բերքն ավելացնել առնվազն 1,4 անգամ, խաղողինը՝ 1,8 անգամ: Հասնել կարտոֆիլի և բանջարեղենի արտադրության հետագա աճի: 1990 թվականին կանճրակի արտադրությունը հասցնել 210—230 հազար տոննայի:

Միջոցառումներ իրականացնել ձավարացու կուլտուրաների, կարծր և ուժեղ սորտերի ցորենի, լոբու արտադրության և գնումների կայուն աճն ապահովելու համար: Ստեղծել հացահատիկացու եգիպտացորենի երաշխավորված արտադրության գոտիներ այն շրջաններում, որոնք նպաստավոր են այդ կուլտուրայի մշակության համար:

Տասնամյակի ընթացքում կերի բոլոր տեսակների արտադրությունն ավելացնել 1,3—1,4 անգամ:

Մինչև 1990 թվականը միջին հաշվով մեկ կովի կաթնատվությունը կոլտնտեսություններում ու սովխոզներում բարձրացնել 600—700 կիլոգրամով:

Տասնմեկերորդ հնգամյակում ապահովել մսի միջին տարեկան արտադրությունը (սպանդային քաշով) 3,9—4,1 միլիոն տոննա, տասներկուերորդ հնգամյակում՝ 4,6—4,7 միլիոն տոննա, կաթինը՝ համապատասխանաբար 22,5—23 միլիոն տոննա և 24—24,4 միլիոն տոննա քանակությամբ:

Տասնամյակի ընթացքում շահագործման հանձնել առնվազն 1 միլիոն հեկտար ոռոգովի հողեր և չորացնել 1,3 միլիոն հեկտար գերխոնավ հողեր: Ավարտել Դանուբ—Դնեստրյան և Կախովկայի ոռոգման սիստեմների, Դնեպր—Դոնբաս ջրանցքի երկրորդ հերթի շինարարությունը, սկսել Հյուսիսային Ղրիմի ջրանցքի երրորդ հերթը, Մերձազովյան ոռոգման սիստեմի առաջին հերթի և Սերոգոզսկի մագիստրալային ջրանցքի կառուցումը: Ծավալել Դնեպր—Բուգի հիդրոհանգույցի շինարարությունը:

Արագ տեմպերով զարգացնել արդյունաբերության սննդի ճյուղերը: Տասնամյակի ընթացքում ճակնդեղից շաքարավազի արտադրությունն ավելացնել 1,7 անգամ, պետական ռեսուրսների հումքից ձեթի ստացումը՝ 1,4 անգամ, մրգի-բանջարեղենի պահածոներինը՝ 1,5 անգամ, մսինը՝ 1,7 անգամ, կենդանական յուղինը՝ 1,4 անգամ, պանրինը՝ 1,8 անգամ, ինչպես նաև կարտոֆիլամթերքներինը հասցնել մինչև 35—38 հազար տոննայի:

**Բելոռուսական ՍՍՀ-ում** տասնմեկերորդ հնգամյակում ապահովել հացահատիկի միջին տարեկան արտադրությունը 7,8—8,1 միլիոն տոննա, տասներկուերորդ հնգամյակում՝ 8,2—8,6 միլիոն տոննա քանակությամբ: Տասնամյակի ընթացքում բանջարեղենի համախառն բերքը ավելացնել մոտ 1,2 անգամ, պտուղներինը և հատապտուղներինը՝ 1,4 անգամ և կերի բոլոր տեսակների արտադրությունը՝ 1,3—1,4 անգամ:

Տասնմեկերորդ հնգամյակում ապահովել մսի միջին տարեկան արտադրությունը (սպանդային քաշով) 1 միլիոն տոննա, տասներկուերորդ հնգամյակում՝ 1,1—1,2 միլիոն տոննա, կաթինը՝ համապատասխանաբար 6,5—6,7 միլիոն տոննա և 6,9—7 միլիոն տոննա քանակությամբ: Տասնամյակի ընթացքում մեկ կովի միջին կաթնատվությունը ավելացնել 600—700 կիլոգրամով:

Տասնամյակի ընթացքում շահագործման հանձնել 110 հազար հեկտար ոռոգելի հողեր և չորացնել գերխոնավ ու ճահճացած հողեր 950—970 հազար հեկտար տարածության վրա: Ավարտել գյուղատնտեսական հանդակների հակահեղեղային պաշտպանության առաջնահերթ օբյեկտների շինարարությունը Պոլեսիեի ցածրավայրում:

Ծարունակել կարողությունների ավելացումը արդյունաբերության մսեղենի, կաթնեղենի և սննդի մյուս ճյուղերում: Տասնամյակի ընթացքում պետական ռեսուրսների հումքից մսի արտադրությունն ավելացնել 1,6 անգամ, պանրինը՝



1,7 անգամ, ինչպես նաև կարտոֆիլամթերքներինը հասցնել մինչև 35—38 հազար տոննայի:

**Ուզբեկական ՍՍՀ-ում** ավելի արդյունավետ օգտագործել ստեղծված մելիորատիվ կոմպլեքսը: Բամբակագործության զարգացման հետ մեկտեղ առավել արագ տեմպերով ավելացնել անասնապահական մթերքների, բանջարեղենի և բոստանային կուլտուրաների արտադրությունը: Տասնմեկերորդ հնգամյակում ապահովել հացահատիկի միջին տարեկան արտադրությունը 2,8—3 միլիոն տոննա, տասներկուերորդ հնգամյակում՝ 3,3—3,5 միլիոն տոննա քանակությամբ: Ընդլայնել ջրովի եգիպտացորենի արտադրությունը: Տասնմեկերորդ հնգամյակում բանջարեղենի և բոստանային կուլտուրաների միջին տարեկան համախառն բերքը հասցնել 3,6 միլիոն տոննայի, տասներկուերորդ հնգամյակում՝ 4,3—4,4 միլիոն տոննայի:

Տասնամյակի ընթացքում ապահովել պտուղների և հատապտուղների արտադրության աճ մոտավորապես 1,8 անգամ և խաղողինը՝ 3 անգամ: Հատուկ ուշադրություն դարձնել սեղանի և քիշմիշի խաղողի սորտերի, ինչպես նաև կիտրոնի արտադրության և առևտրի ցանցին դրանց մատակարարման ավելացմանը:

Հասնել կերի բոլոր տեսակների արտադրության աճին 1,8—2 անգամ: Առավել զարգացնել կերարտադրությունը ոռոգելի հողերում, ինչպես նաև ռացիոնալ օգտագործել լեռնային, անապատային և կիսաանապատային արոտավայրերը:

Տասնմեկերորդ հնգամյակում ապահովել մսի տարեկան միջին արտադրությունը (սպանդային քաշով) 400—410 հազար տոննա, տասներկուերորդ հնգամյակում՝ 540—560 հազար տոննա, կաթինը՝ համապատասխանաբար 2,6 միլիոն տոննա և 3,5 միլիոն տոննա քանակությամբ:

Իրականացնել Կարշիի և Ջիզակի տափաստանների հողերի կոմպլեքսային յուրացումը: Տասնամյակի ընթացքում շահագործման հանձնել առնվազն 900 հազար հեկտար ոռոգելի հողեր և ջրարբիացնել 2,6 միլիոն հեկտար արոտավայրեր:

Արագ տեմպերով զարգացնել արդյունաբերության սննդի ճյուղերը, հատկապես անարատ կաթնամթերքի, ձեթի, պտուղբանջարեղենի պահածոների, մրգի և խաղողի հյութերի արտադրությունը:

Տասնամյակի ընթացքում պետական ռեսուրսների հումքից անարատ կաթնամթերքի արտադրությունն ավելացնել 1,8 անգամ, ձեթինը՝ 1,3 անգամ, պտուղբանջարեղենի պահածոներինը՝ 1,7 անգամ:

**Ղազախական ՍՍՀ-ում** տասնմեկերորդ հնգամյակում ապահովել հացահատիկի միջին տարեկան համախառն բերքը 28—29 միլիոն տոննա, տասներկուերորդ հնգամյակում՝ 30,5—31,5 միլիոն տոննա քանակությամբ: Հասնել ցորենի կարծր և ուժեղ սորտերի, եգիպտացորենի, ձավարացու և հատիկալոբազգի կուլտուրաների, ձիթատու կուլտուրաների արտադրության կայուն աճի: 1985 թվականին ապահովել բանջարեղենի ու բոստանային կուլտուրաների համախառն բերքը 1,7 միլիոն տոննա և 1990 թվականին մոտ 2 միլիոն տոննա քանակությամբ: Իսկ կանճրակի բերքը 1990 թվականին հասցնել 210—230 հազար տոննայի: Ավելացնել պտուղների և սեղանի խաղողի սորտերի արտադրությունը:

Կերի բոլոր տեսակների արտադրությունն ավելացնել 1,5—1,6 անգամ:

Տասնմեկերորդ հնգամյակում ապահովել մսի միջին տարեկան արտադրությունը (սպանդային քաշով) 1,2—1,3 միլիոն տոննա, տասներկուերորդ հնգամյակում՝ առնվազն 1,4 միլիոն տոննա, կաթինը՝ համապատասխանաբար 4,9—5 միլիոն տոննա և 5,3—5,4 միլիոն տոննա քանակությամբ: Հասնել կաթնատու և մսատու անասնապահության մթերատվության զգալի բարձրացման: Զարգացնել ոչխարաբուծությունը, հատկապես նրբագեղմ ոչխարաբուծությունը:

Տասնամյակի ընթացքում շահագործման հանձնել 820 հազար հեկտար ոռոգելի հողեր և անապատային ու կիսաանապատային շրջաններում ջրարբիացնել առնվազն 22 միլիոն հեկտար արոտավայրեր:

քում հասնել կերի բոլոր տեսակների արտադրության աճի՝ 1,3—1,4 անգամ:
Գերխոնավ հողերի մելիորացման աշխատանքներ կատարել 520 հազար հեկտար տարածության վրա:

Մինչև 1990 թվականը պետական ռեսուրսների հումքից մսի արտադրությունն ավելացնել առնվազն 1,4 անգամ, պանրինը՝ 1,6 անգամ:

**Կիրգիզական ՍՍՀ-ում** տասնմեկերորդ հնգամյակում ապահովել մսի միջին տարեկան արտադրությունը (սպանդային քաշով) 170 հազար տոննա, տասներկուերորդ հնգամյակում՝ 200—210 հազար տոննա, կաթինը՝ համապատասխանաբար 700 հազար տոննա և 770—800 հազար տոննա քանակությամբ:

Կերի բոլոր տեսակների արտադրությունն ավելացնել 1,5—1,6 անգամ: Մինչև 1990 թվականը հասնել բանջարեղենի ու բոստանային կուլտուրաների արտադրության աճին 1,6 անգամ, պտուղներինն ու հատապտուղներինը՝ 1,5 անգամ, խաղողինը՝ 1,8 անգամ:

Ընդլայնել առանց սածիլացման շաքարի ճակնդեղի սերմացուի, ինչպես նաև առվույտի սերմացուի արտադրությունը՝ դրանք ընդհանուր միութենական ֆոնդին մատակարարելու համար:

Տասնամյակի ընթացքում շահագործման հանձնել առնվազն 150 հազար հեկտար ոռոգելի հողեր և ջրարբիացնել 750 հազար հեկտար արոտավայրեր: Տասնմեկերորդ հնգամյակում ավարտել Պապանի ջրամբարի շինարարությունը: Գիտահետազոտական և նախագծահետախուզական աշխատանքներ անցկացնել Իսիկ Կուլի մարզում և Չուի հովտի շրջաններում՝ հողային ու ջրային ռեսուրսների կոմպլեքսային օգտագործման համար:

Տասնամյակի ընթացքում պետական ռեսուրսների հումքից մսի արտադրությունն ավելացնել 1,5 անգամ, անարատ կաթնամթերքինը՝ 1,4 անգամ:

**Տաջիկական ՍՍՀ-ում** բամբակի, հատկապես նրբաթել սորտերի, արտադրության մեծացման հետ միաժամանակ միջոցառումներ իրականացնել անասնապահական մթերքների արտադրության հետագա ավելացման ուղղությամբ:

Տասնմեկերորդ հնգամյակում ապահովել մսի միջին տարեկան արտադրությունը (սպանդային քաշով) 110 հազար տոննա, տասներկուերորդ հնգամյակում՝ 130—140 հազար տոննա, կաթինը՝ համապատասխանաբար 520 հազար տոննա և 580—600 հազար տոննա, հացահատիկինը՝ 315 հազար տոննա և 320—340 հազար տոննա քանակությամբ: Տասնամյակի ընթացքում բանջարեղենի, բոստանային կուլտուրաների և խաղողի արտադրությունն ավելացնել առնվազն 2 անգամ, պտուղներինն ու հատապտուղներինը՝ 1,4 անգամ և կերի բոլոր տեսակներինը՝ 1,5—1,6 անգամ: Հասնել ցիտրուսների, հատկապես կիտրոնի արտադրության աճին:

Տասնամյակի ընթացքում ապահովել հողերի ոռոգումը 100—110 հազար հեկտար տարածության վրա: Ծարունակել հողերի յուրացումը Դանգարայի տափաստանում:

Արագ տեմպերով զարգացնել գյուղատնտեսական մթերքները վերամշակող ճյուղերը: Տասնամյակի ընթացքում առնվազն 1,7 անգամ ավելացնել պտուղբանջարեղենի պահածոների արտադրությունը:

**Հայկական ՍՍՀ-ում** տասնմեկերորդ հնգամյակում ապահովել խաղողի միջին տարեկան արտադրությունը 240—260 հազար տոննա, տասներկուերորդ հնգամյակում՝ 310—330 հազար տոննա, հացահատիկինը՝ համապատասխանաբար 310 հազար տոննա և 320—340 հազար տոննա քանակությամբ:

Տասնամյակի ընթացքում բանջարեղենի և բոստանային կուլտուրաների արտադրությունն ավելացնել 1,2 անգամ, պտուղներինը և հատապտուղներինը՝ 1,7 անգամ, կերի բոլոր տեսակներինը՝ 1,4 անգամ:

Տասնմեկերորդ հնգամյակում մսի միջին տարեկան արտադրությունը (սպանդային քաշով) հասցնել 95 հազար տոննայի, տասներկուերորդ հնգամյակում՝ 120—122 հազար տոննայի, կաթինը՝ համապատասխանաբար 520 հազար տոննայի և 570—590 հազար տոննայի: Հատուկ ուշադրություն նվիրել անասունների և թռչնի մթերատվության բարձրացմանը:

Տասնամյակի ընթացքում շահագործման հանձնել առնվազն 60 հազար



հեկտար ոռոգելի հողեր և ջրարբիացնել 120 հազար հեկտար արոտավայրեր:

Մեծացնել արդյունաբերության սննդի ճյուղերի կարողությունները: Տասնամյակի ընթացքում 1,4 անգամ ավելացնել պտուղբանջարեղենի պահածոների պատրաստումը:

**Թուրքմենական ՍՍՀ-ում** հետևողականորեն ավելացնել բամբակի, հատկապես նրբաթել սորտերի բերքը, զգալիորեն մեծացնել բոստանային կուլտուրաների, քիշմիշի, սեղանի խաղողի և կիտրոնի արտադրությունն ու մատակարարումը երկրի արդյունաբերական կենտրոններին:

Տասնմեկերորդ հնգամյակում ապահովել բանջարեղենի և բոստանային կուլտուրաների միջին տարեկան արտադրությունը 555 հազար տոննա, տասներկուերորդ հնգամյակում՝ 790—850 հազար տոննա, խաղողինը՝ համապատասխանաբար 100—110 հազար տոննա և առնվազն 270 հազար տոննա, հացահատիկինը՝ 380 հազար տոննա և 450—480 հազար տոննա քանակությամբ:

Միջոցառումներ իրականացնել բնական կերահանդակների ավելի արդյունավետ օգտագործման, կերի կուլտուրաների բերքատվության բարձրացման համար: Կերի բոլոր տեսակների արտադրությունը տասնամյակի ընթացքում ավելացնել 1,5—1,6 անգամ:

Տասնմեկերորդ հնգամյակում ապահովել մսի միջին տարեկան արտադրությունը (սպանդային քաշով) 90 հազար տոննա, տասներկուերորդ հնգամյակում՝ 110—111 հազար տոննա, կաթինը՝ համապատասխանաբար 325 հազար տոննա և 360—370 հազար տոննա քանակությամբ:

Ավարտել Կարակումի ջրանցքի շինարարությունը: Տասնամյակի ընթացքում շահագործման հանձնել 180—190 հազար հեկտար ոռոգելի հողեր և ջրարբիացնել 8,4 միլիոն հեկտար արոտավայրեր:

Տասնամյակի ընթացքում պտուղբանջարեղենի պահածոների արտադրությունն ավելացնել 1,9 անգամ, ձեթինը՝ 2,7 անգամ:

**Էստոնական ՍՍՀ-ում**, օգտագործելով կաթնատու անասնապահության ստեղծված պոտենցիալը և բեկոնային կոնդիցիաների խոզերի բուծման փորձը, տասնմեկերորդ հնգամյակում ապահովել մսի միջին տարեկան արտադրությունը (սպանդային քաշով)՝ 210—215 հազար տոննա, տասներկուերորդ հնգամյակում՝ 235—240 հազար տոննա, կաթինը՝ համապատասխանաբար 1,2—1,3 միլիոն տոննա և 1,3—1,4 միլիոն տոննա, հացահատիկինը՝ 1.400—1.450 հազար տոննա և 1.500—1.600 հազար տոննա քանակությամբ: Տասնամյակի ընթացքում կարտոֆիլի համախառն բերքն ավելացնել 1,2 անգամ, իսկ կերի արտադրությունը՝ 1,4 անգամ:

Չորացնել գերխոնավ հողեր 170 հազար հեկտար տարածության վրա: Տասնամյակի ընթացքում պետական ռեսուրսների հումքից մսի արտադրությունն ավելացնել 1,3 անգամ, պանրինը՝ 1,9 անգամ:

# IX. ԱՐՏԱՔԻՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿԱՊԵՐԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐԻ ՀԵՏ

Երկարաժամկետ նպատակային ծրագրերի հիման վրա խորացնել ՏՓԽ-ի անդամ երկրների հետ համագործակցությունը գյուղատնտեսական արտադրության, հումքի վերամշակման ու ռացիոնալ օգտագործման բնագավառում:

Հետևողականորեն զարգացնել կոոպերացումն ու մասնագիտացումը հանքային պարարտանյութերի, բույսերի պաշտպանության միջոցների, կերախառնուրդների, ինչպես նաև գյուղատնտեսական արտադրության կոմպլեքսային մեքենայացման համար և հատկապես կերի կուտակման ու նախապատրաստման, մրգատու և խաղողի այգիներում կատարվող աշխատանքների,

բանջարեղենի բերքահավաքի մեքենայացման համար անհրաժեշտ մեքենաների ու սարքավորումների, ներառյալ փոքրածավալ տեխնիկայի արտադրության ընդլայնում։

Զարգացնել գիտատեխնիկական համագործակցությունը գյուղատնտեսական կուլտուրաների նոր, բարձրբերքատու սորտեր ու հիբրիդներ բուծելու և ներդնելու, սերմացու և տնկանյութ ստանալու, անասունների և թռչնի նոր գծեր ու ցեղատեսակներ ստեղծելու, բույսերի և կենդանիների գենոֆոնդերն օգտագործելու ընդլայնում։

Ընդլայնել համագործակցությունը արդյունաբերության սննդի ճյուղերի, սառնարանային ու պահեստային տնտեսության ձեռնարկությունների արդիականացման և վերակառուցման ընդլայնում։ Ավելի լայնորեն օգտագործել առաջավոր տեխնոլոգիաներով հողագործական ու անասնապահական մթերքների արտադրության՝ ՏՓԽ-ի անդամ երկրների ունեցած փորձը։

Ըստ ամենայնի խորացնել ՏՓԽ-ի անդամ երկրների սոցիալիստական տնտեսական ինտեգրացումը, լրացուցիչ հնարավորություններ գտնել ավելացնելու պարենի բոլոր տեսակների արտադրությունը՝ հօգուտ սովետական ժողովրդի և սոցիալիզմի եղբայրական երկրների ժողովուրդների բարեկեցության հետագա բարձրացման։

ՍՍՀՄ պարենային ծրագիրը համապատասխանում է սովետական մարդկանց արմատական կենսական շահերին։ Դրա կատարումը կապահովի աշխատավորների բարեկեցության հետագա աճը, սովետական հասարակության վերընթացը կոմունիզմի ուղիով։

Երկիրը անհրաժեշտ ամեն ինչ ունի պարենի պրոբլեմը արմատապես լուծելու համար։ Այդ նպատակով հույժ կարևոր է հմտորեն օգտագործել սոցիալիստական պլանային էկոնոմիկայի հիմքում ընկած հսկայական հնարավորությունները, նախ և առաջ գյուղատնտեսության մեջ և ագրոարդյունաբերական կոմպլեքսի մյուս ճյուղերում ստեղծված արտադրական պոտենցիալը։

Կուսակցական, սովետական ու տնտեսական մարմինների, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների կարևորագույն խնդիրն է աշխատավորական բոլոր կոլեկտիվների ջանքերը մոբիլիզացնել սննդամթերքների արտադրությունն զգալիորեն ավելացնելու խնդրի հաջող լուծման համար։

Անհրաժեշտ է, որ միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմները և մինիստրների խորհուրդները, ՍՍՀՄ մինիստրություններն ու գերատեսչությունները մշակեն պարենամթերքի բոլոր տեսակների արտադրությունն ավելացնելու կոնկրետ միջոցառումներ, ուժեղացնեն կազմակերպչական աշխատանքն այդ ուղղությամբ, ծավալեն աշխատավորների սոցիալիստական լայն մրցություն՝ հանուն ՍՍՀՄ պարենային ծրագրով նախատեսված առաջադրանքների կատարման ու գերակատարման, համակողմանի, արդյունավետ վերահսկողություն սահմանեն դրա իրականացման ընթացքի նկատմամբ։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն վստահություն է հայտնել, որ սովետական մարդիկ պարենային ծրագիրը կընդունեն իբրև իրենց հարազատ, կենսական գործը, բոլոր ուժերը կգործադրեն, որպեսզի սեղմ ժամկետներում զգալիորեն ավելացնեն պարենամթերքի արտադրությունը։

---

# ԺՈՂՈՎՐԴԻ ՇԱՀԵՐԻ ՆԿԱՏՄԱՄԲ ՀՈԳԱՏԱՐՈՒԹՅՈՒՆԸ ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅԱՆ ՊԱՏՎԻ ԳՈՐԾՆ Է

## ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԸ

## ՀամԼԿԵՄ XIX համագումարում 1982 թվականի մայիսի 18-ին

Թանկագին ընկեր պատգամավորնե՛ր։ Համաժողովի հարգելի հյուրե՛ր։

Լենինյան կոմերիտմիության XIX համագումարի բացման հանդիսավոր ժամին ես Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի անունից, երկրի բոլոր կոմունիստների կողմից ձեզ հաղորդում եմ ջերմագին ողջույն և ցանկանում եմ գործարար, բեղմնավոր աշխատանք։ **(Երկարատև ծափահարություններ)**։ Մենք ձեզ, թանկագին բարեկամնե՛ր, և հանձինս ձեր՝ բոլոր կոմերիտականներին, սովետական բոլոր պատանիներին ու աղջիկներին մաղթում ենք մեծ հաջողություններ կյանքում և աշխատանքում, անձնական մեծ երջանկություն։ **(Ծափահարություններ)**։

Այս տարի սովետական ժողովուրդը հանդիսավորությամբ կնշի մեծ Հոկտեմբերի 65-ամյակը և ՍՍՀ Միության կազմավորման 60 տարին։ Դրանք փառահեղ, թեև երբեմն էլ շատ դժվարին տասնամյակներ են եղել։ Մենք անցել ենք փորձությունների ու զրկանքների միջով, սովորել ենք ուռքի վրա, հաղթահարելով սխալներն ու վրիպումները, հասել հաջողությունների, որոնք զարմացրել են աշխարհը։ Մեր ժողովուրդը 20 միլիոն կյանք տվեց ֆաշիստական ագրեսորի դեմ մղված ճակատամարտում, որպեսզի պաշտպանեն կառուցվածը և իր իդեալները պահպանելու իրավունքը։

Եվ այդ բոլոր տարիներին առաջավոր գծում է եղել լենինյան կուսակցության կողմից ղեկավարվող ու ոգեշնչվող երիտասարդությունը։ Այդ նրանք՝ ձեր նախորդները, քաղաքացիական պատերազմի լեգենդար մարտիկներն ու առաջին հնգամյակների հարվածայինները, մեծ Հայրենականի և հետպատերազմյան վերածննդի հերոսները, վերջին տասնամյակների վիթխարի կառույցների մասնակիցներն են ստեղծել այն ամենը, ինչ որ այսօր մենք ունենք։ **(Ծափահարություններ)**։ Նրանք ձեր ձեռքն են հանձնում անգնահատելի հարստությունը՝ հաղթանակած սոցիալիզմի՝ աշխարհում առաջին պետությունը, կոմունիզմ կառուցող հասարակությունը։ Այդ ժառանգության մեջ, ընկերնե՛ր, ամեն ինչ կա, որպեսզի ձեզ հղված մեր ցանկություններն իրականություն դառնան։ Այդ պետք է անեք դուք ինքներդ, 80-ական թվականների երիտասարդներդ,— ձեր աշխատանքը, ձեր հմտությունը, ձեր խանդավառությունը։ Եվ

Վերջապես, երիտասարդ տարիքից պետք է սովորել լինել կուլտուրական, կազմակերպված մարդ, որը կարողանում է գնահատել իր և ուրիշի ժամանակը, հարգել մեծերին,— մի խոսքով, դառնալ դաստիարակված, բարի, օրինակելի մարդ, զարգացած սոցիալիստական հասարակության իսկական քաղաքացի: **(Երկարատև ծափահարություններ):**

Կոմերիտմիությունը հենց նրա համար է, որ երիտասարդությանը պատվաստի այդ հատկությունները: Եվ դա կոչված են անելու նախ և առաջ կոմերիտական աշխատողները: Ժամանակը ամենաբարձր պահանջներն է ներկայացնում նրանց: Կոմերիտական աշխատող չեն ծնվում: Նրանց առաջ են քաշում երիտասարդական կոլեկտիվի վստահությունը և կուսակցության վստահությունը: Դա կրկնակի է պարտավորեցնում: **(Ծափահարություններ):** Լենինը նախազգուշացրել է, որ հարկավոր է «ըստ կարելվույն ավելի զգուշությամբ ու համբերությամբ փորձել և ճանաչել իսկական կազմակերպիչներին, սթափ խելք և գործնական ըմբռնողություն ունեցող մարդկանց, այնպիսի մարդկանց, որոնք սոցիալիզմին նվիրված լինելը միացնում են սովետական կազմակերպության շրջանակներում մեծ թվով մարդկանց ամրակուռ և համերաշխ-համատեղ աշխատանքն առանց աղմուկի (և հակառակ իրարանցման ու աղմուկի) կարգավորելու հետ: **Միայն** այդպիսի մարդկանց, տասնապատիկ փորձելուց հետո, պետք է, նրանց՝ ամենահասարակ խնդիրներից դեպի դժվարագույնները շարժելով, առաջ քաշել... կառավարման ղեկավարների պատասխանատու պոստերի...»:

Դա, ընկերնե՛ր, այսօր ևս ամենաիմաստուն խորհուրդը, ամենահուսալի կողմնորոշիչն է կադրերի հետ, այդ թվում նաև կոմերիտմիության կադրերի հետ կատարվող աշխատանքում: Հետևեցեք դրան, և հաջողությունն ապահովված կլինի: **(Ծափահարություններ):**

Ընկերնե՛ր, վաղը լրանում է Վլադիմիր Իլյիչ Լենինի անվան համամիութենական պիոներական կազմակերպության 60 տարին: Դա սովետական մանուկների և նրանց անփոփոխ ջոկատավարի՝ կոմերիտմիության սքանչելի տոնն է: Եկեք մեր պանծալի պիոներիային մաղթենք, որ նա այսուհետ ևս միշտ պատրաստ լինի կոմունիստական կուսակցության գործի պայքարին: **(Բուռն, երկարատև ծափահարություններ):**

Թանկագի՛ն բարեկամներ: Դուք ներկայացուցիչներն եք մեր մեծ ժողովրդի այն մասի, որը պետք է ձևավորի երկրի վաղվա օրը: Եվ ձեզ համար, ավելի քան որևէ մեկի համար, միևնույնը չէ, թե ինչպիսին կլինի այն՝ վաղվա այդ օրը: Ո՛չ միայն սովետական մարդկանց համար, այլև ողջ մարդկության համար: Ի՞նչ է սպասում ժողովուրդներին. խաղաղ, ստեղծարար աշխատա՞նք, կյանքի ավելի երջանիկ և արժանավայել պայմաններ ապահովելու ոչ դյուրին, բայց ազնիվ աշխատա՞նք, թե՞ միջուկային ոչնչացման խելահեղություն ու մղձավանջ:

Մեր օրերում իմպերիալիզմի առավել ագրեսիվ ուժերի քաղաքականությունն ստիպում է հարցը հենց այդպես դնել: Եվ դրա պատասխանը պայմանավորված է նրանով, թե որքան ակտիվ ու հետևողական կլինի խաղաղասեր երկրների քաղաքականությունը, թե որքան վճռականորեն ու համախմբված կերպով բազմամիլիոն ժողովրդական մասսաները հանդես կգան նոր համաշխարհային պատերազմի հրձիգների կուրսի դեմ, ի պաշտպանություն աշխարհի խաղաղության: **(Երկարատև ծափահարություններ):**

Երեք շաբաթ հետո Նյու Յորքում կբացվի ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեայի նստաշրջանը: Այդ հատուկ նստաշրջանը ամբողջովին նվիրված է զինաթափման հարցերին: Սովետական Միությունն իր կողմից ամեն ինչ կանի, որպեսզի այդ նստաշրջանը հաջող լինի:

Այժմ քիչ է խաղաղության մասին խոսելը: Հարկավոր են կոնկրետ և պրակտիկ գործեր: Այդ առումով այսօր հիմնական խնդիրն է թույլացնել Եվրոպայում վտանգավոր սահմանների հասած միջուկային հակակայումը, դադարեցնել այստեղ միջուկային պոտենցիալների հետագա մեծացումը: Չի կա-



րելի թույլ տալ, որ Եվրոպայում, որտեղ արդեն երկու անգամ սկսվել են համաշխարհային պատերազմներ, ստեղծվի ամեն րոպե համաշխարհային միջուկային հրդեհ առաջանալու իրական սպառնալիք:

Մոտ օրերս Ժնևում ՍՍՀՄ-ը և ԱՄՆ-ը կսկսեն Եվրոպայում միջուկային սպառազինությունների սահմանափակման բանակցությունների նոր ռաունդ: Տեսնենք, թե ինչպես կպահեն իրենց ամերիկացիները. արդյոք նրանք դարձյալ սոսկ ժամանա՞կ կձգձգեն՝ պատրաստվելով հրթիռների տեղաբաշխման, թե՞ կցուցաբերեն համաձայնության գալու ցանկություն:

Այդ պրոբլեմի վերաբերյալ սովետական առաջարկությունները հայտնի են: Մենք արտահայտվեցինք Եվրոպայում միջին հեռավորության բոլոր միջուկային միջոցների իսպառ վերացման օգտին. Արևմուտքում առարկեցին, թե դա կնշանակեր շատ հեռուն գնալ: Մենք առաջարկեցինք այդպիսի միջոցները կրճատել ավելի քան երեք անգամ. մեզ ասում են, թե դա իբր չափազանց քիչ է: Ի՛նչ կա որ, եկեք որոնենք փոխադարձաբար ընդունելի մեծություններ. մենք պատրաստ ենք նաև ավելի մեծ կրճատումների, իհարկե, երկուստեք:

Գործին օգնելու համար Սովետական Միությունը վերջերս միակողմանիորեն դադարեցրեց միջին հեռավորության հրթիռների հետագա ծավալումը ՍՍՀՄ-ի եվրոպական մասում, որոշեց կրճատել դրանց որոշ քանակությունը: Կարող եմ հաղորդել, որ մենք արդեն իրականացնում ենք զգալի թվով այդպիսի հրթիռների կրճատում:

Մեր երկրի այդ կոնկրետ խաղաղասիրական գործողությունները հավանությամբ ընդունվեցին աշխարհում: Սակայն Արևմուտքում ոմանք փորձում են կասկածի տակ առնել նաև դրանց նշանակությունը:

Պնդում են, օրինակ, թե Սովետական Միության ընդունած որոշումը չի խանգարի այսուհետ ևս մեր հրթիռները այնպես տեղաբաշխել, որ դրանք, թեկուզ Ուրալի այն կողմից, բայց կարողանան «հասնել» արևմտաեվրոպական երկրներին: Կարող եմ ամենայն որոշակիությամբ ասել. միջին հեռավորության ոչ մի հրթիռ լրացուցիչ կերպով չի տեղաբաշխվի այնտեղ, որտեղ դրանց հասանելիության սահմանների մեջ ընկնեին թե՛ ԳՖՀ-ն, թե՛ Արևմտյան Եվրոպայի մյուս երկրները:

Այնուհետև հարցնում են, թե արդյոք միակողմանի սառեցման մասին մեր ընդունած որոշումը նախատեսու՞մ է նաև հրթիռների տեղաբաշխման նախապատրաստության դադարեցում: Այո՛, նախատեսում է, ներառյալ նաև այդպիսի հրթիռների արձակման դիրքերի կառուցման դադարեցումը:

Եվս մի դիտողություն: ԱՄՆ-ի կառավարությունը պահանջում է, որ ՍՍՀՄ-ը սառեցնի, գուցե և առհասարակ վերացնի նաև մեր երկրի արևելյան մասում տեղաբաշխված հրթիռները: Ահա քեզ, իսկապես, անհեթեթ պահանջ: Այդ հրթիռների հարցերը, դրանց սահմանափակման և կրճատման հարցերը լուծել կարելի է: Բայց միայն բանակցելով նրանց հետ, ում ձեռքին գտնվում են միջուկային այն միջոցները, որոնց դիմակայում են մեր հրթիռները: Եվ դարձյալ, իհարկե, փոխադարձաբար: Այդպիսի բանակցությունների դեմ մենք չենք առարկում: Բայց, հասկանալի է, դա առանձին հարց է:

Պատերազմի և խաղաղության ելքը մեծապես պայմանավորված է նաև նրանով, թե ձեռք կբերվի՞ ստրատեգիական սպառազինությունների սահմանափակման ու կրճատման վերաբերյալ սովետա-ամերիկյան պայմանավորվածություն, թե՞ ոչ: Ազնիվ, արդարացի, ոչ ոքի շահերին չվնասող պայմանավորվածություն:

Ինչ վերաբերում է Սովետական Միությանը, ապա նա մշտապես հանդես է եկել անհապաղ և առանց որևէ կանխապայմանի այդպիսի պայմանավորվածություն մշակելու նպատակով բանակցություններ սկսելու օգտին: Մեր այս դիրքավորման մասին բազմիցս՝ թե՛ հրապարակորեն, թե՛ դիվանագիտական ուղիներով տեղեկացվել է ամերիկյան կողմին:

Այժմ պրեզիդենտ Ռեյգանը նույնպես իր կողմից հայտարարել է, որ ԱՄՆ-ը պատրաստ է վերսկսելու բանակցությունները: Դա, մեր կարծիքով,

ճիշտ ուղղությամբ կատարված քայլ է: Կարևոր է, սակայն, որ բանակցությունները անմիջապես ճիշտ ուղիով սկսվեն:

Պրեզիդենտի նույն ճառում ասվում էր, որ ԱՄՆ-ը բանակցություններում հանդես կգա էական կրճատումների օգտին: Ինչ կա որ, մենք միշտ էլ կողմնակից ենք եղել ստրատեգիական սպառազինությունների էական կրճատումների, այստեղ մեզ ագիտացիա անելու հարկ չկա:

Բայց եթե մոտիկից քննենք այդպիսի կրճատումների առթիվ ԱՄՆ-ի պրեզիդենտի արտահայտած մտքերի էությունը, ապա, ցավոք, տեսնում ես, որ ամերիկյան դիրքավորումը բացարձակապես միակողմանի բնույթ է կրում: Նախ և առաջ այն պատճառով, որ ԱՄՆ-ը կուզենար առհասարակ բանակցությունների շրջանակներից դուրս թողնել ստրատեգիական սպառազինությունների այն տեսակները, որոնք նա ներկայումս առավել ինտենսիվ կերպով է զարգացնում:

Չէ՞ որ պատահական չէ, որ հենց Միացյալ Նահանգներում իրավասու մարդիկ անմիջապես հայտարարեցին, որ դա ոչ ռեալիստական, կյանքից կտրված, գուցե և ուղղակի կեղծ դիրքավորում է: Այն պարզապես ուղղված է ի վնաս ՍՍՀՄ-ի անվտանգության և միևնույն ժամանակ Վաշինգտոնի ձեռքերին ազատություն է տալիս ստրատեգիական սպառազինությունների մեծացման ամերիկյան ծրագրերն իրականացնելու գործում:

Դժվար է չհանգել այն հետևության, որ ԱՄՆ-ի պրեզիդենտի հայտարարած դիրքավորումն ուղղված է ոչ թե համաձայնություն որոնելու նպատակին, այլ այն բանին, որ պայմաններ ապահովվեն շարունակելու Վաշինգտոնի փորձերը Սովետական Միության նկատմամբ ռազմական գերազանցության հասնելու համար:

Ի՞նչ է հարկավոր, որպեսզի բանակցությունները հաջողությամբ ընթանան և հասցնեն պայմանավորվածության:

Կարճ ասած, դրա համար պահանջվում է, նախ, որ բանակցությունները իսկապես հետապնդեն ստրատեգիական սպառազինությունները սահմանափակելու և կրճատելու նպատակ, և ոչ թե ծառայեն որպես քողարկում սպառազինությունների մրցավազքը շարունակելու և կողմերի ստեղծված հավասարությունը խախտելու համար:

Երկրորդ, անհրաժեշտ է, որ երկու կողմերն էլ այդ բանակցությունները վարեն հաշվի առնելով միմյանց անվտանգության օրինական շահերը և խիստ համապատասխան հավասարության ու միատեսակ անվտանգության սկզբունքին:

Եվ, վերջապես, հարկավոր է պահպանել այն ամեն դրականը, ինչ ձեռք է բերվել ավելի վաղ: Չէ՞ որ բանակցությունները սկսվում են ոչ դատարկ տեղում, արդեն կատարվել է մեծ և բնավ ո՛չ ավելորդ աշխատանք: Այս մասին չպետք է մոռանալ:

Մենք համոզված ենք, որ միայն այդպիսի մոտեցման դեպքում կարելի է հուսալ, որ պայմանավորվածություն ձեռք կբերվի երկու կողմերի ստրատեգիական սպառազինությունների էական կրճատման կոնկրետ միջոցների շուրջը:

Բացառիկ կարևոր է նաև հուսալիորեն փակել ստրատեգիական սպառազինությունների մրցավազքի շարունակման բոլոր ուղիները, ինչ ձևով էլ դա կատարվի: Դա նշանակում է, որ ստրատեգիական զենքի նոր տեսակների ստեղծումը պետք է կա՛մ արգելվի, կամ էլ առավելագույնս սահմանափակվի համաձայնեցված պարամետրերով:

Եվ ահա թե մենք էլի ինչ առաջարկություն ունենք:

Մենք պատրաստ կլինեինք պայմանավորվել այն մասին, որ ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի ստրատեգիական զենքը արդեն այժմ, հենց որ սկսվեն բանակցությունները, սառեցվի: Սառեցվի քանակական առումով: Եվ որ առավելագույն չափով սահմանափակվի դրա արդիականացումը:



Անհրաժեշտ է նաև, որ ո՛չ ԱՄՆ-ը, ո՛չ Սովետական Միությունը չձեռնարկեն այնպիսի գործողությունների, որոնք հանգեցնեին ստրատեգիական իրավիճակի կայունության խախտման: Նման սառեցումը, ինքնըստինքյան լինելով կարևոր, կհեշտացներ նաև առաջընթացը դեպի ստրատեգիական սպառազինությունների արմատական սահմանափակումն ու կրճատումը:

Համառոտակի՝ այսպիսին է մեր դիրքավորումը ստրատեգիական զենքի հարցում:

Խաղաղությունը երկնային պարգև չէ, նրա պահպանումն ու ամրապնդումը պահանջում են ամենօրյա և դժվարին պայքար: Ձեզ՝ երիտասարդներիդ, բախտ է վիճակվել աճել ու ապրել խաղաղության պայմաններում, չիմանալով պատերազմի աղետները: Պետք է թանկ գնահատել դա, պահպանել այդ թանկարժեք հարստությունը: **(Բուռն, երկարատև ծափահարություններ):**

Ձեզ հետ միասին, թանկագին բարեկամնե՛ր, համագումարի աշխատանքին մասնակցում են արտասահմանյան հյուրեր՝ բոլոր մայրցամաքների երիտասարդության ներկայացուցիչների տասնյակ պատվիրակություններ: Մենք ողջունում ենք խաղաղության, մարդկության պայծառ իդեալների համար պայքարող երիտասարդ մարտիկներին և նրանց կոչ ենք անում ամրապնդել համերաշխությունը, աննկուն կերպով պաշտպանել մոլորակի խաղաղ ապագան: Խաղաղության էստաֆետը երկրագնդի երիտասարդ սերնդի ձեռքին է: **(Բուռն, երկարատև ծափահարություններ):**

Կեցցե՛ լենինյան կոմերիտմիությունը՝ կուսակցության հավատարիմ օգնականը: **(Բուռն ծափահարություններ):**

Փա՛ռք սովետական երիտասարդությանը: **(Բուռն ծափահարություններ):**

Կեցցե՛ կոմունիզմ կառուցող սովետական ժողովուրդը **(Բուռն, երկարատև ծափահարություններ: Բոլորը ոտքի են կանգնում: Դահլիճում հնչում է երկար ժամանակ չլռող օվացիան: Պատգամավորներն ու հյուրերը կեցցեներ են հռչակում ի պատիվ Սովետական Միության կոմունիստական կուսակցության, վանկարկում են «Լե՛նին: Կուսակցությո՛ւն: Կոմերիտմիությո՛ւն»):**

ՍՄԿԿ XXVI համագումարի

որոշումները գործողության մեջ

# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԱՎՈՐ ԲՆԱԳԾԵՐՈՒՄ

**Լ. Գ. ՍԱՀԱԿՅԱՆ**
ՀԱՄԽ-ի նախագահ

Արհմիությունները կարեվոր տեղ են գրավում սոցիալիստական հասարակության քաղաքական սիստեմում: Նրանք դեմոկրատիայի զարգացման, կոմունիզմի կառուցման գործում աշխատավորների ներգրավման հզոր միջոց են: Սոցիալիզմի պայմաններում արհմիութենական շարժման դերը հստակ ու սպառիչ բնորոշել է Վ. Ի. Լենինը, արհմիությունները համարելով կառավարման դպրոց, տնտեսավարման դպրոց, կոմունիզմի դպրոց:

ՍՍՀՄ արհմիությունների XVII համագումարը, ելնելով կուսակցության XXVI համագումարի որոշումներից, խորապես ու համակողմանի քննարկեց կատարված աշխատանքի արդյունքները, առաջիկա հնգամյակի խնդիրները: Սահմանվեց արհմիությունների գործունեության գլխավոր ուղղությունը՝ էկոնոմիկան զարգացման ինտենսիվ ուղու վրա փոխադրելու, երկրի արտադրական հզոր պոտենցիալն արդյունավետ օգտագործելու, տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքները կատարելու և գերակատարելու, երկրի տնտեսական հզորության հետագա աճի, սովետական մարդկանց կենսամակարդակը բարձրացնելու վերաբերյալ: Արհմիությունների ուշադրության կենտրոնում մշտապես պետք է լինեն աշխատավոր մարդը, նրա ամենօրյա բնական պահանջների և կարիքների բավարարումը, նրա շահերի պաշտպանությունը:

Հանրապետության արհմիութենական կազմակերպությունները կուսակցական, սովետական, տնտեսական մարմինների հետ սերտորեն համագործակցված զգալի աշխատանք են կատարում կուսակցության առաջադրած խնդիրների լուծման ասպարեզում: Նրանց ակտիվ գործունեությունը զգալիորեն նպաստեց այն բանին, որ հանրապետությունը մեծ հաջողությունների հասավ տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքների ու ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման ու գերակատարման ասպարեզում:

Հանրապետության բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ժողովրդական մտավորականության անձնվեր աշխատանքը բարձր գնահատվեց տասներորդ հնգամյակում: Այն դարձավ հանրապետության առաջին կարմրադրոշ հնգամյակը:

Հաջողությամբ է մեկնարկ վերցրել տասնմեկերորդ հնգամյակը: Հանրապետության աշխատավորները ձեռնամուխ են եղել ՍՄԿԿ XXVI և ՀԿԿ XXVII համագումարների որոշումների իրականացմանը: Ամենուր ծավալվում է հնգամյակի պլանները և սոցիալիստական պարտավորությունները ժամկետից շուտ կատարելու գործարար սոցիալիստական մրցությունը: 1981 թվականի արդյունաբերական արտադրանքի թողարկման պլանը գերակատարվել է շուրջ 3,3



տոկոսով: Պլանից դուրս արտադրվել է ավելի քան 187 միլիոն ռուբլու արտադրանք: Արդյունաբերական արտադրանքի ծավալի աճը նախորդ տարվա համեմատությամբ կազմել է 7,3 տոկոս: Որակի բարձրագույն կատեգորիայի արտադրանքի թողարկումն ավելացավ մոտ 20 տոկոսով: Աննախընթաց հաջողությունների հասան գյուղի աշխատավորները, որոնք խոշոր հաղթանակով նշանավորեցին տասնմեկերորդ հնգամյակի մեկնարկային տարին: Այդ հաջողության համար նրանք արժանացան ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի ջերմ շնորհավորանքին:

Ուղեցույց ունենալով ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի՝ տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքները հաջող կատարելու և գերակատարելու համար համամիութենական սոցիալիստական մրցության մասին որոշումը, ՀԱՄԽ-ը, արհմիությունների հանրապետական կոմիտեները մինիստրությունների և գերատեսչությունների հետ համատեղ մշակել են սոցիալիստական մրցության նոր պայմաններ, դրանք ներդաշնակելով հնգամյա պլանի հիմնական առաջադրանքներին: Այսօր մրցության գլխավոր նշանաբանն է դարձել՝ պայքար արտադրության արդյունավետության, բարձրորակ վերջնական արդյունքների համար:

Սոցիալիստական մրցության մեջ ընդգրկված շուրջ մեկ միլիոնից ավելի բանվորների, կոլտնտեսականների, ինժեներատեխնիկական աշխատողների ու ծառայողների կեսից ավելին մասնակցում են աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժմանը: Շուրջ 200 հազար մարդ, 7,5 հազար բրիգադ, 2.700 արտադրամաս ու տեղամաս, 99 ձեռնարկություն ու կազմակերպություն արժանացան կոմունիստական աշխատանքի հարվածայինի և կոլեկտիվի բարձր կոչման:

Հենց տասներորդ հնգամյակի հերոսների ջանքերի շնորհիվ ծնվեցին ու լայն տարածում ստացան «Աշխատել առանց ետ մնացողների», «Որակի հնգամյակին՝ բանվորական երաշխիք», «Ամբողջ արտապլանային արտադրանքն՝ ի հաշիվ տնտեսված հումքի», «Հայաստանի ապրանքները՝ գերազանց որակով», «Բանվորական նախաձեռնությանը՝ ինժեներական երաշխիք», «Հնգամյակում՝ անձնական երկու հնգամյա պլան» և բազմաթիվ այլ հայրենասիրական նախաձեռնություններ:

Շատ կոլեկտիվներ, ծավալելով սոցիալիստական գործարար մրցություն, պայքարում են արդյունավետության բարձրացման և որակական ցուցանիշների կատարման համար: Դրան ըստ ամենայնի նպաստում է հանրապետությունում լայն թափ ստացած «ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակին՝ 60 հարվածային շաբաթ» նշանաբանով շարժումը, որը համակել է հարյուրավոր ձեռնարկությունների, կառույցների, կոլտնտեսությունների ու սովխոզների կոլեկտիվներին: Այստեղ կարևոր նշանակություն ունի հանդիպական պլանների մշակումը և հաստատումը, ինչպես նաև ըստ կնքված պայմանագրերի հարակից ձեռնարկությունների միջև ծավալված մրցությունը, որն զգալիորեն բարձրացնում է կոլեկտիվների դերն ու պատասխանատվությունը ստանձնած պարտավորությունների կատարման գործում: Ուսանելի է ալյումինի գործարանի, «Հայէլեկտրալույս», «Հայէլեկտրամեքենա», «Գարուն» արտադրամիավորումների փորձը, որոնց կոլեկտիվները տարիներ շարունակ ստանձնում են և հաջողությամբ կատարում հանդիպական լարված պլաններ: Գովեստի է արժանի «Մասիս» կոշիկի արտադրամիավորումը, որը ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1981 թ.) պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ դասվեց երկրի լավագույն ձեռնարկությունների շարքում:

Հրամայական պահանջ է արհմիությունների կազմակերպչական և դաստիարակչական աշխատանքի կատարելագործումը, որը ենթադրում է հասարակական երևույթների, միտումների նպատակամետ ուսումնասիրում: Այդ առումով մենք ծրագրում ենք ավելի լրիվ օգտագործել հանրապետության գիտությունների ակադեմիայի ինստիտուտների, բուհերի գիտաշխատողների ուժերը: Այս նպատակով արդեն արվել են առաջին քայլերը: ՀԱՄԽ-ին և գիտությունների ակադեմիային առընթեր ստեղծվել է սոցիալիստական մրցության խորհուրդ:

Դրա հետ միասին հանրապետության աշխատավորները, արհմիութենական կազմակերպությունները պետք է լուծեն մի շարք հարցեր, որոնցից ինչպես այժմ, այնպես էլ հետագայում, զգալիորեն կախված կլինեն ժողովրդական տնտեսության զարգացումը, մարդկանց բարեկեցության և կենսամակարդակի բարձրացումը։ Դրանց թվին են պատկանում գիտատեխնիկական առաջընթացի արդյունքների արմատավորման, արտադրության կուլտուրայի բարձրացման, աշխատանքի պաշտպանության, ձեռքի ծանր աշխատանքի մեքենայացման ու ավտոմատացման պրոբլեմները։ Մինչդեռ սոցիալիստական մրցության կազմակերպման գործում գոյություն ունեն լուրջ թերություններ։ Մրցության անբավարար կազմակերպման հետևանքով դեռ կան ոչ քիչ թվով ձեռնարկություններ, շինարարական և այլ կազմակերպություններ, կոլտնտեսություններ ու սովխոզներ, որոնք չեն կատարում ո՛չ միայն իրենց իսկ ստանձնած սոցիալիստական պարտավորությունները, այլև պետական պլանները։ Անցած տարվա արտադրանքի իրացման և թողարկման առաջադրանքները չկատարեցին 35 ձեռնարկություն՝ պակաս իրացնելով 36 միլիոն ռուբլու արտադրանք։ Աշխատանքի արտադրողականության պլանը չկատարեց 73 ձեռնարկություն։ Գործերի վիճակը լավ չէ կապիտալ շինարարության բնագավառում։ Հիմնական ֆոնդերի իրացման 1981 թ. պլանը կատարվեց ընդամենը 80,6, պետական կապիտալ ներդրումների պլանը՝ 95,3 տոկոսով։ Արդի պահանջներին չի համապատասխանում մի շարք արտադրատեսակների որակը, իսպառ չեն վերացված անտնտեսվարությունը, շռայլողականությունը։

Այդ ամենի մեջ կան թե՛ օբյեկտիվ և թե սուբյեկտիվ պատճառներ, որոնց վերացումը մեծապես պայմանավորված է արհմիութենական կազմակերպությունների գործունեությամբ։ Դրանցից գլխավորը, թերևս, լիովին չհաղթահարված իներցիայի ուժն է, որը գալիս է այն ժամանակներից, երբ առաջին պլան էր մղվում գործի ոչ այնքան որակական, որքան քանակական կողմը։ Ոչնչով չեն կարող արդարանալ այն արհմիութենական կոմիտեների նախագահներն ու տնտեսական ղեկավարները, ուր սոցիալիստական մրցության մեջ դեռևս չի ընդգրկված բանվորների և ինժեներատեխնիկական աշխատողների մի մասը, ուր այն կրում է ձևական բնույթ, չեն ամփոփվում արդյունքները, առաջավոր բանվորներին, կոլեկտիվներին զրկում են նյութական և բարոյական խրախուսման հնարավորություններից։

Կուսակցության XXVI համագումարի որոշումները անթերի կենսագործելու համար անհրաժեշտ է պահպանել աշխատանքային հերթափոխի բարձր լարվածությունը, զարգացնել նոր, արժեքավոր նախաձեռնությունները, լավագույն պայմաններ ապահովել բարձրարտադրողական աշխատանքի համար։ Համագումարի պահանջներին համապատասխան, ՍՍՀՄ արհմիությունների XVII համագումարը խնդիր դրեց այսուհետ ևս ուժեղացնել մարդկանց աշխատանքի ու կենցաղի բոլոր հարցերի լուծման նկատմամբ աշխատանքային կոլեկտիվների վերահսկողությունը, ընդլայնել նրանց մասնակցությունը արտադրության պլանավորմանն ու կառավարմանը, կադրերի ընտրությանն ու տեղաբաշխմանը, ձեռնարկությունների և կազմակերպությունների միջոցների արդյունավետ օգտագործմանը։ Նման մոտեցումը թույլ կտա էապես բարձրացնել արհմիությունների դերն ու հեղինակությունը, դրանք դարձնել աշխատավորների կյանքի բոլոր կողմերի վրա ակտիվ ներազդման միջոց, լիովին իրականացնել նրանց վերապահված իրավունքներն ու լայն հնարավորությունները։ Այստեղ մեծ է արհմիութենական և տնտեսական ղեկավարների, ողջ ակտիվի պատասխանատվությունը, որոնց համար պետք է օրենք դառնա խոսքի և գործի միասնությունը։ Այսօր արհմիությունների տրամադրության տակ կան արտադրության վրա ներգործելու, մասսաների ստեղծագործական ակտիվությունը բարձրացնելու գորեղ լծակներ։ Դրանք են՝ բանվորական ժողովները, մշտական գործող արտադրական խորհրդակցությունները, գիտատեխնիկական ընկերությունները, արտադրական դեմոկրատիայի շատ այլ ձևեր։

Այսօր հանրապետությունում գործում են մեկուկես հազար արտադրական խորհրդակցություններ, որոնց կազմում ընդգրկվել են ավելի քան 60 հազար բանվոր-ծառայողներ։ Միայն անցյալ տարի իրագործվել են խորհրդակցու-



թյուններում մշակված 13 հազարից ավելի առաջարկություններ։ Կարևոր է կոլեկտիվ պայմանագրերի կնքման և իրականացման գործը։ Այժմ կնքվել են 2.100 կոլեկտիվ պայմանագրեր։ Դրանց մշակման ընթացքում, անշուշտ, աճել է բանվորների և ծառայողների ակտիվությունը, նրանք բազմաթիվ առաջարկություններ են անում արտադրության կատարելագործման, աշխատանքի արտադրողականության, կենցաղի և հանգստի կազմակերպման հարցերի վերաբերյալ։

1980 թվականին կնքված կոլեկտիվ պայմանագրերով ընդունվել և հաստատվել են 140 հազար պարտավորություններ, որոնցից, ցավոք, չեն կատարվել ավելի քան 4 հազարը կամ շուրջ 3 տոկոսը։ Գործերի վիճակն այս ասպարեզում լավ չէ, մասնավորապես, մետալուրգիական, ռադիոէլեկտրոնային, տեղական արդյունաբերության և կոմունալ-կենցաղային ձեռնարկություններում, որոնցում չկատարված պարտավորությունների տեսակարար կշիռը կազմում է 5—7 տոկոս։

Կուսակցության XXVI համագումարի առաջադրած խնդիրների հաջող լուծման գրավականը ամենից առաջ աշխատանքի պայմանների բարելավումն է, աշխատավոր մարդու նկատմամբ ամենօրյա ուշադրությունն ու հոգատարությունը։ Ինչպես արհմիությունների XVII համագումարում նշեց Լ. Ի. Բրեժնևը, «...Արհմիությունների պրակտիկայում հանրային արտադրության աճի նկատմամբ հոգատարությունն ավելի ու ավելի է միացվել յուրաքանչյուր բանվորի աշխատանքի ու կենցաղի պայմանների, նրա իրավունքների պաշտպանության, նրա բարեկեցության բարձրացման նկատմամբ հոգատարության հետ»։

Աշխատանքի պայմանների և պաշտպանության բարելավման համար մեր հնարավորություններն այժմ հատկապես բարենպաստ են։ Գիտատեխնիկական առաջընթացն արմատապես վերափոխում է ձեռնարկությունների և արտադրամասերի պատկերը, աշխատանքի բնույթն ու բովանդակությունը, աճում է արտադրության տեխնիկական հագեցվածությունը, աշխատանքի պաշտպանության հատուկ սարքավորումների և միջոցների ներդրումը զգալիորեն բարձրացնում է անվտանգությունն արտադրության մեջ։ Ավելանում են աշխատանքի պաշտպանության միջոցառումներն ապահովելու համար պետական հատկացումները։ Անցած հինգ տարվա ընթացքում այդ նպատակով հանրապետությունում ծախսվել է 155 մլն ռուբլի կամ մեկ ու կես անգամ ավելի, քան նախորդ հնգամյակում։ Այդ ընթացքում զգալիորեն նվազել են արտադրական խեղումները և մահացու դեպքերի քանակը։

Էապես փոխվել են կանանց աշխատանքի պայմանները։ Հինգ տարիների ընթացքում նրանցից ավելի քան 44 հազարի աշխատանքի պայմանները համապատասխանեցվել են սանիտարական նորմաների պահանջներին։ 11 հազար կին փոխադրվել է վնասակար արտադրական տեղամասերից, 3 հազարը՝ ազատված է գիշերային հերթափոխություններում աշխատելուց։ Չնայած այդ բարելավումներին, կանանց աշխատանքի պայմանները որոշ տեղերում դեռ պահանջվող բարձրության վրա չեն։ Հանրապետությունում, 1980 թ. տվյալներով, արդյունաբերության մեջ աշխատող կանանց 44 տոկոսն զբաղված է եղել ձեռքի աշխատատար պրոցեսներում, որոշ մասն էլ՝ աշխատանքի վնասակար պայմաններում։ Դանդաղ են նվազեցվում ու վերացվում պրոֆեսիոնալ հիվանդությունները և արտադրական խեղումները։ Կանանց աշխատանքի հարցերը իբրև սոցիալական լուրջ պրոբլեմ լուծելու ճանապարհին մենք դեռևս շատ դանդաղ և զգույշ ենք օգտագործում նրանց համար կրճատված աշխատանքային օր սահմանելու միջոցը, նույնիսկ այն դեպքերում, երբ դա գործնականորեն հնարավոր է։

Մեզ լրջորեն անհանգստացնում է այն փաստը, որ արտադրական տրավմատիզմի հետևանքով անաշխատունակությունը միայն 1981 թ. կազմել է ավելի քան 50,5 հազար մարդ-օր, որ մի շարք ձեռնարկություններում աճել են հազար աշխատողին ընկնող դժբախտ դեպքերի թիվը և տրավմաները։ Այդպիսի դեպքերը հատկապես շատ են արդյունաբերական շինարարության և շինանյութերի արդյունաբերության մինիստրությունների ձեռնարկություններում, ինչպես նաև կոլտնտեսություններում ու սովխոզներում։ Արտադրական խեղում-

ների քանակը դեռևս մեծ է ավտոմոբիլային տրանսպորտի մինիստրության ձեռնարկություններում։

Բազմիցս նշվել է աշխատանքի, աշխատատեղի կազմակերպման, արտադրության կուլտուրայի համար տնտեսական և արհմիութենական աշխատողների պատասխանատվության բարձրացման անհրաժեշտությունը, բայց արդյունքները դեռևս գոհացուցիչ չեն։ Անվտանգության տեխնիկայի կանոնների կոպիտ խախտումների համար անցած հինգ տարում 265 տնտեսական ղեկավարներ ենթարկվել են քրեական պատասխանատվության, իսկ 2544-ին պատժել են արհմիությունները, այդուհանդերձ, դրությունը դանդաղ է շտկվում։ Յուրաքանչյուր ղեկավար, ինչպիսի պաշտոն էլ նա զբաղեցնի, պարտավոր է մարդկանց աշխատանքի պաշտպանության և պայմանների հետ առնչվող պրոբլեմներին վերաբերվել որպես ամենակարևոր կուսակցական գործի։

Առաջնահերթ խնդիր է նաև աշխատավորներին արտահագուստով, հատուկ կոշիկով և պաշտպանական միջոցներով ապահովելը։ Սակայն հարկ է նշել, որ շատ կոլեկտիվներում դժգոհություն են հարուցում հատուկ հագուստի ցածր որակը, անհատական պաշտպանության միջոցներով անբավարար ապահովվածությունը։ Անհապաղ լուծման կարիք ունի նաև օդափոխիչ, լուսավորման և սանտեխնիկական սարքավորումների, հսկիչ-չափիչ սարքերի թողարկումն ավելացնելու և որակը բարելավելու խնդիրը։

Արհմիութենական կազմակերպությունները կոչված են տնտեսական ղեկավարների հետ միասին հետևողական աշխատանք տանել արդյունաբերությունը շարունակաբար նոր տեխնիկայով և տեխնոլոգիայով հագեցնելու համար՝ ապահովելու աշխատանքի հումանիզացման բարձր աստիճանը, հուսալիորեն երաշխավորել աշխատանքի անվտանգությունը։

Շուրջ մեկ տարի է, ինչ «Նաիրիտ» գիտաարտադրական միավորումում բազմաթիվ թերություններով է շահագործվում բութադիենից քլորոպրենային կաուչուկի ստացման արտադրությունը։ Շարունակվում է նաև զուգահեռ շահագործվել ացետիլենից քլորոպրենի ստացման բարոյապես և ֆիզիկապես հնացած արտադրությունը։ Եթե դրան ավելացնենք տեխնոլոգիական պրոցեսների թերությունները և հեղուկ քլորի ստացման ու պահպանման չլուծված հարցերը, ապա այդ ամենը կարող է ծանր հետևանքներ ունենալ մարդկանց առողջության ու Երևան քաղաքը շրջապատող միջավայրի համար։ Հարցի սրությունը բացատրվում է նաև սանիտարական պաշտպանիչ գոտու բացակայությամբ։ Վերջինիս ստեղծման գործում տնտեսական ղեկավարների անթույլատրելի դանդաղկոտության հետևանքով «Նաիրիտ» արտադրամիավորումը շրջապատող ձեռնարկությունների օդավազանում գազայնությունը գերազանցում է նորմայից։ Ցավալի է, որ այդ գոտու ստեղծման նախագիծն անգամ մինչև օրս «Հայարդնախագիծ» ինստիտուտը չի մշակել։

Առհասարակ, Երևանը շրջապատող միջավայրի և օդավազանի առողջացման խնդիրը պետք է դառնա լուրջ ուսումնասիրման և քննարկման առարկա, լուծվի պատասխանատվության նույն չափով, ինչպես ժամանակին լուծվեցին Ալավերդու և Հրազդանի համանման պրոբլեմները։

Վերջին տարիներս կուսակցական, սովետական և արհմիութենական մարմինների իրականացրած միջոցառումների շնորհիվ հանրապետությունում ավելի խստորեն է կիրառվում աշխատանքային օրենսդրությունը, որի շնորհիվ տարեցտարի կրճատվում է աշխատանքային վեճերի քանակը։ Շատ կոլեկտիվներում նկատելիորեն ամրապնդվել է աշխատանքային կարգապահությունը, նվազել են աշխատաժամանակի կորուստները։ Սակայն մնում դեռևս քիչ չեն դեպքերը, երբ խախտվում է արտաժամյա աշխատանքների կիրառման սահմանված կարգը, հանգստյան օրերին բանվորներն ու ծառայողները ներգրավվում են աշխատանքի մեջ, չեն ապահովվում աշխատանքի պաշտպանության կանոնները, աշխատողներին ազատելու և այլ աշխատանքի փոխադրելու կարգը։ Հարկ է նշել, որ ազատվածների ավելի քան 60 տոկոսին ժողովրդական դատարանները վերականգնում են աշխատանքում։

Աշխատանքի արդյունավետության և որակի բարձրացման կարևորագույն նախադրյալ է աշխատանքային բարենպաստ պայմանների ստեղծումը։ Որքան



կատարյալ է ձեռնարկության միկրոկլիման, այնքան բեղմնավոր է նրա աշխատանքը, այնքան ավելի բարձր՝ արդյունքը։ Ահա թե ինչու անհրաժեշտ է, որպեսզի յուրաքանչյուր տնտեսական ղեկավար, յուրաքանչյուր արհմիութենական կազմակերպություն պատասխանատվության բարձր զգացումով վերաբերվի աշխատանքային օրենսդրության կիրառման, մարդկանց աշխատանքային ու կենցաղային պայմանների բարելավման հարցերին։ Վերջին ժամանակներս հանրապետության արհմիությունների խորհրդում բազմիցս սուր և սկզբունքային խոսակցություն է ծավալվել մետալուրգիայի, շինանյութերի արդյունաբերության, մեքենաշինության, առևտրի, կենցաղի և այլ ճյուղերի ձեռնարկություններում տիրող վիճակի մասին։ Նշելով ադմինիստրացիաների, արհմիութենական կազմակերպությունների աշխատանքում եղած լուրջ թերությունները ու վրիպումները, արհմիությունների խորհուրդը կոնկրետ միջոցներ է ձեռնարկել դրությունը շտկելու համար։ Սակայն այսօր դժվար է ասել, թե կտրուկ շրջադարձ է կատարվել աշխատավորական կոլեկտիվների կարիքների ու պահանջների նկատմամբ։ Դեռևս հանդիպում են տնտեսավարներ, որոնք «մոռանալով», որ պլանները կատարում են աշխատավոր մարդիկ, անտեսում են նրանց իրավունքները, իսկ արհմիութենական կազմակերպությունները միշտ չէ, որ վճռական հակահարված են տալիս անհոգության և կամայականության նման դրսևորումներին, պատշաճ սկզբունքայնություն ցուցաբերում կոլեկտիվների կյանքի հասունացած խնդիրները լուծելիս։ Չնայած նրան, որ հնգամյակի տարիներին մեկ բանվորի հաշվով արտաժամյա աշխատանքն արդյունաբերության մեջ կրճատվել է շուրջ 40, իսկ շինարարությունում՝ 28 տոկոսով, դեռևս քիչ չեն ձեռնարկությունները, հատկապես, հաստոցաշինության, սննդի, տեղական արդյունաբերության, առևտրի բնագավառներում, որտեղ նորմա են դարձել արտաժամյա աշխատանքները, որտեղ մարդիկ առանց հատուկ անհրաժեշտության զրկվում են հանգստյան օրերից։

Անհանգստացնում է աշխատանքային պայմանների վիճակը գիշերային հերթափոխություններում։ Նոր օբյեկտների մի մասը շահագործման է հանձնվում անվտանգության տեխնիկայի և արտադրական սանիտարիայի նորմաների խախտումներով։ Դեռևս չի հաղթահարված այն սխալ մտայնությունը, թե իբր նման երևույթները կարելի է արդարացնել, այսպես կոչված, արտադրության շահերով։ Դա սոսկ փորձ է՝ թաքցնելու աշխատանքի արտադրողականության ցածր մակարդակը, արտադրության վատ կազմակերպման, աշխատաժամանակի ոչ ռացիոնալ օգտագործման փաստերը։ Ավելին, նորմալ պայմաններում արտադրական պլանների կատարումն ու գերակատարումը աշխատանքային օրենսդրության հրամայական պահանջն է։ Հետևողական աշխատանք է տարվում բարձրացնելու պահանջկոտությունը տնտեսական ղեկավարների նկատմամբ։ Աշխատանքային օրենսդրության կոպիտ խախտումների համար, արհմիությունների պահանջով միայն վերջին երեք տարում աշխատանքից ազատվել կամ ցածր աշխատանքի են իջեցվել 402 ղեկավար աշխատողներ, համապատասխան տույժ են ստացել շուրջ 700 մարդ։

Սոցիալական խնդիրների համակարգում առավել կարևորը սովետական մարդկանց առողջության մասին հոգալն է։ Վերջին հինգ տարում իրականացվել է միջոցառումների մի ամբողջ շարք. ուղղված պետական սոցիալական ապահովագրության կատարելագործմանը, աշխատավորության կենսամակարդակի բարձրացմանը, նրանց բուժման և հանգստի կազմակերպմանը։ Կենսաթոշակների և նպաստների ավելացման շնորհիվ բարձրացվեցին 75 հազար մարդկանց եկամուտները։ Ծերության կենսաթոշակների չափը 1976 թվականի համեմատությամբ ավելացել է 55,2, հաշմանդամներինը՝ 42 տոկոսով։ Անցած տարիներին ավելի զարգացավ աշխատավորության սանատորակուրորտային բուժման և հանգստի կազմակերպման գործը։

Հնգամյակի տարիներին կատարվածի այս ոչ լրիվ թվարկումն անգամ համոզիչ կերպով հաստատում է ՍՄԿԿ XXVI համագումարի բարձր ամբիոնից ասված այն դրույթը, որ կոնկրետ մարդու, նրա կարիքների և պահանջմունքների նկատմամբ հոգատարությունը կուսակցության տնտեսական քաղաքականության սկիզբն է ու վերջնակետը։ Այդ աշխատանքի իրականացման շնոր-

հիվ հանրապետության արհմիությունների սոցիալական ապահովագրության բյուջեն 1981 թ. կազմեց 146 մլն ռուբլի, 1976 թվականի համեմատությամբ աճելով 24,3 տոկոսով։

Հնգամյակի տարիներին սոցիալական ապահովագրության միջոցների հաշվին զանազան նպաստներ են վճարվել 368 մլն ռուբլու չափով, որը կազմում է սոցիալական ապահովագրության բյուջեի 56,8 տոկոսը։ Անցած ժամանակամիջոցում սանատորիաներում, հանգստյան տներում, տուրիստական համալիրներում, սանատոր-պրոֆիլակտորիումներում բուժվել և հանգստացել են 495 հազար բանվոր-ծառայողներ, որը նախորդ հնգամյակի համեմատությամբ ավելի է 190 հազարով։

Պետական սոցիալական ապահովագրության վիթխարի միջոցների լիարժեք օգտագործման մարզում առողջապահության, սոցիալական ապահովության մարմինների աշխատանքում դեռևս քիչ չեն թերություններն ու բացերը։ Առանձին կոլեկտիվներում թույլ են տրվում սոցիալական ապահովագրության մուծման խոշոր պարտքեր, կենսաթոշակների և նպաստների սխալ վճարումներ, սանատորակուրորտային ուղեգրերի ոչ ճիշտ հատկացման, նրանց օգտագործման խախտման փաստեր, որն ինչպես տնտեսական ղեկավարների, այնպես էլ, հատկապես, արհմիութենական մարմինների առջև հրամայական պահանջ է դնում առավել ակտիվորեն միջամտելու սոցիալական ապահովագրության բյուջեի խնայողական իրացմանը։

Տասնմեկերորդ հնգամյակում խնդիր է դրվում արտադրության զարգացման հեռանկարը նկատի առնել սոցիալական տեսակետից, քանզի այսօրվա արդյունքը, եթե այն ձեռք է բերվել սոցիալական հարցերի «խնայողության» հաշվին, վաղը կարող է լուրջ տնտեսական և բարոյական կորուստների պատճառ դառնալ։

Արհմիությունները մշտապես զբաղվում են աշխատավորների բնակարանային պայմանների և կենցաղի կազմակերպման բարելավման հարցերով։ Նրանք ավելի խստորեն և ուշադիր են հետևում բնակարանների, մանկական հիմնարկությունների, ճաշարանների, կենցաղային ձեռնարկությունների շինարարության պլանների կատարմանը։ Միաժամանակ ուժեղացել է հսկողությունը բնակարանների ճիշտ բաշխման և առևտրի ձեռնարկությունների աշխատանքի նկատմամբ։ Հնգամյակի տարիներին հանրապետության բնակարանային ֆոնդն ավելացավ 5 միլիոն 600 հազար քառակուսի մետրով, որի շնորհիվ բարելավվեցին շուրջ 576 հազար մարդկանց բնակարանային պայմանները։ Ստեղծվեցին հասարակական սննդի 544 նոր օբյեկտներ՝ 63 հազար տեղով։ Մեկ շնչին ընկնող կենցաղային ծառայությունների ծավալն աճեց ավելի քան 50 տոկոսով, որոշ տեղաշարժեր կատարվեցին մարդատար տրանսպորտի աշխատանքներում, որի բարելավմանը, մասնավորապես, զգալիորեն նպաստեց Երևանի մետրոպոլիտենի առաջին հերթի շահագործումը։

Սակայն այս բնագավառներում ևս, առավելապես բնակարանային շինարարության գործում, դեռ կան լուրջ թերություններ։ Այն փաստը, որ տասներորդ հնգամյակի տարիներին բնակշինարարության պլանների թերակատարման պատճառով պակաս հանձնվեց 1 միլիոն 45 հազար քմ բնակելի մակերես, ավելի քան պերճախոս է։ Ավելին, ետ է մնում նաև նախադպրոցական հիմնարկությունների, դպրոցների և որոշ կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարությունը, ցածր է որակը, անավարտ են մնում շրջապատի բարեկարգման և այլ աշխատանքներ։ Անշուշտ, այստեղ հանդիմանության արժանի են նաև արհմիութենական մարմինները, որոնք պատշաճ պահանջկոտություն չեն ցուցաբերել տնտեսական ղեկավարների նկատմամբ, չեն բարձրացրել արհմիութենական կազմակերպությունների, նրանց հանձնաժողովների պատասխանատվությունն իրավիճակը տեղերում շտկելու համար։

Ինչպես հայտնի է, արհմիություններն իրականացնում են բնակարանային ֆոնդի բաշխման պատասխանատու ֆունկցիան։ Աշխատանքի այս կարևոր բնագավառում վերջին տարիներին դրական տեղաշարժեր կան։ Սակայն հանրապետության քաղաքներում ու շրջաններում և մեծ թվով ձեռնարկություններում ու կազմակերպություններում անցկացված ստուգումների, ինչպես նաև



աշխատավորներից ստացված բազմաթիվ նամակների վերլուծությունը վկայում է, որ բնակարանային հաշվառման և բնակֆոնդի բաշխման գործում այսօր էլ կան լուրջ թերություններ, նույնիսկ խախտումներ, մասնավորապես, սննդարդյունաբերության, մեքենաշինության, շինարարության և կապի ձեռնարկություններում։ Ուսումնասիրությունների արդյունքները մանրամասն քննարկվում են արհմիութենական մարմիններում և ձեռնարկվում կոնկրետ միջոցներ։

Արհմիությունների առջև ծառացած խնդիրների հաջող լուծումը հրամայաբար պահանջում է նոր, ավելի բարձր մակարդակի հասցնել նրանց ողջ կազմակերպական, ներմիութենական աշխատանքը։ Այստեղ առաջնային դեր է պատկանում սկզբնական արհմիութենական կազմակերպություններին։ Նրանք փաստորեն ընդգրկում են ժողովրդական տնտեսության բոլոր օղակները, գործում հոծ մասսաների մեջ, տնտեսական և կուլտուրական շինարարության առաջին գծում։ Կիրովականի «Ավտոգենմաշ» գործարանի արհմիութենական կազմակերպությունը, որն ուժեղացրել է իր ազդեցությունը արտադրության և կոլեկտիվի հասարակական կյանքի բոլոր ոլորտների վրա, դրանով իսկ ծանրակշիռ ավանդ է ներդրել վերջին տարիներին ձեռք բերված արտադրական հաջողություններում։ Նման օրինակներ կարելի է բերել նաև շատ այլ արհմիութենական կազմակերպությունների աշխատանքից, որոնց հաջողությունը զգալի չափով պայմանավորված է ներքին օղակների հանդեպ մշտական ուշադրությամբ և հոգատարությամբ։

Վերջին տարիներին արհմիությունների կառուցվածքում տեղի ունեցան էական փոփոխություններ, որոնց կարևոր արտացոլումներից է արտադրական և գիտաարտադրական միավորումներում արհմիութենական կոմիտեների ստեղծումը։ Մեր հանրապետությունում ստեղծվեցին 94 այդպիսի արհկոմներ և հնարավոր եղավ արհմիությունների կառուցվածքն համապատասխանեցնել արտադրության կառավարման կառուցվածքին։ Իսկ դա, իր հերթին, հնարավորություն ընձեռեց զգալիորեն ուժեղացնելու միավորումների արհմիութենական կազմակերպությունների ներգործությունը կոլեկտիվների արտադրական և հասարակական գործունեության վրա։ Այսպես, «Հայէլեկտրալույս» միավորման արհկոմը ստեղծման առաջին օրերից ողջ գործունեությունն ուղղել է գործարանների և մասնաճյուղերի առաջադրանքների, սոցիալիստական պարտավորությունների կատարմանը, կոլեկտիվների անդամների ստեղծագործական նախաձեռնության և ակտիվության զարգացմանը, նրանց աշխատանքի և հանգստի պայմանների, կուլտուր-կենցաղային սպասարկման բարելավմանը, դրա համար օգտագործելով ողջ միավորման հնարավորությունները։

Ցավոք, սկզբնական կազմակերպությունների և արտադրամիավորումների արհկոմների թվում քիչ չեն նաև այնպիսիք, ուր չի հաստատվել գործարար աշխատանքի ոճը, օրենք չի դարձել կանոնադրական պահանջների, վերադաս մարմինների որոշումների անշեղ կատարումը, ուր կենդանի աշխատանքը փոխարինվում է թղթաբանությամբ և ադմկարարությամբ, երբեմն էլ խախտվում է ներմիութենական դեմոկրատիան։

«Հայարդմոնտաժ» տրեստի միացյալ շինկոմի նախկին նախագահ Կ. Բալայանը չկարողացավ գլխավորել շինկոմի գործունեությունը։ Բարձիթողի էր արհկոմի արտադրական, կազմակերպական և դաստիարակչական աշխատանքը, թույլ էին տրվում կանոնադրական խախտումներ։ Միացյալ շինկոմը չմոբիլիզացրեց աշխատանքային կոլեկտիվի հնարավորությունները՝ առաջխաղացումն ապահովելու համար։ Նախագահը կորցրեց կոլեկտիվի վստահությունը, հեղինակազրկվեց և օրինաչափորեն չվերընտրվեց։ Դժբախտաբար, նման օրինակները եզակի չեն՝ նույնիսկ արհմիությունների շրջկոմների և քաղկոմների աշխատանքում։

Աշխատանքները չգլխավորելու, սխալներ և խախտումներ կատարելու, կոլեկտիվների վստահությունը չարդարացնելու պատճառով վերջին շրջանում ազատվել են աշխատանքից գյուղատնտեսության աշխատողների արհմիության Վարդենիսի, Կրասնոսելսկի, Ղուկասյանի շրջկոմների նախագահներ Ա. Մելիքյանը , Ա. Ալիևը, Վ. Օրդյանը, լուսավորության աշխատողների արհմիության Սիսիանի և Ազիզբեկովի շրջկոմների նախագահներ Վ. Հայրապետյանը

և Վ. Գևորգյանը, գյուղշին № 6 տրեստի միացյալ շինկոմի նախագահ Ա. Հովակիմյանը, Լենինականի սառնարանային կոմպրեսորների գործարանի արհկոմի նախագահ Ն. Մխիթարյանը, Արթիկի «Ստեկլոմաշ» գործարանի արհկոմի նախագահ Հ. Վարդանյանը և ուրիշներ։

Խնդիրն այն է, որպեսզի ՀԱՄԽ-ը, ճյուղային արհմիությունների հանրապետական կոմիտեները ուժեղացնեն կազմակերպություններին օգնությունն ու ղեկավարությունը, զարգացնեն արհմիութենական դեմոկրատիան, քննադատությունը և ինքնաքննադատությունը։

Այժմ, երբ արհմիութենական շարժումը, քաղաքի հետ մեկտեղ, ընդգրկել է նաև գյուղը, կոլտնտեսությունները, արհմիությունները վերածվել են աշխատավորների այնպիսի կազմակերպության, որը եզակի է ինչպես թվական կազմով, այնպես և որակական բնութագրերով։ Ուստի կազմակերպական-մասսայական աշխատանքն անհրաժեշտ է ուժեղացնել, մասնավորապես, կոլտնտեսային արհմիութենական կազմակերպություններում, որոնք հասարակական մեծ ուժ են և ի վիճակի են զգալիորեն ներազդելու հանրային արտադրության ավելացման, գյուղատնտեսական արտադրանքի բարձր որակի և պահպանության ապահովման վրա։

Կոլտնտեսային արհկոմներն արդեն ձեռք են բերել աշխատանքի որոշակի փորձ։ Արժե հիշատակել Հոկտեմբերյանի շրջանի Բամբակաշատի, Աշտարակի շրջանի Ագարակի, Արտաշատի շրջանի Քաղցրաշենի, Էջմիածնի շրջանի Մրգաստանի և մի շարք այլ կոլտնտեսությունների արհմիութենական կոմիտեների լավ աշխատանքը։ Սակայն ոչ բոլոր կոլտնտեսությունների արհմիութենական կազմակերպություններում են գործերը հաջող ընթանում։ Ուստի ՀԱՄԽ-ը, գյուղատնտեսության աշխատողների արհմիության հանրապետական և շրջանային կոմիտեները պետք է ուժեղացնեն իրենց ղեկավարությունն ու օգնությունը կոլտնտեսային կազմակերպություններին։

Մեծ ու բազմազան է այն միջոցների զինանոցը, որոնց օգնությամբ արհմիությունները ներգործում են սոցիալական պրոցեսների, էկոնոմիկայի զարգացման, մասսաների դաստիարակության վրա։ Այժմ կարևորը դրանք բավարար արդյունավետությամբ օգտագործելն է, այսօրվա պահանջներից ելնելով՝ արհմիութենական կազմակերպությունների աշխատանքն ավելի եռանդուն վերակառուցելը։

ՍՍՀՄ արհմիությունների XVII համագումարում ընկեր Լ. Ի. Բրեժնևը ասաց, որ մենք հիմա պետք է առաջ մղենք երկրի ժողովրդական տնտեսության նոր վերելքի համար մղվող պայքարի ամբողջ ճակատը, ծավալենք ընդհանուր հարձակում։ Եվ արհմիությունների տեղը աշխատանքի հարձակվող բանակի առաջին շարքերում է։

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՍՈՑԻԱԼ-ԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

**Ա. Մ. ԲԱՂՄԱՆՅԱՆ**
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

Հասարակության սոցիալ-դասակարգային կառուցվածքի, մարդու կողմից մարդու շահագործման վրա հիմնված կարգերի ծագման, դրանց խորտակման, աշխատավոր մարդկությանը սոցիալական ու ազգային ճնշման կապանքներից ազատելու և անդասակարգ հասարակության կառուցման հարցերը դարեր շարունակ զբաղեցրել են բազում մտածողների, պետական ու քաղաքական գործիչների։ Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը առաջինն էին, որ տվեցին դրանց գիտական լուծման բանալին։

Վ. Ի. Լենինը խորությամբ ուսումնասիրեց և զարգացման նոր աստիճանի բարձրացրեց մարքսիզմը՝ մասնավորապես մատնանշելով նրա ստեղծագործական կիրառման կոնկրետ ուղիները Ռուսաստանի յուրահատուկ պայմաններում։ XX դարի խոշորագույն իրադարձությունը՝ մեծ Հոկտեմբերը, ճանապարհ բացեց դեպի սոցիալիզմ ու կոմունիզմ, իսկ դրա ծնունդ սովետական բազմազգ պետությունը, որի ղեկավար կորիզը լենինյան կուսակցությունն է, վճռական դեր խաղաց նոր հասարակարգի կառուցման, ամրապնդման ու զարգացման գործում։ Սոցիալիզմը նոր ձև ու բովանդակություն հաղորդեց հասարակական հարաբերություններին, եղբայրական մերձեցում ստեղծեց աշխատավորական դասակարգերի, սոցիալական խմբերի ու ազգերի միջև, որոնք շատ ավելի խորացան և սերտացան դրա զարգացման նոր փուլում։

Սովետական հասարակության սոցիալ-դասակարգային կառուցվածքի զարգացումը, ազգերի միջև անցյալից ժառանգություն մնացած թշնամանքի վերացումը և նոր, բարեկամական հարաբերությունների ստեղծումը տևական պրոցես է։ Սոցիալիզմի առաջին երկիրը անցյալից ստացավ հասարակական ու պետական կարգի այնպիսի ծանր ժառանգություն, որի վերացումը պահանջում էր ուժերի գերլարում, ժամանակ, հմտություն, հեղափոխական մեծ թափ ու եռանդ։

Նախահեղափոխական Ռուսաստանում յուրաքանչյուր հազար մարդուց 163-ը կապիտալիստներ, կալվածատերեր, առևտրականներ ու կուլակներ էին, 667-ը՝ մենատնտես գյուղացիներ ու չկոոպերացված տնայնագործներ, 170-ը՝ բանվորներ ու ծառայողներ (տե՛ս «Это и есть Советская власть», М., 1971, стр. 40)։ «Այլազգիները» խարխափում էին խավարի ու տգիտության մեջ, ճզմվում մեծապետական շովինիզմի ճիրաններում։ Ցարիզմին հլու-հպատակ ծառայում էին կրոնի տասնյակ հազարավոր սպասավորներ, որոնք մասսաներին ներշնչում էին հնազանդություն գոյություն ունեցող կարգին։ Միլիոնավոր մարդիկ վաղաժամ մեռնում էին սովահարությունից, մշտական թերսնումից, աշխատանքի նողկալի պայմաններից, պրոստի նվազագույն միջոցների բացակայությունից, ապրում դանդաղ մահացման պրոցես, վարում մուրացիկի կյանք՝ մի կերպ քարշ տալով ֆիզիկական գոյությունը։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը փշրեց սոցիալական ու ազգային ճնշման շղթաները, պատմական ինքնուրույն ստեղծագործու-

թյան կոչեց բոլոր ժողովուրդներին, հիմնովին փոխեց հասարակության սոցիալ-դասակարգային կառուցվածքը, լուծեց աշխատավորներին հուզող սոցիալական ու ազգային պրոբլեմները։

Սովետական իշխանության առաջին իսկ տարում ոչնչացվեց խոշոր բուրժուազիայի և կալվածատերերի տնտեսական ու քաղաքական տիրապետությունը, ընդունվեցին օրենքներ բոլոր մեծ ու փոքր ազգերի իրավահավասարության մասին։

Հոկտեմբերից կարճ ժամանակ անց հիմնովին փոխվեց նաև գյուղական բնակչության սոցիալական կազմը։ Շեշտակիորեն նվազեցին նրա երկու հակադիր բևեռները՝ չքավորությունը և կուլակությունը, զգալիորեն աճեց միջակը՝ դառնալով հողագործության կենտրոնական դեմքը։ Ընդհանուր առմամբ, սովետական իշխանության առաջին 10—12 տարիներին բոլոր տեսակի կապիտալիստական տարրերը կազմում էին բնակչության 4—5 տոկոսը՝ նախահեղափոխական շրջանի 15—20-ի փոխարեն։

Երեսնական թվականներին, երբ երկրում հիմնականում հաղթանակեց սոցիալիզմը, սովետական հասարակության սոցիալ-դասակարգային կառուցվածքը ենթարկվեց մի նոր, է՛լ ավելի արմատական փոփոխության։ Շահագործող դասակարգերն ու տարրերը վերջնականապես վերացվեցին։ Բնակչության կազմում մնացին բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը և մտավորականությունը։ Սոցիալիստական շահերի ընդհանրության ամուր հիմքի վրա նրանց միջև հաստատվեցին բարեկամական հարաբերություններ, սոցիալ-քաղաքական, բարոյական ու գաղափարական միասնություն։ Այդ միասնությունը դարձավ հասարակության առաջընթացի և Հայրենական մեծ պատերազմում հաղթանակի նվաճման վճռական գործոնը։

60-ական թվականներին երկիրը թևակոխեց զարգացած սոցիալիզմի ժամանակաշրջանը։ Դա անշեղ վերընթացի այն բարձրագույն աստիճանն է, որի ժամանակ տեղի են ունենում ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի ներդաշնակ զարգացում, դասակարգերի, սոցիալական խմբերի սերտ մերձեցում, ազգերի միջև ստեղծված բարեկամական հարաբերությունների հետագա խորացում, սովետական ժողովրդի՝ որպես պատմական նոր հանրության ձևավորում, քաղաքի ու գյուղի, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունների աստիճանական, բայց ավելի արագ վերացում, ազգային շրջանների էկոնոմիկայի աննախընթաց աճ, գիտության ու տեխնիկայի սրընթաց վերելք, նրանց նվաճումների և սոցիալիզմի առավելությունների միահյուսում, հասարակության անդամների բարեկեցության ու կուլտուր-կրթական մակարդակի շեշտակի բարձրացում։

Զարգացած սոցիալիստական հասարակարգում արտադրաուժերը դառնում են շատ ավելի հզոր, հասարակական հարաբերությունները՝ հասուն, մի նոր աստիճանի է բարձրանում մարդկանց կազմակերպվածության, գաղափարայնության, գիտակցականության մակարդակը, ընդլայնվում է դեմոկրատիան։ Սոցիալիստական սեփականության երկու ձևերի մերձեցման, որոշ կողմերով էլ միահյուսման, բոլոր աշխատավորների՝ բանվոր դասակարգի գաղափարաքաղաքական դիրքերն անցնելու հիման վրա էական փոփոխություններ են կատարվում հասարակության քաղաքական սիստեմում՝ պրոլետարիատի դիկտատուրան վերաճում է համաժողովրդական պետության, իսկ կոմունիստական կուսակցությունը բանվոր դասակարգի առաջավոր ջոկատ լինելուց դառնում է ամբողջ սովետական ժողովրդի ավանգարդը։

Վերջին տասնամյակում այդ բոլոր ասպարեզներում կատարվեց խոշոր առաջընթաց քայլ։ ՍՄԿԿ XXVI համագումարը շեշտեց, որ «70-ական թվականներին շարունակվում էր սովետական հասարակության բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի մերձեցումը։ Դա օբյեկտիվ, բայց բնավ էլ ոչ տարերային պրոցես է։ Դրանում կարևոր դեր է խաղում կուսակցության և պետության սոցիալական քաղաքականությունը։ Մեր նպատակն է ստեղծել մի հասարակություն, որտեղ չի լինի մարդկանց բաժանում դասակարգերի։ Եվ կարելի է որոշակիորեն ասել. մենք աստիճանաբար, բայց վստահորեն առաջ ենք ընթանում դեպի այդ մեծ նպատակը» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 84)։



Այդ նպատակի իրականացման գլխավոր ուժը եղել և մնում է բանվոր դասակարգը։ Վ. Ի. Լենինը նշել է, որ Մարքսի ուսմունքի մեջ գլխավորը հանդիսանում է նրա՝ «որպես սոցիալիստական հասարակության կերտողի, համաշխարհային պատմական դերի պարզաբանումը» (ԵԼԺ, հ. 23, էջ 1)։ Եվ դա հասկանալի է, քանի որ բանվոր դասակարգը «քաղաքակրթված հասարակությունների ամենից ուժեղ և ամենից առաջավոր դասակարգն է» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 29, էջ 516)։ Նա առանձնահատուկ դեր է կատարում «նոր սոցիալիստական հասարակարգի ստեղծման գործում, դասակարգերի լիակատար ոչնչացման համար մղվող ամբողջ պայքարում» (նույն տեղը, էջ 514)։

Լինելով համաժողովրդական (պետական) սեփականության գլխավոր կրողը և կապված լինելով արտադրության առավել առաջավոր ձևերի հետ, որոնք որոշիչ դեր են խաղում սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում, անշեղորեն աճում է բանվոր դասակարգի թիվը, մշտապես բարձրանում նրա դերը հասարակության կյանքում։ 1980 թվականի վերջերին ՍՍՀՄ բանվորների թիվը հասավ շուրջ 80 միլիոնի, որոնց երեք քառորդն ունի միջնակարգ (լրիվ և թերի) և բարձրագույն կրթություն (տե՛ս ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 84)։ Կուլտուր-կըրթական և տեխնիկական մակարդակի բարձրացման շնորհիվ մշտապես փոխվում է նրանց աշխատանքի բուն իսկ բնույթը, ավելի ու ավելի հագեցվում մտավոր բովանդակությամբ։

Բանվոր դասակարգը առաջատար ուժ է ո՛չ միայն էկոնոմիկայում, այլև հասարակական-քաղաքական կյանքում։ Տարեցտարի ավելանում է նրա ներկայացուցիչների թիվը պետական, կուսակցական և այլ ղեկավար օրգաններում։ Այսպես, 1979 թ. ընտրված ՍՍՀՄ Գերագույն սովետում բանվորները կազմում էին դեպուտատների 34,8 տոկոսը(1974 թ. եղել է 32,8), 1980 թ. ընտրված միութենական և ավտոնոմ հանրապետությունների Գերագույն սովետներում համապատասխանաբար՝ 33,2, 37,6, (1971 թ.՝ 29,6 և 31,7), ժողովրդական դեպուտատների տեղական սովետների կազմում՝ 43,4 (1971 թ.՝ 36,5) տոկոսը։ ՍՄԿԿ-ն ամեն անհրաժեշտ բան անում է, որպեսզի մշտապես սովետական բազմազգ բանվոր դասակարգը գաղափարապես առավել հասունանա, մեծանա նրա սոցիալական ակտիվությունը, ընդհանուր կուլտուրան, պրոֆեսիոնալ վարպետությունը և դերը արդի քաղաքականության հանգուցային պրոբլեմների լուծման գործում։

Բանվոր դասակարգի ղեկավարությամբ, քաղաքական ու գաղափարական ազդեցությամբ աննախադեպ առաջընթաց է ապրել սովետական գյուղացիությունը, որը թեև քանակապես ոչ թե աճում, այլ տարեցտարի նվազում է։ Բնակչության կազմում նրա տոկոսը 1959 թվականի 31,4-ից 1977-ին իջել է 15,7-ի։ Վերջին 10 տարում գյուղական բնակչության թիվը պակասել է 6,9 միլիոնով, իսկ քաղաքային բնակչությունը 136 միլիոնից հասել է 164-ի։ 1980 թ. կոլտնտեսությունների հանրային տնտեսություններում աշխատում էին ընդամենը 13,5 միլիոն մարդ։ Դա օբյեկտիվ պրոցես է, որ տեղի է ունենում գյուղատնտեսական աշխատանքի մեքենայացման, գյուղացիների մի մասի քաղաք փոխադրվելու, գյուղական բնակավայրերը քաղաքայինների վերակազմվելու, արդյունաբերության, շինարարության ու տրանսպորտի մեջ գյուղից կատարվող հոսքի ավելացման և այլ հանգամանքների շնորհիվ։ Չնայած դրան գյուղացիության դերն ու կշիռը ոչ թե նվազում, այլ բարձրանում է հասարակության տընտեսական կյանքում։ 1940-ից մինչև 1980 թվականը երկրի 26 հազար կոլտըտնտեսությունների ցանքատարածություններն ավելացել են 7,4, տրակտորային պարկը՝ 21 անգամ։ 1981 թվականին նրանց անբաժանելի ֆոնդերը կազմում էին 110 միլիարդ ռուբլի։ Գյուղացիությունն աճել է որակապես ու արտադրական գործունեությամբ, կուլտուրական ու տեխնիկական մակարդակով, գաղափարական հասունությամբ և քաղաքական ակտիվությամբ։ 1980 թվականին կոլտնտեսականների 60 տոկոսն ուներ միջնակարգ (լրիվ և թերի) և բարձրագույն կրթություն (տե՛ս ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 85)։

Քաղաքի ու գյուղի սոցիալիստական դասակարգերի եղբայրական դաշին-

ամրապնդել սովետական բազմազգ հայրենիքի բոլոր ժողովուրդների եղբայրական բարեկամությունը, մեծացնել յուրաքանչյուր հանրապետության նյութական ու հոգևոր պոտենցիալը և այն առավելագույն չափով օգտագործել ողջ երկրի ներդաշնակ զարգացման համար։ Սովետական բոլոր հանրապետությունների հետագա վերելքին զգալի չափով նպաստում են ընդհանուր միութենական այնպիսի խոշոր խնդիրների լուծումը, ինչպիսիք են Սիբիրի, Հեռավոր Արևելքի և Հյուսիսի, ԲԱՄ-ի գոտու վառելիքաէներգետիկ և հումքային հարստությունների յուրացումը, ՌՍՖՍՀ-ի ոչ սևահողային գոտու զարգացումը։ Կուսակցության տնտեսական ու սոցիալական քաղաքականությունը կառուցվել է այնպես, որպեսզի նախկինում հետամնաց Ռուսաստանի ազգային ծայրամասերը բարձրացվեն մինչև նրա կենտրոնի զարգացման մակարդակը։ Այդ նպատակի իրականացման ճանապարհին վճռական դեր են կատարել բոլոր ազգերի սերտ համագործակցությունը և ամենից առաջ ռուս մեծ ժողովրդի անշահախնդիր օգնությունը։ Մեծ Ռուսիան իր շուրջն է համախմբել բազում ժողովուրդների, միավորել բազմազգ պետության՝ ՍՍՀՄ-ի կազմի մեջ։ Պատմությունը չգիտե այնպիսի պետություն, որը շատ կարճ ժամկետում այնքան շատ բան արած լինի ազգերի և ազգությունների համակողմանի զարգացման համար, որպիսին է ՍՍՀՄ-ը։ «Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 60-ամյակի տարեդարձի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ ասված է, թե «Սովետների երկրի ժողովուրդները սեփական փորձով համոզվել են, որ միասնական միության մեջ համախմբումը բազմապատկում է իրենց ուժերը, արագացնում սոցիալ-տնտեսական զարգացումը»։ Էկոնոմիկայի դինամիկ աճ, ժամանակակից արդյունաբերության, գյուղատնտեսության, գիտության, կուլտուրայի իսկական ծաղկում՝ այս ամենը բնութագրում է սովետական հանրապետություններից յուրաքանչյուրին։

Կարելի է վկայակոչել Սովետական Հայաստանի օրինակը։ Պատմական կարճ ժամանակամիջոցում այն դարձել է բարձր զարգացած արտադրաուժերի, բազմակողմանի արդյունաբերության, մեքենայացված գյուղատնտեսության, առաջավոր գիտության ու կուլտուրայի հանրապետություն։ Նրա արդյունաբերության ողջ արտադրանքը վերջին չորս տասնամյակների ընթացքում աճել է ավելի քան 40 անգամ («Народное хозяйство Армянской ССР за 60 лет», Ереван, 1980 г., стр. 31)։ Շուրջ հազարի հասնող արդյունաբերական ձեռնարկություններ 1981 թվականին երկրին տվեցին 4.154 միլիոն ռուբլու արտադրանք։ Հանրապետության բանվոր դասակարգի թիվը այդ նույն ժամանակամիջոցում 92,4 հազարից հասել է ավելի քան 800 հազարի։ Հանրապետության քաղաքների, քաղաքատիպ ու բանվորական ավանների թիվը հասել է մի քանի տասնյակի։

Մեծ առաջընթաց է ապրել հայկական հինավուրց գյուղը։ Սովետական իշխանության տարիներին Հայաստանի գյուղատնտեսության մեջ ներդրվել է 16.597 միլիոն ռուբլի, որից մոտ 12 միլիարդը՝ վերջին 15 տարում (տե՛ս նույն տեղը, էջ 170)։ Հանրապետության 439 պետական և 310 կոլեկտիվ տնտեսություններում 1980 թվականին գործում էին 12,4 հազար տրակտոր, շուրջ 2 հազար կոմբայն (1928 թվականի 166 տրակտորի և 27 կոմբայնի դիմաց), 15 հազար բեռնատար ավտոմեքենա, որոնց վրա աշխատում էին 19,4 հազար մեխանիզատորներ։ Վերջին 10 տարում կազմակերպվել և մեծ արդյունավետությամբ աշխատում են 60 միջտնտեսային ձեռնարկություններ և ագրոարդյունաբերական միավորումներ։ Գյուղատնտեսության համախառն արտադրանքը 40 տարում ավելացել է մոտ 5 անգամ (նույն տեղը, էջ 31)։ 1981 թվականին նրա արտադրանքը կազմեց 894 միլիոն ռուբլի։

Առավել նշանակալից են հանրապետության հասումները գիտության ու կուլտուրայի ասպարեզներում։ Հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ 1980 թվականին աշխատում էին բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ 297 հազար մասնագետներ։ Այդ թիվը տասնմեկերորդ հնգամյակի վերջում կհասնի 366 հազարի։ Հանրապետությունում գործող 1.520 հանրակրթական դպրոցներում սովորում են 613,3 հազար աշակերտներ,



13 բարձրագույն ուսումնական հաստատություններում՝ 58 հազար ուսանող։ Գիտական աշխատողների թիվն անցնում է 18 հազարից։

Նույնպիսի մեծ առաջընթաց է կատարվել մյուս ազգային հանրապետություններում, մարզերում ու շրջաններում։

Արդի պայմաններում շարունակվում է սովետական հասարակության բոլոր դասակարգերի և սոցիալական խմբերի մերձեցումը, որը հանգեցնում է հասուն սոցիալիզմի պատմական շրջանակներում հասարակության անդասակարգ կառուցվածքի հաստատմանը։

«Գնահատելով վերջին տասնամյակներում մեր հասարակության զարգացման փորձը,— ասաց Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXVI համագումարում,— կարծում եմ կարելի է ենթադրել, որ հասարակության անդասակարգ կառուցվածքի կազմավորումը գլխավորապես և հիմնականում տեղի կունենա հասուն սոցիալիզմի պատմական շրջանակներում։

Այդ պրոցեսի առաջատար ուժը, Մարքսի բառերով ասած, նրա «սոցիալական բանականությունն ու սոցիալական սիրտը» եղել և մնում է ժամանակակից բանվոր դասակարգը։

Նրա հեղափոխական գաղափարախոսությունն ու բարոյախոսությունը, կոլեկտիվիստական հոգեբանությունը, նրա շահերն ու իդեալները ներկայումս դառնում են սովետական հասարակության բոլոր խավերի սեփականությունը» (նույն տեղը, էջ 86—87)։

Սովետական հասարակության անդասակարգ կառուցվածքի աստիճանական ձևավորման ղեկավար և ուղղություն տվող ուժը կոմունիստական կուսակցությունն է։ Այդ ասպարեզում վճռական նշանակություն ունի նրա սոցիալական քաղաքականությունը, որտեղ կենտրոնականն ու գլխավորը աշխատավորների նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացումն է։ Վ. Ի. Լենինը դեռ դարասկզբին գրել է, թե սոցիալիզմի ժամանակ կուսակցությունը էկոնոմիկային ու քաղաքականությանը տալու է այնպիսի ուղղվածություն, որպեսզի ապահովվի «հասարակության բոլոր անդամների լիակատար բարեկեցությունը և ազատ, համակողմանի զարգացումը» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 6, էջ 293)։

Կոմունիստական կուսակցության և սովետական պետության քաղաքականության պրակտիկ գործունեության առանցքը ժողովրդական տնտեսությունն է։ Այստեղ է դրվում սոցիալական խնդիրների լուծման, երկրի պաշտպանության ամրապնդման, ակտիվ արտաքին քաղաքականության հիմքը։ «Էկոնոմիկայի նկատմամբ կուսակցական, քաղաքական մոտեցման ելակետ է ծառայել և ծառայում է ծրագրային անշեղ պահանջը՝ ամեն ինչ հանուն մարդու, ամեն ինչ մարդու բարօրության համար» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 51)։

ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1981 թ.) պլենումում արտասանած ճառում Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ երկիրն ամեն ինչ ունի այդ պահանջի կենսագործման և առհասարակ «հաջող աշխատանքի համար՝ բարձր զարգացած արտադրաուժեր, սովետական ժողովրդի սոցիալ-քաղաքական և բարոյական միասնություն, առաջընթացի հստակ ստրատեգիա»։ Կուսակցությունը ձգտում է այնպես անել, որ նյութական ու հոգևոր բարիքների պահանջմունքի ընդհանուր աճի հետ մեկտեղ հաղթահարվեն սոցիալական խմբերի և ռեգիոնների, քաղաքի և գյուղի միջև անցյալից ժառանգված տարբերությունները։

Առաջադրելով ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման խնդիրը, կուսակցությունը ելնում է սոցիալիստական արտադրության ամբողջ նախորդ զարգացմամբ ստեղծված ռեալ հնարավորություններից, սոցիալիստական էկոնոմիկայի աճած ռեսուրսներից։ Լուծել այդ խնդիրը նշանակում է լուծել ամենագլխավոր սոցիալական պրոբլեմը՝ իսպառ վերացնել բանվորների, գյուղացիների և մտավորականության միջև եղած էական տարբերությունները, նրանց համար ստեղծել ըստ պահանջմունքների նյութական ու հոգևոր բարիքներից օգտվելու պայմաններ, այսինքն կառուցել անդասակարգ հասարակություն, որի «մեջ կմնան միայն արտադրողներ-աշխատողներ, չեն լինի բանվորներ ու գյուղացիներ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 32, էջ 308)։

# ՅԱՍՈՒՄ

## (ԿԱՄՈՅԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)



### 1.

Կալանավորը նստած էր խցի հատակին, մերկ, միայն շապիկով, անիմաստ հայացքը պատին հառած: Դոկտոր Հոֆմանի ներկայությունը նա չէր զգում: Ոչ մի հարցի չէր պատասխանում: Դոկտորը համոզված չէր՝ իր հարցերը նրա գիտակցությանը հասնո՞ւմ են, թե՞ ոչ:

— Երեկ էլի կատաղեց,— ասաց ծառայողը:— Սննդից հրաժարվում է:

Ներս եկավ դոկտոր Լիպմանը: Կալանավորը տեղից վեր թռավ, սարսափից լայնացած աչքերը նրան հառած՝ ետ-ետ գնաց, սեղմվեց պատին. դեմքը պրկված էր, հոնքերն ու շրթունքները դողում էին: Նա իր գլխից քաշեցպոկեց մազերի մի փունջ, արյունոտ մաշկի հետ միասին:

— Սարսափելի՜ է...— աղաղակեց դոկտոր Լիպմանը և դուրս վազեց:

### 2.

Ռուսական սոցիալ-դեմոկրատական կուսակցության անդամ Դմիտրի Միրսկու դատավարությունը պետք է տեղի ունենար մի քանի օր հետո: Բեռլինի մամուլը տարակուսանք էր հայտնում՝ կկայանա՞, արդյոք, դատավարությունը, եթե նկատի ունենանք մեղադրյալի առողջական վիճակը...

1908 թվականի փետրվարի 14—15-ին Բեռլինի երդվյալ ատենակալների դատարանը լսեց Միրսկու գործը: Դատախազ Ֆիգենը ստիպված եղավ ընդհատել դատաքննությունը, դատը հետաձգել անորոշ ժամկետով: Միրսկուն տեղափոխեցին Մոաբիտյան բանտի հիվանդանոցը, բժշկական փորձաքննության ենթարկելու համար:

Այդ օրվանից անցել էր չորս ամիս:

Դոկտոր Հոֆմանը կանգնած էր վանդակավոր բաց պատուհանի առջև: Դրսում մայիս ամիսն էր, դուրեկան, տաք օր:

— Դեռ կանգնա՞ծ է,— հարցրեց նա բանտային հիվանդանոցի ծառայողին:

— Կանգնած է,— պատասխանեց ծառայողը:

— Աստվա՜ծ իմ, չորս ամիս շարունակ ոտքի վրա...

— Սննդից հրաժարվում է:

Դոկտոր Լիպմանը գրասեղանի առջև նստած գրում էր:

— Հասկանո՞ւմ եք, դոկտոր,— ասաց Հոֆմանը՝ պատուհանից շրջվելով,— երբեմն նա լուրջ պատասխաններ է տալիս, նրա միտքը երբեմն կարծես պայծառանում է...

— Գիտակցության երբեմնակի պայծառացումները հատուկ են այդ տիպի հիվանդներին,— ասաց դոկտոր Լիպմանը:

— Քննիչը հարցրել է նրա ազգությունը: Նա պատասխանել է. «Ծագումով ես հայ եմ, միաժամանակ ես ռուս եմ, գերմանացի, անգլիացի, նեգր, ֆրանսիացի, լեհ, բուլղարացի... Իմ մեջ, պարոն քննիչ, բոլոր ազգությունները կան...»: Քննիչը տարակուսանքի մեջ էր. «Ինչպե՞ս կարող է միևնույն անձը և՛ հայ լինել, և՛ ռուս, և՛ մնացած բոլոր ազգությունները...»:



### 3.

Ռուսական գաղտնի ոստիկանության բեռլինյան գործակալության հրազեկիչը Յա. Ժիտոմիրսկին էր: Բեռլինի համալսարանի բժշկական ֆակուլտետի ուսանողը ռուս երիտասարդ հեղափոխականների հետ միասին ստեղծել էր ռուսական սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության Բեռլինի խումբը, ակտիվ մասնակցում էր դրա աշխատանքներին: Կազմակերպության հանձնարարությամբ նա կապեր էր հաստատում Ռուսաստանի կուսակցական կազմակերպությունների հետ, գրականություն ու զենք էր տեղափոխում Ռուսաստան: 1907 թվականին մասնակցել էր ՌՍԴԲԿ լոնդոնյան համագումարին, 1908-ին, Փարիզում՝ Կենտկոմի պլենար նիստին... Ամեն անգամ, կուսակցական որևէ հանձնարարություն կատարելուց հետո, Ժիտոմիրսկին երկու հաշվետվություն էր գրում. մեկը սոցիալ-դեմոկրատական կազմակերպությանը, մյուսը՝ գաղտնի ոստիկանությանը: Սկզբում նա ծառայում էր գերմանական ոստիկանությանը, ստանալով դրա համար ամսական 250 մարկ, իսկ հետո, 1902 թվականից, սկսեց ծառայել ռուսական ոստիկանությանը. սրանք ավելի բարձր էին վճարում: Միրսկի ազգանունով ընկերոջ՝ Բեռլինում եղած ամբողջ ժամանակ Ժիտոմիրսկին նրա հետ էր: Միրսկին ընկերների մոտ նրան կատակով անվանում էր «Իմ տնային դաստիարակը»: Իսկ «դաստիարակը» նույնիսկ դժգոհում էր «աշակերտի» ավելորդ անզգուշությունից ու ծայրահեղ անհոգությունից:

1907 թ. հոկտեմբերի 12-ին ռուսական գաղտնի ոստիկանության բեռլինյան գործակալության վարիչ Ա. Գարտինգը Փարիզից հաղորդում է Պետերբուրգ, ոստիկանության դեպարտամենտի դիրեկտորին. «Պատիվ ունեմ զեկուցելու Ձերդ գերազանցությանը, որ օրերս Թիֆլիսից Բեռլին է ժամանել մեն հայ, «Կամո» մականունով: Իսկական ազգանունը գործակալությանը դեռևս հայտնի չէ: Նա արտասահմանում շրջագայում է Թիֆլիսում բնակվող ավստրիահպատակ Դմիտրի Միրսկու անունը կրող անձնագրով: Նշված «Կամոն», որ մասնակցել է 11 տպարանների, ռումբերի պատրաստման 3 լաբորատորիաների ստեղծմանը, մեծ քանակությամբ զենքերի առաքումների, չնայած երիտասարդ տարիքին (այժմ նա 24 տարեկան է), հանդիսանում է ծայրահեղ ակտիվ ու համարձակ հեղափոխական-տեռորիստ, բարձր է գնահատվում բոլոր բոլշևիկների, նույնիսկ Լենինի ու «Նիկիտիչի»[1] կողմից...

Նշված «Կամոյի» անմիջական մասնակցությամբ... մտածված է մի խոշոր ձեռնարկում, Մեեր Վալլախի (Լիտվինովի) ու «Նիկիտիչի» մասնակցությամբ, էքսպրոպրիացիայի միջոցով ձեռք բերված փողերով զենք գնել, և որոշված է դրանք, կենտրոնները զինելու նպատակով, գաղտնի ճանապարհով ուղարկել Կովկաս ու Ռուսաստանի բոլոր խոշոր քաղաքները... «Կամոն» և նրա համախոհները մտածում են, որ եթե հեղափոխության ընդմիջումը շարունակվի երեք տարի, ապա այդ ժամանակամիջոցում կարելի կլինի լիովին զինել և ապստամբության նախապատրաստել Ռուսաստանի բոլոր խոշոր կենտրոնները...»:

1907 թվականի նոյեմբերի 27-ին գերմանական քրեական գործերի կոմիսար ֆոն Առնիմի կարգադրությամբ Կամոն ձերբակալվում է, նստեցվում Բեռլինի հետաքննչական բանտի մենախուցը:

Էլզասսերշտրասեի 44-ում գտնվող նրա բնակարանում խուզարկության ժամանակ հայտաբերվում են 200-ից ավելի բռնկիչներ, պայթուցիկ նյութեր (որոնք, իշխանությունների համոզմամբ, պետք է ծառայեին խոշոր պայթյունների միջոցով տեռորիստական ակտեր կատարելու համար), մեծ քանակությամբ անլեգալ գրականություն:

Գերմանական ու ռուսական ոստիկանությունների կողմից պարզվում է, որ Կամոն Եվրոպայի մի շարք երկրներից մեծ քանակությամբ զենք է ուղարկել Ռուսաստան: Նոյեմբերի 13-ին, Պետերբուրգ, ոստիկանության դեպարտամենտի դիրեկտոր Տրուսևիչին ուղարկած զեկուցագրում Ա. Գարտինգը նշում էր, որ Կամոն «արդեն վաղուց հայտնի է որպես ամեն տեսակ տեխնիկական ձեռնարկումների գերագույն աստիճանի խորամանկ ու հնարամիտ կազմակերպիչ» և, ի թիվս նրա կատարած մարտական գործողությունների, մանրամասն խոսում է Թիֆլիսի Երևանյան հրապարակում 1907 թվականի հունիսին կատարված հայտնի էքսպրոպրիացիայի մասին:

### 4.

Կամո (Սիմոն) Տեր-Պետրոսյանի հուշերից.

«Ռեակցիան օրեցօր ուժեղանում էր: Կուսակցության ֆինանսական վիճակը ծանր էր... Պետք էր աշխուժացնել աշխատանքը: Պետք էր մի համարձակ ուժեղ հարված հասցնել ցարիզմին, որպեսզի ապացուցվեր, որ կուսակցությունը կենդանի է, որ հեղափոխության ուժերը քնած չեն, այլ պատրաստ են նոր մարտերի: Պետք էր օգնել կուսակցությանը ֆինանսական

[1] *Լ. Մ. Կրասին:*

հարցում, հեղափոխական գրականության հրատարակումը ուժեղացնելու համար»:

Կուսակցության Թիֆլիսի կոմիտեի ցուցումով, 1907 թվականի հունիսի 13-ին, Կամոն և իր մարտական ընկերները քաղաքի հենց կենտրոնում կատարեցին պետական հսկայական գումարի էքսպրոպրիացիա:

Թիֆլիսը այդ օրերին դեռևս ռազմական վիճակում էր: Հատկապես ուժեղացված էր Երևանյան հրապարակի պաշտպանությունը: Այստեղ էին գտնվում քաղաքային վարչության շենքը, «Կովկաս» թերթի խմբագրությունն ու տպարանը... Սովորաբար այստեղ կանգնած էին լինում մի քանի պրիստավ՝ իրենց օգնականներով, քաղաքային վարչության շենքի առջև մշտապես հերթապահում էին յոթ կազակ, յուրաքանչյուր փողոցի սկզբում դրված էին մեկ ոստիկան և երկու կազակ: Հրապարակում ու մերձակա փողոցներում շարունակ երթևեկում էին կազակային պարեկները:

Ժամը 12-ին լուր ստացվեց, որ փողը տանող տրանսպորտը դուրս է եկել կայարանից: Կառքերի առջևից, կողքերից ու ետևից ընթանում էին հեծյալ կազակները, առաջին կառքի մեջ նստած էին պետական բանկի գանձապահն ու նրա օգնականը, երկրորդի մեջ՝ բանկի ժամապահը երկու զինվորների հետ:

Թիֆլիսի 4-րդ տեղամասի թաղային հսկիչ Սվետլյակովի ցուցումից.

«1907 թ. հունիսի 13.

...Դեռ Սոլոլակի փողոցին չհասած, համարյա թե շրջադարձի մոտ, անհայտ չարագործների կողմից, հայտնի չէ, թե որտեղից, երեք ռումբ նետվեց ուղեկցող պահակախմբի վրա... Առաջին ռումբը ջարդեց կառքը, գանձապահ Կուրդյումովին շպրտեց գետնին... Չարագործները, օգտվելով ընդհանուր խուճապից, հափշտակեցին փողերով պարկը, որի մեջ, գանձապահ Կուրդյումովի հայտարարությամբ, կար 250.000 ռուբլի, հրապարակի տարբեր կողմերում ատրճանակներից կրակ բացեցին և փողերի հետ միասին անհետացան՝ հայտնի չէ, թե ուր... Արկերի պայթյուններից Երևանյան հրապարակի տների ու խանութների ապակիները թափվել են»:

Կամոն, սպայի հագուստով, վերցնելով փողերով լի պարկը, Երևանյան հրապարակից կառքով սլանում է դեպի Դվորցովայա փողոցը: Պալատից ոչ հեռու, ձիով նրա դեմ է ելնում Թիֆլիսի ոստիկանապետի պաշտոնակատար գնդապետ Բալաբանսկին: Նկատելով Կամոյի ոտքերի մոտ ընկած պարկը, Բալաբանսկին կանգնեցնում է ձին:

— Փողերը փրկվա՞ծ են,— բարձրացնելով պարկը՝ բացականչում է Կամոն:— Շտապեցե՛ք դեպի հրապարակ:

Ուրախացած Բալաբանսկին մտրակում է ձիուն և սուրում դեպի հրապարակ, որտեղից դեռ գալիս էին կրակոցների ձայները:

Մի քանի օր անց, գնդապետ Բալաբանսկին ինքնասպանություն գործեց:

## 5.

1908 թվականի հունիսի 4-ին Դմիտրի Միրսկուն տեղափոխում են Հերցբորգի հոգեբուժարանը, իսկ ապա, կարճ ժամանակ անց, հունիսի վերջերին՝ Բեռլինի մոտ գտնվող Բուխի հոգեբուժական հիվանդանոցը: Միայն այժմ գերմանական ոստիկանությանը հայտնի դարձավ Դմիտրի Միրսկու՝ Կամոյի, իսկական անունը՝ Սիմոն Արշակի Տեր-Պետրոսյան:

Գլխավոր բժիշկ Վեռները առաջին իսկ հանդիպումից սկսեց կասկածել, թե Միրսկին կեղծում է հիվանդությունը: Այդ մասին նա հայտնեց Բեռլինի ոստիկանության նախագահին:

— Ձեզ կարգադրված է ամենայն հետևողականությամբ անցկացնել փորձաքննությունը,— կարճ կտրեց նախագահը:

— Այո՛, բայց այդ դեպքում...— փորձեց բացատրել Վեռները:

— Ես խնդրում եմ՝ ամենայն հետևողականությամբ:

— Լսում եմ,— գլուխը խոնարհաբար հակեց Վեռները:

Հոգեկան այն հիվանդության դեպքում, որի ախտանշանները դրսևորում էր Կամոն, մարդը կորցնում է ցավի զգացումը: Կամոյին ենթարկում էին ամենադաժան փորձարկումների: Կապկպում էին, դցում հատակին, շիկացած ասեղը խրում էին եղունգների տակ, ծակծկում մեջքը, այրում շիկացած երկաթով և ուշադիր նայում էին դեմքին՝ արդյոք ցավից չե՞ն լայնանում բիբերը, արդյոք դեմքի վրա չի՞ կծկվում որևէ մկան: Փորձում էին կրկին ու կրկին: Օրեցօր ուշադրությամբ դիտում և գրի էին առնում նրա վարմունքը, ամեն մի գործողությունը, ամեն մի խոսքը:

Ահա Վեռները այցելության ժամանակ նրան գտնում է չափազանց գրգռված վիճակում: Կամոն նիհարած է, գունատ, լարված դեմքին սարսափի արտահայտություն կա, ձեռքերը դողում են, սրտի զարկերը հասնում են 120-ի: Ժպտալով հայտարարում է, թե ինքը մահից չի վախենում, թող իրեն հանգիստ կախեն: Ասում է, թե գիշերը իր մոտ է գալիս ոստիկանությունը և ուզում է իրեն լուսանկարել, թե մի անգամ գիշերը իրեն կապկպել են և վեց անգամ լուսանկարել: Այդպիսի դեպքերում կատաղում էր, ձեռքերը դողում էին, բռունցքները սեղմվում, նա բարձր, դողդողացող ձայնով հայհոյում էր՝ «Անիծյա՜լ ոստիկանություն... Ես էլ ուրիշ մարդկանց նման եմ.. Մենակ թե լավ



սնունդ լինի ու խմելիք... Երբ կգա վերջը, թող, թող ուտի իմ միսը ոստիկանությունը...»: Հետո նա չէր կարողանում զսպել հեկեկոցը, և նրան հազիվ էին հանգստացնում: «Ես հանցագործ չե՞մ, ես ոչինչ չեմ գողացել և ոչ մեկին պարտք չեմ»:

Նա հաճախ էր պնդում, թե ինքը հանցագործ չէ, ինքը «բժիշկ է, ժողովրդի ուսուցիչը», թե ինքը սոցիալ-դեմոկրատական կուսակցության կողմնակից է, թե ինքը ավելի լա՛վն է, քան ռուսական ոստիկանությունը, որ կազմված է «ավազակներից, մարդասպաններից ու սրիկաներից»: Երբ մի անգամ Վեռներն առարկեց նրան, թե ռուսական ոստիկանությունը նրան անվանում է ոչ թե սոցիալ-դեմոկրատ, այլ՝ անարխիստ, նա զայրույթից այնպես գունատվեց, որ խոսել չէր կարողանում, նրա դեմքին միայն թաքնված ցասում կար: Մի ուրիշ անգամ, երբ Վեռները նրան հարցրեց, թե ինչո՞ւ է ռուսական ոստիկանությունը նրան անվանում անարխիստ, նա խուլ հարվածելով կրծքին, գրգռված ձայնով գոչեց. «Ա՛ռ, վերցրո՛ւ, կարգադրի՛ր, թող ինձ սպանեն, ես պատրաստ եմ մեռնելու, չեմ վախենում մեռնելուց»:

## 6.

Քսան ամիս էր անցել Կամոյի ձերբակալության օրից:

— Դոկտոր Հոֆման, ապրիլի 24-ին դատախազությանն ուղղված Ձեր դիմումով դուք կանխել եք Կամոյի դեմ նախապատրաստվող նոր դատը, պատճառաբանելով, որ նա ի վիճակի չէ մասնակցելու դատաքննությանը: Նախքան իմ եզրակացությունը տալը, ես կըցանկանայի խորհրդակցել ձեզ հետ... Վերջին մեկ տարում մենք...

Բուխի հոգեբուժական հիվանդանոցի գլխավոր բժիշկ, ոստիկանության խորհրդական դոկտոր Վեռները դոկտոր Հոֆմանի առջև դրեց գրառումները.

Դոկտոր Հոֆմանը սկսեց թերթել դրանք.

«Շարունակ անհասկանալի խոսում է, հարցերին չի պատասխանում: Իրեն շատ երկչոտ է պահում, վախենում է նույնիսկ որևէ մեկի դիպչելուց...»:

«Իրեն աղմկոտ է պահում, երգում է բեռլինյան փողոցային երգեր, հայտարարեց, թե ինքը Նապոլեոնն է, թե ինքը դոկտոր է, թե ինքը խմել է 10 միլիոն լիտր օղի»:

«Հայտարարել է ծառայող Ֆոգտին, թե իր անունն է Սողոմոն Պետրովսկի»:

«Ճանկռտել է դեմքը, արյունը քսում է պատերին»:

«Պոկել է բեղերի մի մասը, ցանկանում է ուղարկել ընկերներին»:

«Սեթևեթում է, մի ձեռքում ծաղիկ է պահել, մյուսը խրել է շալվարի գրպանը»:

«— Անո՞ւնդ:

— Միրսկի:

— Քանի՞ տարեկան ես:

— Շատ տարեկան եմ, քիչ տարեկան եմ, քսան:

— Որտե՞ղ ես ծնվել:

— Չեմ հիշում:

— Հիվա՞նդ ես:

— Այստեղ լավ չէ,— ցույց է տալիս գլուխը:— Այստեղ տաք է»:

«Երրորդ օրն է՝ հրաժարվում է սննդից: «Ինչո՞ւ չեք ուտում» հարցին պատասխանում է. «Մեռել եմ»:

«Ոչխարի ոսկորի կտորով ճանկռել է դաստակը...»:

— Իսկապես «վշտալի էջեր» են...— ասաց դոկտոր Հոֆմանը:

— Դոկտոր,— ասաց Վեռները,— ճշմարիտն ասած, սկզբում ես հակված էի կարծելու, թե... Այժմ ես մտածում եմ՝ կամ նա իսկապես խելագար է, և կամ՝ նա... գաղափարական ֆանատիկ է... Բայց, միաժամանակ, ես սարսափում եմ, երբ մտածում եմ, թե կամքի ինչպիսի՜ գերմարդկային լարում և անհավատալի տոկունություն է հարկավոր քսան ամիս շարունակ խելագար ձևանալու համար... Ես փոքր պրակտիկա չունեմ... Դուք գիտեք...

— Ես նույնպես,— ասաց Հոֆմանը:

— Եվ այն ինչպիսի՜ հավատ պիտի լինի... Չգիտեմ, գուցե դա ինձ համար հասկանալի չէ, և ես դա չեմ ընկալում: Մի՞թե դա հնարավոր է:

— Դոկտոր,— ասաց Հոֆմանը,— մենք չըպետք է դատենք մեզ համար անհասկանալի բաների մասին:

— Ինչպե՞ս,— մտքերից սթափվեց Վեռները:— Այո՛, դոկտոր:

«Արշակովի մոտ նկատված բոլոր հիվանդագին երևույթները ունեն հիստերիկ-նևրաստենիկական բնույթ... Այնպիսի ֆիզիկական երևույթներ, ինչպիսիք են սրտի զարկերի հաճախանալը, կոպերի դողը, ընդհանրապես հնարավոր չէ ձևացնել... Արշակովի կողմից հիվանդագին երևույթներ ձևացնելու մասին խոսք անգամ չի կարող լինել... Արշակովը ներկայումս ի վիճակի չէ դատավարությանը մասնակցելու և ի վիճակի չի լինի ապագայում... Արշակովը ներկայումս ի վիճակի չէ պատիժ կրելու և դրան ի վիճակի չի լինի ապագայում: Չափազանց անհավանական է այն ենթադրությունը, թե նա ապագայում կարող է ի վիճակի լինել պատիժ կրելու»:

Այսպիսին էր դոկտոր Վեռների եզրակացությունը:

## 7.

1909 թվականի հոկտեմբերին գերմանական կառավարությունը Կամոյին, ավելի քան քսան ամիս կալանատներում պահելուց հետո, գաղտնի հանձնում է ցարական ոստիկանությանը: Հոկտեմբերի 19-ին նրան բերում են Թիֆլիս, նստեցնում Մետեխի բանտում: Ռուս ժանդարմների ձեռքերը վաղուց էին քոր գալիս Կամոյի հետ հաշվեհարդար տեսնելու համար: Չնայած գերմանական հայտնի մասնագետների եզրակացություններին, Թիֆլիսի ժանդարմական վարչությունը որոշում է դատել նրան: Սկսվում է նոր հետաքննություն: Կամոյին մահապատիժ էր սպառնում: Եվրոպական առաջադեմ հասարակայնությունը, հատկապես գերմանական սոցիալ-դեմոկրատիան, բողոքի հուժկու ձայն է բարձրացնում ռուսական ոստիկանության անմարդկային որոշման դեմ:

1910 թվականի մայիսի 4-ին, Կամոյին հոգեբուժական հիվանդանոցից թաքուն դուրս գրելու և ապօրինաբար ռուսական իշխանություններին հանձնելու հարցը սոցիալ-դեմոկրատական ֆրակցիայի կողմից քննության է մտցվում պրուսական դեպուտատների պալատում: Դեպուտատ Գիրշի հարցապնդմանը ներքին գործերի մինիստր ֆոն Մոլտկեյի պատասխանը՝ թե Կամոյին ցարական կառավարությանն են հանձնել «նրա գոյությունը պահպանելու համար անհրաժեշտ նյութական միջոցների բացակայության պատճառով», ծիծաղ է հարուցում դեպուտատների շրջանում և սուր ծաղրի է ենթարկվում առաջադիմական մամուլի էջերում: Մայիսի 4-ին նույն հարցը դեպուտատ դոկտոր Արոնսի կողմից բարձրացվում է Բեռլինի քաղաքապետարանի նիստում: Ընդունվում է սոցիալ-դեմոկրատների բանաձևը:

1910 թվականի մայիսի 10-ին ներքին գործերի մինիստր Ստոլիպինը Կովկասի փոխարքա Վորոնցով-Դաշկովին գրում է հետևյալ նամակը.

«Ողորմած տեր կոմս Իլարիոն Իլարիոնովիչ:

Արտաքին գործերի մինիստրությունը ս. թ. ապրիլի 27-ի № 42 նամակով հաղորդել է ինձ, որ վերջին ժամանակներս գերմանական մամուլը հատուկ կրքոտությամբ քննարկում է ռուսահպատակ Արշակովի (նույն ինքը՝ Միրսկի և Տեր-Պետրոսյան) ճակատագիրը, որը պատասխանատվության է կանչված Թիֆլիս քաղաքում պետական փողերը տեղափոխող տրանսպորտի վրա ավազակային հարձակման գործով...

Մամուլի հարձակումները գերմանական կառավարության վրա անպայման կուժեղանան, եթե Միրսկին դատապարտվի մահապատժի: Ներքին գործերի մինիստրությունը երկյուղ է կրում, որ այդ հանգամանքը կարող է ռուսական շահերի համար անբարենպաստ ազդեցություն ունենալ՝ գերմանական իշխանությունների կողմից ռուս անարխիստներին ցարական կառավարությանը հանձնելու հարցում...»:

Վորոնցով-Դաշկովը իր պատասխանում գրում է. «Այդ նկատառումը իմ կողմից ուշադրության կառնվի՝ դատարանի վճիռը իմ կողմից հաստատվելու ժամանակ»:

## 8.

Թիֆլիսի ռազմական դատարանի նիստին Կամոն իրեն պահում էր կողմնակի մարդու նման. չէր պատասխանում հարցերին, միանգամայն անտարբեր էր այն ամենի նկատմամբ, ինչ կատարվում էր դահլիճում: Նա ծոցից հանեց իր սովորեցրած ճնճղուկին, որից բանտախցում էլ անբաժան էր, սկսեց կերակրել հացի փշուրներով և խոսում էր հետը:

Դատարանը որոշեց հետաձգել մեղադրյալ Սիմոն Արշակի Տեր-Պետրոսյանի գործը և նրա մտավոր ու հոգեկան վիճակը պարզելու համար Մետեխի բանտային հիվանդանոցի հոգեբուժական բաժնում նրան ենթարկել նոր փորձաքննությունների:

Միայն 1910 թվականի սեպտեմբերին, այսինքն՝ Բեռլինից Թիֆլիս բերվելուց 11 ամիս անց, դատաբժշկական քննությունը հաստատեց, որ Կամոն «հոգեպես աննորմալ է»: «Սիմոն Տեր-Պետրոսյանը ներկայումս տառապում է հիստերիկ պսիխոզով, որը վերածվում է տկարամտության»— ասվում էր փորձաքննության եզրակացության մեջ:

Չնայած դրան, Թիֆլիսի օկրուգային դատախազը պահանջում էր Կամոյի գործը լսել ռազմական դատարանում և դատապարտել նրան մահվան:

Ռազմական դատարանի նիստը տեղի է ունենում դեկտեմբերի 31-ին: Եվ նորից վճռվում է. «Մեղադրյալ Սիմոն Արշակի Տեր-Պետրոսյանին, նրա մտավոր ունակությունները ավելի ճշգրտորեն պարզելու նպատակով, դիտումների ենթարկել Թիֆլիսի Միխայլովյան հիվանդանոցի հոգեբուժական բաժնում»:

Կամոյին Միխայլովյան հիվանդանոց բերեցին շղթայակապ: Սկսվեց փորձաքննությունների նոր շրջան: Շրջանային դատախազը հատկապես հոգ է տանում, որ Կամոն հիվանդանոցում պահվի ամենախիստ հսկողության տակ և այս ուղղությամբ ձեռնարկում է հատուկ միջոցներ: Նա մերժում է բժիշկների առաջարկը Կամոյի շղթաները հանելու վերաբերյալ: Նա պարբերաբար ծանոթանում է բժիշկների դիտումների ամենօրյա գրառումներին: Ահա դրանցից մի քանիսը:



«Մելխամաղձիկական գրգռվածության խիստ բարձրացում... Մաշկային զգացողության կտրուկ անկում, տեղ-տեղ, որոշ հատվածներում՝ մինչև ցավի զգացողության լրիվ կորուստ: Մաշկային և գլխային ռեֆլեքսների ուժեղացում: Լեզուն ու ձեռքերը դողում են: Էլեկտրական ուժեղ հոսանքի նկատմամբ մաշկային զգացողությունը թուլացած է: Մկանների ուժեղ կծկումների ժամանակ փորձաքննվողը ոչ մի ցավ չի զգում, առհասարակ անտարբեր է վերաբերվում իր վրա կատարվող փորձերին»:

«Ամբողջ օրը թափառում է խցում, երգում է... Պատմում է, թե Թիֆլիսի շրջակայքում ինքը 4 միլիոն ռուբլի ունի, որ թաղված է լեռներում...»:

«Ամբողջ գիշեր չի քնում, քանի որ, իր խոսքերով, կազմում է մի մեծ դրուժինայի նախահաշիվ, որ կազմակերպել է ինքը և տեղավորել անտառում, Թիֆլիսի շրջակայքում...»:

«Տրամադրությունը ճնշված է, տեսքը ընկճված, ժամանակ առ ժամանակ լաց է լինում, հոգոցներ հանում: Հաճախ խոսում է մահվան մասին: Հրաժարվել է սննդից. «Ինձ պետք է սովից մեռնել: Իմ դրուժինաները ոչնչացրել են սրիկաները, որոնք ինձ այստեղ են պահում»:

1911 թվականի օգոստոսի 15-ին արվում է վերջին գրառումը.

«Փորձաքննվողը (ըստ վերակացու Գրիգորևի խոսքերի) թեյի ժամանակ խնդրեց զուգարան գնալ. հերթապահ ծառայող Ժդանովը նրան դուրս բերեց խցից և ուղեկցեց մինչև զուգարան, իսկ ինքը վերադարձավ դեպի մեկ այլ անհանգիստ հիվանդի խուցը... որը թակում էր դուռը: Իսկ երբ թեյ տարան Տեր-Պետրոսովի խուցը, ապա նրան չգտան ոչ խցում, և ոչ էլ զուգարանում: Այդ ժամանակի ընթացքում նա անհետացել էր բաժանմունքից»:

## 9.

Մինչ շշմածությունից խելքի չեկած ոստիկանությունը Կովկասի բոլոր ծայրերում փնտրում էր Կամոյին, մինչ պարզում էր նրա փախուստի հանգամանքները, Կամոն գնում էր արտասահման՝ Լենինի մոտ:

Հիշելով Փարիզում Վ. Ի. Լենինի հետ նրա հանդիպումը, Ն. Կ. Կրուպսկայան գրում է. «Նա շատ էր մտահոգվում, որ պառակտում էր եղել մի կողմից Իլյիչի և մյուս կողմից Բոգդանովի ու Կրասինի միջև: Նա ջերմորեն կապված էր երեքին էլ: Բացի այդ, նա լավ չէր կողմնորոշվում իր նստելու տարիներին ստեղծված իրադրության մեջ: Իլյիչը նրան պատմեց գործերի վիճակի մասին:

Կամոն խնդրեց ինձ, որ իր համար նուշ գնեմ: Նստել էր մեր փարիզյան հյուրասենյակ-խոհանոցում, նուշ էր ուտում, ինչպես դա անում էր իր հայրենիքում, և պատմում էր Բեռլինում ձերբակալվելու մասին, պատմում էր խելագար ձևանալու տարիների մասին, ձեռնասուն ճնճղուկի մասին, որով զբաղվում էր բանտում... Ի վերջո որոշվեց, որ Կամոն կգնա Բելգիա, այնտեղ կվիրահատի աչքը (նա մի աչքով շլում էր, և լրտեսները այդ նշանով նրան իսկույն ճանաչում էին), իսկ հետո ծովով կմեկնի հարավ, ապա՝ Կովկաս: Զննելով Կամոյի վերարկուն, Իլյիչն ասաց. «Իսկ դուք տաք վերարկու ունե՞ք: Ախր սրա մեջ տախտակամածի վրա քայլելիս ցուրտ կլինի»: Ինքը՝ Իլյիչը, նավով ուղևորվելիս անդադար ետ ու առաջ էր քայլում տախտակամածի վրա: Երբ պարզվեց, որ Կամոն ուրիշ վերարկու չունի, Իլյիչը բերեց ու նրան տվեց իր փափուկ, մոխրագույն վերարկուն, որը Ստոկհոլմում նրան էր նվիրել մայրը, և որը Իլյիչին առանձնապես դուր էր գալիս»:

## 10.

Մի քանի տարի անց, զրույցի ժամանակ, պատասխանելով Մաքսիմ Գորկու այն հարցին, թե որտեղի՞ց էր նա իր մեջ այդքան ուժ ու կարողություն գտնում՝ հոգեբույժներին իր իբր խելագար լինելը համոզելու համար, Կամոն պիտի պատասխաներ.

— Դե, ինչպես ասեմ, պետք էր, ինձ էի փրկում, մտածում էի՝ հեղափոխության համար պետք կգամ:

Եվ ապա՝

— Ռուսերեն մի այսպիսի բառ կա՝ ցասում: Գիտե՞ս; Ես չէի հասկանում, թե դա ինչ էր նշանակում: Իսկ ահա, այն ժամանակ, բժիշկների առջև ես ցասումով էի լցված: Հիմա այդպես եմ մտածում: Ցասո՛ւմ, շատ լավ բառ է, ինձ շատ է դուր գալիս...

**ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ**

# ԴԵՊՈՒՏԱՏԸ ԵՎ ԸՆՏՐՈՂՆԵՐԻ ՊԱՏՎԻՐԱՆԸ

**Ս. Ի. ԳԱԼՍՏՅԱՆ**
ժողովրդական դեպուտատների Գորիսի
շրջսովետի գործկոմի նախագահ

ՀՈՒՆԻՍԻՆ ՏԵՂԻ ԵՆ ՈՒՆԵՆՈՒՄ պետական իշխանության տեղական մարմինների ժողովրդական դեպուտատների ընտրությունները: Այդ կամպանիայի նախապատրաստության ընթացքում է՛լ ավելի ուժեղացավ ժողովրդի ընտրյալների ակտիվությունը: Իսկ նրանց անելիքները շատ-շատ են: Ժողովրդական դեպուտատների ստատուսի վերաբերյալ օրենքին համապատասխան, շրջանային սովետների դեպուտատները ակտիվորեն մասնակցում են շրջանի բնակչության պատվիրանների կենսագործմանը, վերահսկում կազմակերպությունների, հիմնարկ-ձեռնարկությունների և տնտեսությունների կողմից դրանց կատարման ընթացքը: Նրանք իրենց բոլոր ուժերն ու գիտելիքները նվիրաբերում են աշխատավորների կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացմանը, շրջանի առջև ծառացած սոցիալ-տնտեսական խնդիրների լուծմանը:

Դեպուտատներն իրենց հեղինակությունը, փորձը պետք է օգտագործեն այն բանի համար, որ «...սովետի յուրաքանչյուր նստաշրջան, մշտական հանձնաժողովի յուրաքանչյուր նիստ վերածվի մարդկանց իսկական խորհրդի, առավել ճիշտ լուծումների կոլեկտիվ որոնման» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 106): Կուսակցության այս պահանջը մշտապես գտնվում է մեր՝ Գորիսի շրջանային սովետի դեպուտատների ուշադրության կենտրոնում: Նրանք իրենց ակտիվ գործունեությամբ ժամանակին ի հայտ են բերում ժողովրդական տնտեսության տարբեր օղակներում տեղ գտած թերությունները, նպաստում դրանց վերացմանը, սովետների առջև ծառացած տնտեսական ու սոցիալական խնդիրների հաջող լուծմանը, ընտրողների պատվիրանների կատարմանը:

Ընտրողների պատվիրաններում արտացոլված են բնակչությանը հուզող ամենատարբեր խնդիրներ: Հետևաբար, դրանց հետևողական լուծումը յուրաքանչյուր սովետի, նրա գործադիր կոմիտեի ամենօրյա գործունեության կարևորագույն բաղկացուցիչ մասն է: Պատվիրանների կատարումը տարեցտարի ավելի է բարելավվում: Դա ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության 1980 թ. սեպտեմբերին ընդունած «Ընտրողների պատվիրանների հետ կատարվող աշխատանքի կազմակերպման մասին» հրամանագրի կենսագործման արդյունք է:

Ընտրողների պատվիրանների իրականացումը մեծապես նպաստում է շրջանի տնտեսական ու սոցիալական զարգացման պլանների հաջող կատարմանը, պետական ու հասարակական մարմինների աշխատանքի կատարելագործմանը, սոցիալիստական օրինականության և իրավակարգի ամրապնդմանը: Ասածը հիմնավորենք կոնկրետ օրինակներով: Նախորդ՝ 1980 թվականի նախընտրական կամպանիայի ժամանակ ընտրողները շրջանային սովետի դեպուտատության թեկնածուներին տվեցին մի քանի տասնյակ պատվիրաններ, որոնք հիմնականում վերաբերում էին բնակչության կենցաղային և առևտրական սպասարկման ձեռնարկությունների գործունեության բարելավմանը, ֆիզիկական կուլտուրայի և սպորտի հետագա զարգացմանը, գյուղերի բարեկարգմանն ու կանաչապատմանը, առաջնակարգ նշանակություն ունեցող այլ հարցերի:



Դեպուտատների պատվիրանները հաշվի են առնվում կոլտնտեսությունների ու սովխոզների տնտեսական ու սոցիալական զարգացման պլանները մշակելիս: Դա հնարավորություն է ընձեռում ժամանակին կատարելու որոշակի դժվարությունների հետ առնչվող այս կամ այն պատվիրանը:

Շրջսովետի գործկոմի բաժինները, համապատասխան կազմակերպությունները և սովետի մշտական հանձնաժողովները մանրամասն ուսումնասիրել ու սիստեմավորել են հավանության արժանացած պատվիրանները: Նրանք մշակել են միջոցառումների պլան՝ ուղղված դրանց կատարմանը: Հատկանշական է, շեշտը դրվել է դեպուտատների հետ տարվող աշխատանքի որակի և արդյունավետության բարձրացման, նրանց հետ կապի ամրապնդման վրա: Ապա շրջանային սովետը հաստատել է այդ պլանները, որոշել պատվիրանների կատարման ստույգ ժամկետները, հաստատել դրա համար պատասխանատու մարդկանց:

Ընտրողների այն պատվիրանները, որոնց կատարման համար պահանջվում են առավել մեծ կապիտալ ներդրումներ, հաշվի ենք առնում շրջանի տնտեսական և սոցիալական զարգացման պլանի մշակման և հաստատման ժամանակ: Նման դեպքերում հատկացվում են անհրաժեշտ միջոցներ, որոշվում կապալառու կազմակերպությունները: Այս կարգի պատվիրանների կատարման նպատակով մենք լայնորեն օգտագործում ենք նաև հիմնարկ-ձեռնարկությունների, կոլտնտեսությունների և սովխոզների հնարավորությունները:

Ձգտելով գտնել պատվիրանների կատարման նոր ռեզերվներ՝ շրջանային սովետի գործկոմն ամեն տարի մանրակրկիտ ուսումնասիրում է կոլտնտեսությունների ու սովխոզների արտադրաֆինանսական պլանները: Դա հնարավորություն է ընձեռում սոցիալ-կուլտուրական ֆոնդից և այլ աղբյուրներից նոր միջոցներ հայթայթելու կուլտուր-կենցաղային օբյեկտների և տեղական ճանապարհների շինարարության, ինչպես նաև բնակավայրերի բարեկարգման համար:

Աշխատանքի կազմակերպման ընթացքում շրջսովետի գործկոմին մեծ օգնություն են ցույց տալիս դեպուտատները: Նրանք ուշադիր լսում են ընտրողներին նախընտրական ժողովներում, ապա՝ ակտիվորեն հետամուտ լինում այդ առթիվ շրջանային սովետի և նրա գործադիր կոմիտեի մշակած միջոցառումների իրականացմանը: Նրանք իրենց ընտրողներին պարբերաբար ինֆորմացիա են տալիս պատվիրանների կատարման ընթացքի մասին՝ օգտվելով ՍՍՀՄ սահմանադրությամբ և ժողովրդական դեպուտատների ստատուսի վերաբերյալ օրենքով սահմանված իրենց իրավունքից: Եվ մենք ձգտում ենք, որպեսզի յուրաքանչյուր դեպուտատ լիովին օգտագործի իրեն վերապահված իրավունքը, ակտիվորեն մասնակցի ընտրողների արծարծած հարցերի լուծմանը:

Դեպուտատների ճնշող մեծամասնությունն իր պարտականությունը լավ է կատարում, հանդես է բերում ակտիվություն ու նախաձեռնություն այս կամ այն խնդիրը լուծելու գործում: Այսպես, շրջանային սովետի դեպուտատ, Խնձորեսկի Վ. Ի. Լենինի անվան սովխոզի ծխախոտագործուհի Գոհարիկ Հակոբջանյանի ակտիվ միջամտությամբ գյուղում բացվեց երաժշտական դպրոց, որտեղ այժմ սովորում են սովխոզի բանվոր-ծառայողների շուրջ 60 երեխաներ, սկսվել և ընթացքի մեջ է տիպային մսուր-մանկապարտեզի շենքի, հանգստյան գոտու շինարարությունը, նորոգվել են խմելու ջրի յոթ կմ երկարությամբ ջրատարը և կենցաղի տունը:

Լուրջ դժվարությունների հետ էր կապված դեպուտատներ Ջուլիետա Մաշուրյանին (Վաղատուր), Արամայիս Անդրյանին (Խնածախ) և Գոհարիկ Միրզաբեկյանին (Խոզնավար) տրված պատվիրանների իրականացումը: Ընտրողները ցանկանում էին նրանց միջոցով լուծել Վաղատուրի, Խոզնավարի և Խնածախի բնակչությանը հանրապետական հեռուստատեսության ծրագրերին հաղորդակից դարձնելու հարցը: Հիմնական դժվարությունն այն էր, որ նշված գյուղերի աշխարհագրական դիրքը լրջորեն խոչընդոտում էր հեռուստատեսա-

յին հաղորդումների գոտում այդ բնակավայրերի ընդգրկմանը: Դեպուտատները քանիցս դիմեցին շրջանի համապատասխան կազմակերպություններին՝ խնդրելով օգնել այդ հարցում:

Պատվիրանը անպայման կատարելու դեպուտատների ձգտումն ու հետևողականությունը տվեցին ցանկալի արդյունք. շրջսովետի գործկոմի անմիջական օգնությամբ կատարվեց այդ պատվիրանը: Այժմ հիշյալ գյուղերի բնակիչները դիտում են հայկական հեռուստատեսության առաջին և երկրորդ ծրագրերի հաղորդումները:

Նման օրինակները քիչ չեն: Նշենք, սակայն, որ դեպուտատները միայնակ չեն պատվիրանների կատարման գործում: Նրանց մեծ օգնություն են ցույց տալիս հասարակական ինքնագործունեության մարմինները, հատկապես գյուղական և թաղային կոմիտեները, որոնք ուշադիր հետևում են պատվիրանների կատարման ընթացքին՝ կապված փողոցների բարեկարգման, կանաչապատման, կուլտուրայի օջախների և այլ փոքր օբյեկտների նորոգման հետ: Պատվիրանի կատարման նպատակով նրանք կազմակերպում են շաբաթօրյակներ՝ ընդգրկելով բնակչության լայն խավերին: Ահա մի բնորոշ օրինակ: Սվարանցի գյուղական սովետի դեպուտատներին ընտրողները պատվիրան տվեցին գյուղը խմելու ջրով ապահովելու վերաբերյալ: Շրջանային սովետի գործկոմի օգնությամբ ձեռք բերելով անհրաժեշտ շինարարական նյութեր՝ նրանք գյուղական և թաղային կոմիտեների հետ ձեռնամուխ եղան ջրատարի շինարարությունում բնակչության ներգրավմանը: Աշխատանքի դուրս եկավ ավելի քան 200 մարդ: Արդյո՞ւնքը. յոթ կիլոմետրանոց ջրատարը գործարկվեց ժամկետից շուտ:

Բազմաթիվ պատվիրանների կատարման համար, որով դեպուտատները զբաղվում են գյուղական, թաղային, ծնողական կոմիտեների և մյուս հասարակական ինքնագործունեության մարմինների հետ միասին, հսկայական ջանքեր ու միջոցներ են պահանջվում: Այս իսկ պատճառով, ընտրական օկրուգի ակտիվի և դեպուտատների սերտ կապի ամրապնդումը մենք համարում ենք պատվիրանների կատարման կազմակերպական աշխատանքի ամենակարևորագույն օղակներից մեկը:

Ընտրողների պատվիրանները հաջողությամբ կատարելու համար անհրաժեշտ է մշտական և խիստ հսկողություն իրականացնել այդ նպատակով մշակված միջոցառումների պլանի կենսագործման նկատմամբ: Այստեղ ևս կարևորվում է դեպուտատների և հասարակական ակտիվի սերտ համագործակցությունը, որը նույնպես գտնվում է մեր ուշադրության կենտրոնում:

Շատ կարևոր է դեպուտատների և ընտրողների կապի ամրապնդումը: Դա գործի հաջողության ապահովման լավագույն պայման է: Այդ հանդիպումների ընթացքում դեպուտատները մտքեր են փոխանակում ընտրողների հետ, նրանց իրազեկ պահում իրենց ծավալած գործունեության մասին, համատեղ բացահայտում պատվիրանների կատարման նոր ուղիներ ու հնարավորություններ: Վերջին երկու տարում տեղական սովետների դեպուտատները աշխատավորական կոլեկտիվներում, ընտրական օկրուգներում հանդես են եկել ավելի քան երկու հազար հաղորդումներով՝ ուղղված պատվիրանների կատարման վերահսկմանը: Աշխատանքի կազմակերպման նման ձևի կիրառմամբ բարձրանում է դեպուտատների պատասխանատվությունը իշխանության մարմինների և ընտրողների առջև: Բացի դրանից, սովետների նստաշրջաններում սիստեմատիկաբար քննարկվում են դեպուտատների հաղորդումները՝ ընտրական օկրուգներում իրենց գործունեության մասին: Այդ ժամանակ ևս առանձնակի ուշադրություն է հատկացվում պատվիրանների կատարման նպատակով տարվող աշխատանքին: Վերջին տարիներս պատվիրանների կատարման վերահսկմանը ակտիվորեն մասնակցում են նաև սովետի մշտական հանձնաժողովները: Նրանք հաճախակի անդրադառնում են այդ հարցերին, լսում իրենց իրավասությանը ենթակա հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարների զեկուցումները այս կամ այն պատվիրանի կատարման ընթացքի կամ ծագած դժվարությունների մասին: Հանձնաժողովներին օգնելու նպատակով գործադիր կոմիտեն նրանց ուշադրությունը հրավիրում է պատվիրանների կատարման համար սովետի հաստատած միջոցառումների պլանի վրա: Հանձնաժողովների անդամներն իրենց



հերթին ուսումնասիրում են այդ պլանները, անում անհրաժեշտ առաջարկություններ՝ դրանով իսկ նպաստելով պատվիրանների հաջող կատարմանը:

Սակայն պատվիրանների կատարման վերահսկողությունը հիմնականում իրականացնում են գործադիր կոմիտեները: Մեզ մոտ կենտրոնացնում ենք այս կամ այն տեղամասին վերաբերող բոլոր տվյալները, կոորդինացնում սովետական ու տնտեսական մարմինների ջանքերը և դրանք շաղկապում պատվիրանների կատարմանն առնչվող հարցերի լուծմանը: Միաժամանակ գործադիր կոմիտեները օպերատիվ միջոցներ են ձեռնարկում պատվիրանների կատարման ձգձգումները կանխելու համար: Այդ նպատակով, օրինակ, շրջսովետի գործկոմի նիստում լսել ենք № 21 շարժական մեքենայացված շարասյան պետ Կ. Հովականյանի և շրջանային էլեկտրացանցի պետ Յու. Հակոբջանյանի ինֆորմացիաները: Նշելով այդ կազմակերպությունների կատարած դրական աշխատանքը, գործադիր կոմիտեն միաժամանակ պարտավորեցրեց նրանց՝ արագացնել Խնածախ, Խոզնավար և Վաղատուր գյուղերի բնակիչներին հայկական հեռուստատեսության ծրագրերից օգտվելու հնարավորություն ընձեռող աշտարակի շինարարությունը: Հանձնարարությունը կատարելու համար սահմանվեց խստագույն հսկողություն և կազմակերպվեց անհրաժեշտ օգնություն: Այդ երկու կազմակերպությունները սերտ համագործակցությամբ կարողացան ժամկետից շուտ կատարել ընտրողների պատվիրանը:

Շրջանային սովետի գործկոմում պրակտիկա է դարձել գործկոմի բաժիններից ու գյուղատնտեսության վարչությունից, հիմնարկ-ձեռնարկություններից, գյուղական սովետների գործկոմներից տարին երկու անգամ մանրամասն ինֆորմացիա ստանալ պատվիրանների կատարման ընթացքի վերաբերյալ: Ուսումնասիրելով այդ ինֆորմացիաները՝ գործկոմը հնարավորություն է ունենում ժամանակին հայտնաբերելու թույլ օղակները և ձեռնարկելու անհրաժեշտ միջոցներ՝ նկատված թերությունները վերացնելու համար:

Այսպիսիք են ընտրողների պատվիրանների կատարման նպատակով շրջանային սովետի գործկոմի կիրառած ձևերն ու մեթոդները: Դրանց հետևողական կատարելագործումով հուսալի նախադրյալներ ենք ստեղծում ընտրողների պատվիրանները հաջողությամբ կյանքի կոչելու համար:

Այս բնագավառում մենք մշտապես զգում ենք կուսակցության շրջանային կոմիտեի գործնական օգնությունը: Կուսշրջկոմը պարբերաբար անդրադառնում է շրջսովետի գործկոմի կողմից դեպուտատների հետ տարվող աշխատանքի հարցերին, իր ակտիվ միջամտությամբ նպաստում նրանց նախաձեռնության զարգացմանը, հատկապես կոմունիստ դեպուտատների պատասխանատվության բարձրացմանը, ընտրողների առաջադրած պատվիրանների կատարմանը: Պատահում է՝ առանձին պատվիրաններ ուղղակիորեն առնչվում են հանրապետական վերադաս կազմակերպությունների հետ, պայմանավորվում նրանց ֆինանսական հատկացումներով և այլ կարգի աջակցությամբ: Նման դեպքերում կուսշրջկոմը խորամուխ է լինում գործի էության մեջ, օգնում մեր առջև ծառացած այս կամ այն խնդրի լուծմանը: Նշեմ այսպիսի մի օրինակ: Տեղ գյուղում 50 ընտանիքի հատկացվել էին տնամերձ հողամասեր՝ բնակարաններ կառուցելու համար: Դրանք անջրդի էին: Գյուղի բնակիչները շրջանային սովետի իրենց դեպուտատ Գուրգեն Բադրիյանի միջոցով հարց էին բարձրացրել շրջսովետի գործկոմի առջև՝ այդ տնամերձ հողամասերը ոռոգման ջրով ապահովելու համար: Հարցի լուծումը մեր ուժերից վեր էր, և շրջսովետի գործկոմը դիմեց կուսշրջկոմի օգնությանը: Շրջկոմն իր հերթին հարց հարուցեց Որոտանի ջրանցքի սիստեմների վարչության առջև՝ լուծելու այդ խնդիրը: Վարչությունը համապատասխան միջոցներ ձեռնարկեց և կարողացավ բնակարաններ կառուցած հիսուն ընտանիքների ապահովել ոռոգման ջրով: Այս տարի իրենց տնամերձ հողամասերը ոռոգելու համար ջուր կստանա բնակարաններ կառուցող ևս նույնքան ընտանիք:

Կամ՝ Բարձրավան գյուղը երկար ժամանակ զուրկ էր խմելու և ոռոգման ջուր ունենալու հնարավորությունից: Դրա հետևանքով բնակիչները չէին կարողանում ստեղծել կենցաղային նորմալ պայմաններ և լքում էին հայրենի օջախները: Գյուղական սովետի դեպուտատներն այդ հարցը բարձրացրին շրջսովետի

*գործկոմի առջև։ Հարկ եղավ կուսշրջկոմի միջամտությունն ու աջակցությունը։ Համատեղ մշակեցինք գյուղի սոցիալական զարգացման միջոցառումներ։ Խնդիր դրվեց շրջանի ջրաշինարարական կազմակերպությունների առջև՝ կառուցել ջրամբար և անցկացնել խմելու ջրատար։ Այդ հանձնարարությունը կատարվեց։ Արդյո՞ւնքը. նախկին բարձրավանդի 10 ընտանիքներ վերադարձան գյուղ և այժմ կառուցում են անհատական բնակարաններ։ Դեպուտատների միջնորդությամբ այժմ գյուղի կոլտնտեսությունը կառուցում է 200 գլխի տարողությամբ տիպային կովանոց՝ մսի լրացուցիչ ռեզերվներ ստեղծելու նպատակով։ Համաձայնություն է ձեռք բերվել, որպեսզի յուրաքանչյուր ընտանիք տարեկան աճեցնի 5—10 գլուխ խոզ։ Դա հնարավորություն կընձեռի պետությանը վաճառել 20 տոննա միս։ Գյուղական սովետների դեպուտատների առաջադրած հարցերի հիման վրա այժմ շրջանի կոլտնտեսություններում և սովխոզներում կառուցվում է սիլոսի 18 խրամատ։*

*ՍՄԿԿ XXVI համագումարը արժեքավորեց կոմունիստ դեպուտատների հեղինակության և փորձի արդյունավետ օգտագործման իրողությունը։ Այդ բանը բնորոշ է նաև մեր կոմունիստ ժողովրդական դեպուտատներին։ Նրանք ոչ միայն արտադրության առաջավորներ են, այլև ակտիվորեն մասնակցում են շրջանային և գյուղական սովետների գործունեությանը, ամենայն պատրաստակամությամբ են զբաղվում ընտրողների պատվիրանների կատարման հարցերով։ Այդ առումով հատկանշական է ծխախոտագործուհի Գյուլամ Գալստյանի (Տեղի սովխոզ), կթվորուհի Զարուհի Բախշինյանի (Խոտի սովխոզ), մեխանիզատոր Վաղարշակ Հակոբյանի (Շինուհայրի սովխոզ) և շատ ուրիշների ծավալած ակտիվ և արդյունավետ աշխատանքը։*

*Անտարակույս, տեղական սովետների նոր ընտրությունների կապակցությամբ ընտրողները նորանոր պատվիրաններ կառաջադրեն իրենց ժողովրդական դեպուտատներին։ Նորընտիր շրջանային սովետի գործադիր կոմիտեի խնդիրն է՝ դրանց կատարման և դեպուտատների ակտիվ գործունեության համար ստեղծել նպաստավոր բոլոր պայմանները։*

# ԻՆՔՆԱԹԻՌԻ ՂԵԿԻ ՄՈՏ

**ԼԵՆԻՆԳՐԱԴԻՑ ՎԵՐԱԴԱՌՆՈՒՄ ԵՆՔ** մեր երթուղու վերջնակետը՝ Երևանի «Զվարթնոց» օդանավակայանը։ Օդաչուական խցիկում նստած՝ ուշադիր հետևում էի անձնակազմի աշխատանքին։ Ծառուրման Հայկ Սահակյանը թռիչքային հաշիվն էր վարում, երկրորդ օդաչու Անդրանիկ Հովհաննիսյանը և բորտինժեներ Էդուարդ Գասպարյանը զբաղված էին իրենց գործով։ Նրանք մշտական կապ էին պահպանում երկրի, թռչող ինքնաթիռների հետ, ստացած տվյալները իսկույն հաղորդում «ՏՈՒ—154» օդանավի հրամանատար, քաղաքացիական ավիացիայի առաջին կարգի օդաչու, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Ամրա Զաքարյանին։

Հսկա ինքնաթիռը թռչում է փոքր բարձրության վրա։ Ներքևում՝ աջ կողմում փռված է Արարատյան դաշտը, ձախում՝ գարնանային երկնքի կապույտ ֆոնի վրա, հրաշալի մի համայնապատկեր. հավերժական ձյունով պատված երկգագաթ Արարատը։ Արագած լեռան շրջանում անձրևի առաջին կաթիլները բախվում են խցիկի լապտերի ճակատային ապակուն ու արագ սահում ներքև։

Օդանավի հրամանատարը կարծես չի նկատում անձրևը, այսօր նրա ղեկավարած թռիչքային համերաշխ անձնակազմը օդում անձրևից էլ ահեղ «հակառակորդի» հանդիպեց։ Նա մոտ երկու ժամ, սկսած Մոսկվայի մոտերքից, թռչում էր օդերևութաբանական ծանր պայմաններում. հաճախակի շրջանցում ճակատային ամպրոպները, պայքարում կողային ուժեղ քամիների դեմ։ Իսկ դա այնքան էլ հասարակ բան չէ։ Ի վերջո մեր ինքնաթիռը, շուրջ 150 ուղևորներով, բարեհաջող վայրէջք է կատարում Երևանի նորակառույց օդանավակայանում։ Եվ ամեն անգամ այդպես, վաստակաշատ օդաչու Ամրա Զաքարյանի մեծ փորձի ու հմտության շնորհիվ։

Ես հաճախ եմ թռչում։ Երբեմն թռիչքն անցնում է շատ հեշտ, սահուն աննկատ։ Սակայն եթե ինձ հարցնեն, թե ո՞րն է ամենադժվարին ու պատասխանատու գործը, ես առանց երկընտրանքի կպատասխանեմ՝ օդաչուինը։ Եվ այդ, խոստովանում եմ, ամենևին էլ ոչ իմ նախկին՝ սրտիս այնքա՜ն մոտ մասնագիտությունը դրվատելու ցանկությունից։ Օդաչուից հոգեկան ու ֆիզիկական որքա՜ն ուժ է պահանջում ամեն մի թռիչք։

Ամրա Զաքարյանն արդեն թևակոխել է իր կյանքի չորրորդ տասնամյակը։ Ամրակազմ, միջահասակ, հանգիստ բնավորության տեր մարդ է։ Սիրում է և՛ կատակը, և՛ տեղին ասված սուր խոսքը։

Հայտնի բան է. օդաչուն անուն է հանում թռիչքային տարիների քանակով։ Այդ դժվարին ու անհանգիստ մասնագիտության մեջ մարդուն ոչինչ չի կարող դասել լավագույն օդաչուների շարքը, բացի օդում, երկնքում նրա կատարած աշխատանքից։ 1958 թ. գերազանց գնահատականներով ավարտելով Կրասնոկուտսկի քաղաքացիական ավիացիայի ավիացիոն ուսումնարանը՝ Ամրա Զաքարյանը վերադարձավ հայրենի քաղաք ու աշխատանքի անցավ Հայաստանի օդային նավատորմի ստորաբաժանումում, որպես «ԱՆ—2» ինքնաթիռի երկրորդ օդաչու։ Հանձինս նրա հայ օդագնացների համերաշխ կոլեկտիվը համալրվեց ևս մի բարեխիղճ, պարտաճանաչ անդամով։ Երկու տարի անընդհատ աշխատում էր հանրապետության գյուղատնտեսական ավիացիոն ստորաբաժանումում՝ օդից օգնելով հանրային դաշտերի անխոնջ մշակներին։

Շուրջ քառորդ դար է, ինչ Ամրա Զաքարյանն իրեն նվիրաբերել է սիրած մասնագիտությանը։ Այդ տարիներին նրա անձնական հաշվում գրանցվել է 10 միլիոն կիլոմետր անվթար թռիչք՝ օդում մնալով ավելի քան 15 հազար ժամ։ Սակայն պարտականությունների հաջող կատարումը, ինքնաթիռը վարպետորեն վարելը դեռևս բավական չէ Զաքարյանի համար։ Նա նաև լավ մանկավարժ է, մի բան, որ հնարավորություն է ընձեռում նրան՝ ճշտորեն զուգակցելու անձնակազմի ուսուցումն ու դաստիարակումը։ Զաքարյանը հայկական ավիացիոն վարչության շատ օդաչուների համար եղել է և շարունակում է մնալ որպես հրամանատար-դաստիարակի տիպար։ Կարդալով նրա թռիչքային գրքույկում կատարված ժլատ գրառումները՝ համոզվում ես, թե ինչպիսի՜ դժվարություններ հաղթահարելով է անել կոմունիստ-օդագնացի թռիչքային վարպետությունը։ Հայկական ավիացիոն վարչության օդանավերի շնորհալի երիտասարդ հրամանատարներ Ռազմիկ Մկրտչյանը, Ռաֆայել Մելքոնյանը և շատ ուրիշներ, ամեն անգամ օդ բարձրացնելով հսկա ինքնաթիռները, երախտագիտությամբ են հիշում իրենց ուսուցիչ Ամրա Զաքարյանին, նրա բարի խոսքերն ու խորհուրդները։

Այդ գործունյա, եռանդով լեցուն հմուտ օդագնացին լավ են ճանաչում ոչ միայն մեր հանրապետությունում, այլև մեր անծայրածիր հայրենիքի գրեթե բոլոր օդանավակայաններում։ Որտեղ էլ որ վայրէջք կատարի նրա վարած արծաթափայլ «ՏՈՒ—154»-ը, լինի դա Մոսկվայում, Լենինգրադում, Կիևում, Տաշքենդում, Նովոսիբիրսկում, Ալմա-Աթայում թե Իրկուտսկում, նրան դիմավորում են որպես իր պատվավոր գործի հմուտ մասնագետի և շնորհալի մարդու։

Դժվար է թվարկել օդային նավատորմի ասպետի բոլոր արժանիքները։ Եվ պատահական չէ, որ 1980 թ. Երևան քաղաքի Ծահումյանի շրջանի № 80 ընտրական օկրուգի ընտրողները Ամրա Զաքարյանին ընտրեցին հանրապետության պետական իշխանության բարձրագույն մարմնի՝ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի ժողովրդական դեպուտատ և նրան տվեցին մի քանի պատվիրան, որոնց լուծումը կենսական նշանակություն ունի թաղամասի սոցիալական զարգացման համար։ Եվ դեպուտատն արդարացնում է ընտրողների վստահությունը ոչ միայն առաջադրանքների գերակատարմամբ, ուղևորների կուլտուրական սպասարկմամբ, վարչության հաջողություններում իր ներդրած մեծ ավանդով, այլև դեպուտատի պարտականությունների ճիշտ կատարմամբ։

Ընտրողների հետ հաստատած ամուր կապը, նրանց հոգսերով հետաքրքրվելը Ամրա Զաքարյանի համար դարձել է բնավորության գիծ։ Նա ակտիվորեն մասնակցում է Ծահումյանի շրջանային սովետի գործունեությանը, նստաշրջաններում, գործկոմի նիստերում բարձրացնում է իր օկրուգի բնակչության տրված պատվիրանների կատարման ու առաջադրած հարցերի լուծման խնդիրները։ Նրա ջանքերով հաջողությամբ են իրականացվել շատ հարցեր։ Այսպես, Արարատյան բնակելի զանգվածի մի շարք շենքերի բնակիչներ դժգոհում էին, որ շրջանային կաթսայատնից մեծ հեռավորության վրա գտնվող իրենց բնակարանները վատ են տաքանում։

Դեպուտատի միջամտությունը, ինչպես միշտ, այս անգամ էլ արդյունավետ եղավ։ Թաղամասում շահագործման հանձնվեց նոր կաթսայատուն, որի շնորհիվ ոչ միայն բարելավվեց ջեռուցումը, այլև լուծվեց ժամանակակից պահանջներին համապատասխանող հասարակական բաղնիք ունենալու հարցը։ Ընտրողների հետ հերթական հանդիպման ժամանակ մի շարք ընտրողներ դեպուտատի ուշադրությունը հրավիրեցին խմելու ջրի մատակարարումը

բարելավելու վրա: Նրանց դժգոհությունն իրավացի էր. թաղամասի միակ փոքր ջրամբարը չէր բավարարում բնակչության պահանջը: Դեպուտատի միջամտությամբ այդ հարցը քննարկվեց շրջանային սովետի գործկոմում: Որոշմանը հաջորդեց գործը: Շուտով կառուցվեց և շահագործման հանձնվեց նոր ջրատարը, որով և բավարարվեց բնակչության պահանջը:

Դեպուտատի միջամտությամբ թաղամասում բացվել են թերթերի և ամսագրերի վաճառքի մի շարք կրպակներ, ավտոբուսային և տրոլեյբուսային նոր երթուղիներ: Հատկապես ընտրողները գոհ են վերջերս շահագործման հանձնված տրոլեյբուսի 18ա և 19ա երթուղիներից:

Իրենց դեպուտատի հետ ունեցած հանդիպումների ժամանակ ընտրողները հաճախ խոսում էին այն մասին, որ Արարատյան զանգվածում տասնյակ նորակառույց շենքեր են բնակեցվել, սակայն բնակիչները դեռևս հեռախոսներ չունեն: Դեպուտատը ոչ միայն միջամտեց գործին, այլև իր հսկողության տակ վերցրեց 77 ինդեքսով ավտոմատ հեռախոսակայանի շինարարական աշխատանքները: Դրանք ընթանում են հաջողությամբ և, անտարակույս, նորակառույցը շահագործման կհանձնվի ժամկետից շուտ, այսինքն այս տարվա չորրորդ եռամսյակին:

Վերջին տարիներին նոր վերելք է ապրել հայկական ավիացիոն վարչության կոլեկտիվը: Լուծվել և լուծվում են մի շարք սոցիալ-տնտեսական կարևոր խնդիրներ: Շահագործման են հանձնվել ուղևորների կուլտուրական սպասարկումն ապահովող տասնյակ կառույցներ, այդ թվում՝ թռիչքների անվտանգությունը տեխնիկայի վերջին խոսքին համապատասխան հուսալի բարդ կոմպլեքսներով զինված «Զվարթնոց» առաջին կարգի նոր օդանավակայանը: Հետզհետե ամրապնդվում է վարչության նյութատեխնիկական բազան, թռիչքային և ինժեներատեխնիկական անձնակազմը համալրվում է երիտասարդ բանիմաց կադրերով: Այս բոլոր հույժ կարևոր հարցերում իր ավանդն ունի նաև վարչության կուսկոմիտեի անդամ, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Ամրա Զաքարյանը:

Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի վերջերս կայացած դեպուտատի հանդիպման միասնական օրը, որը նվիրված էր ՍՍՀՄ կազմավորման 60-ամյա հոբելյանն արժանավայել դիմավորելուն, Ամրա Զաքարյանն իր ընտրական օկրուգի ընտրողներին իրազեկ պահեց հանրապետության օդագնացների սոցիալիստական մրցության կատարման ընթացքին ու առաջին եռամսյակի պլան-առաջադրանքների կատարման արդյունքներին: Նա հավաստիացրեց, որ ավիատորներն ամեն ինչ կանեն, որպեսզի փառապանծ տոնը դիմավորեն նորանոր հաջողություններով:

— Ամրա Զաքարյանը մեր փարոսն է,— հպարտությամբ են ասում քաղաքացիական ավիացիայի հայկական ավիացիոն վարչության կոլեկտիվում:

Եվ կոլեկտիվը, իհարկե, չի սխալվում:

Անվթար թռիչքների վարպետ, հմուտ ու խիզախ օդաչուն՝ հանրապետության պետական իշխանության բարձրագույն մարմնի ժողովրդական դեպուտատը, դրան միանգամայն արժանի է:

Զ. Պ. ՊՈՂՈՍՅԱՆ

# ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՎԻՐԱԿԸ

ՍՍՀ ՄԻՈՒԹՅԱՆ կազմավորման 60-ամյակի նախաշեմին մենք ըստ արժանվույն գնահատում ենք ավագ սերնդի այն ներկայացուցիչներին, որոնք հաստատ ու աներեր կանգնեցին ազատ ժողովուրդների սոցիալիստական մեծ ընտանիքի ինքնահաստատման, նրա առնականացման ուղու վրա, դրեցին մեր նոր կյանքի ու կենցաղի կառուցման առաջին աղյուսները:

Հենց այդպիսի երախտավորներից էր Վաղարշակ Հայրապետի Ծատուրյանը, որը վաթսուն տարի առաջ ՍՍՀՄ սովետների I համագումարում իր ձայնը տվեց բանվորների ու գյուղացիների՝ աշխարհում առաջին միասնական միութենական բազմազգ պետության ըստեղծման օգտին: 1920 թվականի հունվարին Պետրոգրադում զինվորագրվելով լենինյան կուսակցությանը՝ մինչև արգասաբեր կյանքի վերջը հավատարիմ մնաց իր փայփայած դավանանքին և անձնվիրաբար մաքառեց դրա կենսագործման, վերածնված հայոց լեռնաշխարհի ծաղկման ու բարգավաճման համար:

Կենսաթոշակի անցնելուց հետո Վաղարշակ Ծատուրյանն աշակերտական մի քանի տետրերի վրա գրառումներ է կատարել ապրած օրերի մասին, թղթին հանձնել իր խոհերն ու մտորումները: Դրանց էջերից հառնում են մեր երկրում սխրալից աշխատանքի ու հոյակապ մեծագործությունների տարիներին մարտիկ-քաղաքացու ձևավորման, նրա հասունացման կեռմանները:

Շուշիի ռեալական ուսումնարանն ավարտելուց հետո 1912 թվականին Վաղարշակը մեկնում է Պետերբուրգ՝ ուսումնառությունը շարունակելու ակնկալությամբ: Բայց շուտով պարզվում է, որ նրա արհեստավոր հայրը ի վիճակի չէ նյութապես օգնել, սատար լինել որդուն: Սկսվում են դժվարին օրերը: Իր գոյությունը պահպանելու նպատակով նա աշխատանքի է անցնում Նիկոլաևյան երկաթուղու ֆինլանդական տեղամասի կայարաններում: Աշխատանքի բերումով նա շփվում է աշխատավոր մարդկանց հետ, ականատես լինում երկաթուղային բանվորների հեղափոխական ընդվզումներին: «Մինչև փետրվարյան հեղափոխությունը,— կարդում ենք նրա հուշերում,— ես քաղաքականությամբ բոլորովին չգայթակղված մի ջահել տղա էի: Հեղափոխությունից հետո կարծես թե խոր քնից արթնացա և աշխարհը տեսա բոլորովին այլ գույներով, քան այն պատկերացրել էի անցյալում»:

Տասնյակ տարիներ անց էլ Ծատուրյանը մի առանձին սիրով ու գորովանքով էր մտաբերում աշխատանքային առաջին ընկերներին, մասնավորապես, իր «հոգևոր հորը» և բարեկամին՝ 1915 թվականից կուսակցության անդամ Նիկոլայ Օվսյաննիկովին, որը ներքաշեց նրան նոր կյանքի հաստատման համար փոթորկվող պայքարի հորձանուտը: Նրա հետ մեկտեղ հայ երիտասարդը 1917 թ. ապրիլի 3-ին եղել է ֆինլանդական կայարանի հրապարակում, լսել Վ. Ի. Լենինի ճառը, որը մեծ տպավորություն թողեց նրա վրա: Հետագայում նրան բախտ վիճակվեց երկու անգամ ևս լսել Իլյիչին:

Հոկտեմբերյան հեղաշրջումից հետո Վ. Ծատուրյանն ընդգրկվել է հասարակական գործունեության ոլորտը: Երկաթուղային կայարանի բանվոր-ծառայողների ժողովում նա ընտրվել է արհմիության լիազոր, ապա և բանվորական կոոպերատիվի վարչության անդամ, ակտիվ մասնակցել վարչության ձեռնարկումներին: Վավերագրերը հավաստում են, որ երիտասարդ կոմունիստը ջանասեր աշխատանքի շնորհիվ առաջ է քաշվել, նշանակվել հրահանգիչ երկաթուղու ֆինլանդական տեղամասի քաղբաժնում, ապա և նույն տեղում՝ արհմիության շրջանային կոմիտեի պատասխանատու քարտուղար: Ի դեպ, աշխատանքին զուգընթաց 1918 թվականից նա սովորել է ինստիտուտում:

Վ. Ծատուրյանը ցնծությամբ է ընդունել Հայաստանում սովետական կարգերի հաստատման լուրը: Շուտով ՌԿ(բ)Կ Կենտկոմը Ռուսաստանում ապրող մի խումբ հայ կոմունիստների հետ նրան ևս ուղարկում է ազատագրված հայոց երկիրը մշտական աշխատանքի: 1921 թվականի փետրվարին նա արդեն Հայաստանում էր՝ Դիլիջանի տեղամասի հեղկոմի նա-

խագահը, ապա շրջգործկոմի և գավառային գործադիր կոմիտեի նախագահը:

Ծանր, դժվարին տարիներ էին: Հարկավոր էր սովից ու քայքայումից փրկել, արագ վերաշինել երկիրը, կառուցել... Մեր բազմաչարչար ժողովուրդը միայնակ չէր, նրան օգնության եղբայրական ձեռք են մեկնում Սովետական Ռուսաստանը, մյուս սովետական հանրապետությունները: Ժամանակակիցները հիշում են, թե Ծատուրյանն ինչպիսի եռանդով էր նվիրվել նոր կարգերի ամրապնդման, գյուղատնտեսության վերականգնման, դաշնակցականկուլակային խմբերի ջախջախման գործին: Իր հուշերում նա առանձին ջերմությամբ է պատմում Ալ. Մյասնիկյանի հետ ունեցած հանդիպման մասին: Ալեքսանդր Ֆյոդորովիչը Թիֆլիս մեկնելու ճանապարհին կանգ էր առել Դիլիջանում: Ականավոր լենինյանը նրան խորհուրդ էր տվել, սովորեցրել, թե ինչպես թեթևացնել գեղջուկների վիճակը, ինչպես ամրապնդել եղբայրական բարեկամությունը ադրբեջանական ժողովրդի հետ:

Սովետների երկրի ու մեր ժողովրդի կյանքում 1922 թվականը դարձավ քաղաքականպետական մեծագույն իրադարձությունների տարի, որոնց ակտիվ մասնակիցը եղավ նաև Վ. Ծատուրյանը: Հունվար-փետրվար ամիսներին կայացավ Հայաստանի սովետների I համագումարը, ուր լսվեց ու քննարկվեց Ալ. Մյասնիկյանի հաշվետու զեկուցումը հանրապետության կառավարության գործունեության մասին, ընտրվեցին պետական ղեկավար մարմիններ: Այդ համագումարում պատգամավոր Վ. Ծատուրյանն ընտրվեց Հայաստանի Կենտրոնական Գործադիր կոմիտեի անդամ: Նույն թվականի մարտին նա մասնակցեց Թիֆլիսում հրավիրված Ադրբեջանի, Հայաստանի և Վրաստանի կենտգործկոմների լիազոր կոնֆերանսին, որը վավերագրեց անդրկովկասյան սովետական հանրապետությունների ֆեդերացիայի դաշնակցային պայմանագիրը, այսինքն՝ ԱՍՖՍՀ-ի հիմնադրումը: Իսկ դեկտեմբերի առաջին կեսին Բաքվում տեղի ունեցած Անդրկովկասյան սովետների I համագումարը, ի թիվս այլ կարևորագույն հարցերի, որոշում ընդունեց ՍՍՀՄ-ի կազմի մեջ ԱՍՖՍՀ-ի մտնելու մասին: Այդ համագումարում Ծատուրյանն ընտրվեց ԱՍՖՍՀ-ի Կենտգործկոմի անդամ և միութենական սովետների I համագումարի պատգամավոր:

Նա երջանիկ էր այն գիտակցությամբ, որ ինքը մասնակիցն է համաշխարհային պատմական մեծագույն իրադարձության՝ լենինյան գաղափարներով տոգորված սովետական բոլոր ազգերի ու ժողովուրդների մեծ ու հզոր միության հիմնադրման: Եվ ո՛չ միայն մասնակիցը, այլև այդ դաշինքը կռողներից մեկը, դրա ամրապնդման ու հզորացման նվիրյալը:

Ընդլայնվում են նրա գործունեության շրջանակները: 1924 թ. Վ. Ծատուրյանը փոխադրվում է աշխատանքի Երևան: 1924—1927 թթ. նա եղել է Հայաստանի ժողովրդական տնտեսության խորհրդի նախագահության անդամ: Անելիք շատ կար: Անհրաժեշտ էր արագ վերականգնել հանրապետության արդյունաբերական պոտենցիալը, զարկ տալ էլեկտրիֆիկացիային, կառուցել արտադրական նոր կարողություններ: Իսկ միջոցները սուղ էին, մասնագիտական կադրերը՝ խիստ սակավ: Այդ պայմաններում պահանջվում էին ուժերի գերլարում, մեծ ջանքեր: Վ. Ծատուրյանը եռանդուն զբաղվում է և՛ ծխախոտի ֆաբրիկայի աշխատանքով, և՛ հումքի հայթայթմամբ, և՛ պոլիգրաֆիայի գործի կազմակերպման, և՛ «Արարատ» տրեստի աշխատանքի հարցերով, կազմակերպում և ղեկավարում է ժողտնտխորհի լեռնահանքային բաժինը և այլն:

Ամբողջ երկրով մեկ օրավուր լայն թափ ու ծավալ էր առնում սոցիալիստական շինարարությունը: Օրվա հրատապ խնդիրն էր դառնում սեփական բարձրորակ տեխնիկական կադրերի, տնտեսավարների պատրաստումը:

ՀԿԿ Կենտկոմը 1927 թվականին մի խումբ աշխատողների հետ Վ. Ծատուրյանին ևս ուսանելու է գործուղում Մոսկվա: Անցնում են ուսումնառության լարված տարիները: 1930 թվականին նա ավարտում է ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության բարձրագույն խորհրդի արդյունաբերական ակադեմիայի առաջին գումարման դասընթացը: Ավարտական վկայականն ստորագրել էր ակադեմիայի խորհրդի նախագահ, ՍՍՀՄ ԺՏԲԽ-ի նախագահ Վալերիան Կույբիշևը: Ակադեմիայում ուսանելու տարիներին նա միաժամանակ դասախոսություններ էր լսել գունավոր մետաղների ու ոսկու ինստիտուտում և նույն 1930 թ. պաշտպանել դիպլոմային աշխատանքի նախագիծը: Ուսանելու տարիներին նա ծանոթացել էր Զանգեզուրի պղնձաձուլական կոմբինատի գործունեության նյութերին, և դիպլոմային աշխատանքի թեման նվիրված էր Զանգեզուրի պղնձահանքերի բազայի վրա մետաղաձուլական խոշոր գործարանի կառուցմանը:

1930 թվականին ինժեներ-մետալուրգը նշանակվում է Զանգեզուրի պղնձաձուլական կոմբինատի դիրեկտոր:

Ասենք, որ հենց Ղափանում առաջին անգամ խաչաձևվել են երկու հրաշալի մարդկանց, հետագայում հանրապետության գունավոր մետալուրգիայի երկու ականավոր մասնագետների ու կազմակերպիչների գործունեության ճանապարհները: Հայաստանում քաղաքացիական կռիվների ակտիվ մասնակից, 1920 թվականից ՍՄԿԿ անդամ, Զանգեզուրի գավառային գործադիր կոմիտեի նախագահ Աղասի Կնդեղցյանը 1928—1930 թվականներին ղեկավարում էր պղնձաձուլական վերոհիշյալ կոմբինատը: Այդ պաշտոնում Վ. Ծատուրյանը փոխարինեց Ա. Կնդեղցյանին: ՀԿԿ Կենտկոմի որոշմամբ վերջինս մեկնում է Մոսկվա՝ ուսանելու նույն ակադեմիայում և ինստիտուտում: 1934 թվականին ինժեներ-մետալուրգ Կնդեղցյանը վերադառնում է Ղափան և ստանձնում կոմբինատի դիրեկտորի պաշտոնը, իսկ Վ. Ծատուրյանը նշանակվում է «Զակցվետմետ» տրեստի կառավարիչ: Տարբեր ժամանակներում նրանք երկուսն էլ ղեկավարել են Ալավերդու հանքվարչությունը, աշխատել «Հայպղինձ» տրեստում:

Չնայած պղնձարդյունաբերության բնագավառում կատարված որոշակի տեղաշարժերին, այնուամենայնիվ, եղածը չէր կարող գոհացնել հանրապետության կուսակցական կազմակերպությանը: Երբ Վ. Ծատուրյանն աշխատանքի անցավ, ապա նա Ղափանում գտավ ՀԿԿ Կենտկոմի բրիգադին, որն զբաղվում էր պղնձի հանույթի ավելացման և ձուլման, կոմբինատի աշխատանքի կազմակերպման բարելավման հարցերով: Բանն այն էր, որ հանքերում գերիշխում էր ձեռքի աշխատանքը, պղնձի հանքաքարի և տեսակավորման ժամանակ լինում էին մեծ կորուստներ, կոմբինատում ցածր էր աշխատանքի արտադրողականությունը, բարձր արտադրանքի ինքնարժեքը, խիստ սակավ՝ բանվորական ձեռքը... Չորս տարիների ընթացքում Վ. Ծատուրյանը մեծ գործ կատարեց կոմբինատի վերակառուցման, արտադրական պրոցեսների մեքենայացման, պղնձի հանույթի ավելացման ու ձուլման բարելավման, ինչպես և արտադրության էկոնոմիկայի կարգավորման նպատակով: Նախագծվեց ու կառուցվեց հարստացուցիչ ֆաբրիկան, շահագործման հանձնըվեց երկաթուղու Մինջևան—Ղափան հատվածը: Հայաստանի կոմերիտմիությունը, որն ստանձնել էր պղնձաարդյունաբերության շեֆությունը, հարյուրավոր երիտասարդների աշխատանքի ուղարկեց հանքերը:

Հետագա տարիներին Ծատուրյանը ղեկավարել է Ալավերդու պղնձաձուլական կոմբինատը, աշխատել «Հայպղինձ» տրեստի գլխավոր ինժեներ և կառավարիչ, ապա՝ «Անդրմոլիբդեն» տրեստի կառավարիչ: Նա եղել է հանրապետության գիտությունների ակադեմիայի երկրաբանական գիտությունների ինստիտուտի գիտական խորհրդի անդամ:

Մեծ է Վաղարշակ Ծատուրյանի վաստակը գունավոր մետալուրգիայի զարգացման մարզում: Նա ո՛չ միայն ճանաչված մասնագետ էր ու արտադրության հմուտ հրամանատար, այլև հասարակական ակտիվ գործիչ: Նա ապրեց գեղեցիկ ու լիարյուն կյանքով, հավատարմորեն ծառայեց ժողովրդին, ազնիվ գործունեությամբ նպաստեց սոցիալիստական մեր մեծ հայրենիքի հզորացմանն ու բարգավաճմանը:

Վ. Հ. ՍԱՐԳՍՅԱՆ

## Ռազմապորտային շարժման ակունքների մոտ

# ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ՌԱԶՄԱՀԱՅՐԵՆԱՍԻՐԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԷՋԵՐԻՑ

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ դաստիարակության համակարգում կարևոր է երիտասարդության ռազմահայրենասիրական դաստիարակության գործը, որն արդի պայմաններում կենսական նշանակություն ունի: Այդ առումով որոշակի հետաքրքրություն է ներկայացնում նախապատերազմյան տարիներին երիտասարդության ռազմահայրենասիրական դաստիարակության ասպարեզում կուսակցական և կոմերիտական կազմակերպությունների փորձի ուսումնասիրումը:

Երեսնական թվականների սկզբին, միջազգային հարաբերությունների սրման պայմաններում, հրամայական անհրաժեշտություն դարձավ Սովետական Միության պաշտպանունակության ամրապնդումը, սովետական հանրությանը, հատկապես երիտասարդությանը հայրենիքի պաշտպանության պատրաստակամության ոգով դաստիարակելը: 1934 թ., ՀամԿ(բ)Կ XVII համագումարը նշեց, որ միջազգային իրադրությունը պահանջում է ձեռք առնել բոլոր միջոցները, որպեսզի պաշտպանենք մեր երկիրը անակնկալներից և պատրաստ լինենք այն պաշտպանելու հարձակումից (XVII съезд ВКП(б). Стенографический отчет. М., 1934, стр. 14): Իսկ կուսակցության XVIII համագումարը, երբ արդեն Եվրոպայում սկըսվում էր ֆաշիստական ագրեսիան, սովետական ժողովրդին կոչ արեց ամեն կերպ ամրապնդել կարմիր բանակի և ռազմածովային կարմիր նավատորմի մարտական հզորությունը (XVIII съезд ВКП(б). Стенографический отчет. М., 1939, стр. 15):

Նախապատերազմյան տարիներին իրեն բազմակողմանիորեն դրսևորեց կոմերիտմիությունը՝ երկրի պաշտպանունակության ամրապնդման համար երիտասարդության ուժերի ակտիվացման, սովետների երկրի պատանիներին և աղջիկներին կոմունիստական քարոզչականությամբ համակելու, անհրաժեշտ դեպքում զենքը ձեռքին սոցիալիստական հայրենիքի պաշտպանության դիրքերում մարտնչելու պատրաստակամության ոգով դաստիարակելու գործում: Նշանակալիորեն ուժեղացավ լենինյան կոմերիտմիության մասնակցությունը ՍՍՀՄ զինված ուժերի ամրապնդմանը, բանակի, նավատորմի և ավիացիայի համար կադրերի պատրաստմանը: Տարեցտարի ավելանում էր կոմերիտականների թիվը զինակոչիկների շարքերում, անում կարմիրբանակայինների ու նավաստիների ընդունելությունը ՀամԼԿԵՄ կազմում:

Կուսակցական կազմակերպությունների ակտիվ աջակցությամբ կոմերիտմիությունը մեծ օգնություն էր ցույց տալիս ռազմական կոմիսարիատներին՝ երիտասարդությանը նախապատրաստելու իսկական զինվորական ծառայության համար: Աշխատանքները զինակոչիկների շրջանում տարվում էին հիմնականում երեք ուղղությամբ: Առաջին պլանում էր ապագա մարտիկների քաղաքաքաղաքական դաստիարակումը, ապա նրանց ռազմաֆիզիկական նախապատրաստումը և երիտասարդության որոշ մասի անգրագիտության և կիսագրագիտության վերացումը:

Հայաստանում նախազինակոչիկներին և զինակոչիկներին նախապատրաստում էին հիմնականում շրջանային կենտրոններում գործող վարժակայաններում, կոմերիտական կազմակերպություններին կից գործող ռազմական խմբակներում: Հանրապետության կոմերիտական կազմակերպությունները հաջողությամբ օգտագործում էին նաև զորացրված կարմիրբանակայինների ռազմական գիտելիքները: Վարժակայանները ո՛չ միայն իրականացնում էին երիտասարդության ռազմաֆիզիկական նախապատրաստումը, այլև խոշոր դեր էին խաղում նրանց անգրագիտության և կիսագրագիտության վերացման գործում: 1932—1933 թվականներին Ալավերդու շրջանում գործում էին հինգ վարժակայաններ, որտեղ զինակոչիկ կոմերիտականներն ընդգրկվում էին պարապմունքներում: ՀԼԿԵՄ Կենտկոմի քարտուղարությունը 1932 թ. դեկտեմբերին, քննարկելով Երևանի վարժակայանի գործունեությունը, նշել է, որ նրա աշխատանքներում դեռևս կան շատ թերություններ: Դրանք վերացնելու համար որոշվում է ուժեղացնել վարժակայանի քաղաքական-դաստիարակչական աշխատանքները, նորացնել դիտողական նյութերը: Հանրապետության վարժակայանների գործունեությունը բարելավելու համար սահմանվել էր հանրապետական փոխանցիկ դրոշ:

Զինակոչիկների նախապատրաստման աշխատանքները հատկապես լավ էր կազմակերպում Գորիսի շրջանի կոմերիտական կազմակերպությունը: Շրջանում գործում էին 34 ռազմական խմբակներ, ուր ընդգրկված էին 1.500 հոգի, նրանցից 1.100-ը կոմերիտականներ էին: 1933 թ. մարտ ամսին գումարված զինակոչիկների շրջանային հավաքը, ամփոփելով կատարած աշխատանքները, որոշեց «ոչ մի անգրագետ և կիսագրագետ չուղարկել բանակ» («Ավանգարդ», 28 մարտի 1933 թ.): 1933 թ. օգոստոսի 20-ից հանրապետությունում հայտարարվել է միամսյա գրոհ՝ զինակոչիկների անգրագիտությունը վերացնելու համար: Այդ նպատակով օրինակելի աշխատանք են կատարել Երևանի, Էջմիածնի (Վաղարշապատ), Մեղրիի կոմերիտական կազմակերպությունները:

Տարեցտարի հանրապետությունում բարելավվել են զինակոչիկների շրջանում տարվող աշխատանքները, նրանց շարքերում ավելացել է կոմերիտականների թիվը, իսպառ վերացել անգրագիտությունը և կիսագրագիտությունը: Կարմիր բանակ են մեկնել գրագետ, ֆիզիկապես առողջ, քաղաքականապես կոփված երիտասարդներ: Կոմերիտական, Պաշտպանության կազմակերպությունները սիստեմատիկաբար կատարելագործում էին իրենց աշխատանքները: 1934 թ. 10 ամիսների ընթացքում Հայաստանի Պաշտպանության կենտրոնական խորհրդի շրջիկ հրաձգային դպրոցը Ամասիայի, Վարդենիսի (Բասարգեչար), Արարատի (Վեդի) և Արտաշատի (Ղամարլու) շրջաններում ռազմական ուսուցում է կազմակերպել 27 դպրոցներում, 3 ՄՏԿ-ներում, մեկ սովխոզում և Արարատի ցեմենտի գործարանում: 1934 թ. զինակոչիկների 8,2 տոկոսը ՀամԿ(բ)Կ անդամներ էին, 47,3 տոկոսը՝ կոմերիտականներ[1]: Եթե նախորդ տարիներին շարային ծառայությունների համար պիտանի էին զինակոչային հասակի երիտասարդության 45—50, ապա 1937 թ.՝ արդեն 70—80 տոկոսը («Ավանգարդ», 1 սեպտեմբերի 1937 թ.): 1940 թ. կուսակցական և կոմերիտական կազմակերպությունների ակտիվ օժանդակությամբ ավելի մեծ որակական փոփոխություններ էին կատարվել զինակոչիկների նախապատրաստման գործում: Լենինական քաղաքի զինակոչիկների 74,7 տոկոսը հանձնել էին «վորոշիլովյան հրաձիգի», 80,8 տոկոսը ՀՕՔՊ-ի և 84 տոկոսը ՊԱՊ-ի նորմաները: Զինակոչիկների թվում ոչ մի անգրագետ չկար, նրանց 96 տոկոսը տիրապետում էր ռուսաց լեզվին, 77 տոկոսը կոմերիտականներ էին: Հանրապետությունում մեծ ուշադրություն էր նվիրվում զինակոչիկների ռուսաց լեզվի ուսուցմանը: 1940 թ. ռուսաց լեզուն սովորելու ենթակա զինակոչիկների 78 տոկոսն ընդգրկված էր 454 խմբակներում[1]:

Բանակի և նավատորմի ամրապնդման կուսակցության միջոցառումների թվում հատուկ տեղ է գրավում 1939 թ. սեպտեմբերին ՍՍՀՄ Գերագույն սովետի չորրորդ նստաշրջանում ընդունված համընդհանուր զինվորական պարտավորության մասին օրենքը: Այն ամրապնդեց ՍՍՀՄ զինված ուժերի անցումը միասնական կադրային կառուցվածքի: Նոր օրենքով ծառայության ժամկետը շարքային և սերժանտական անձնակազմի համար ավելացվեց, զինակոչային տարիքը իջեցվեց:

Հայաստանի կոմերիտականները և երիտասարդները խանդավառությամբ էին մեկնում զինվորական ծառայության: Հանրապետության ռազմական կոմիսարիատները ստանում էին հարյուրավոր նամակներ, որոնց հեղինակները խնդրում էին իրենց վաղաժամկետ զինակոչել, հրաժարվում էին ընձեռված արտոնությունից:

Երեսնական թվականներին ՍՍՀՄ զինված ուժերի տեխնիկական վերազինման պայմաններում հատկապես սուր ձևով դրվեց որակյալ ռազմական կադրերի պատրաստման հարցը: Կոմերիտմիությունն ակտիվորեն մասնակցեց ռազմական ուսումնական հաստատությունների կոմպլեկտավորմանը: Միայն 1935 թ. ռազմական ուսումնարաններ ընդունվեցին 10.600 կոմունիստներ և կոմերիտականներ, այդ թվում՝ Հայաստանի կոմերիտմիության բազմաթիվ սաներ:

1933 թ. հոկտեմբերին ՀԼԿԵՄ Կենտկոմի բյուրոյի որոշմամբ ՀԼԿԵՄ Երևանի և Լենինականի քաղկոմներին կից բացվեցին 9-ամսյա նախապատրաստական դասընթացներ ռազմածովային ուսումնարաններ ընդունվելու համար, նույն թվականին Սևաստոպոլի և Լենինգրադի ուսումնարաններում սովորելու գործուղվեցին 12 կոմերիտականներ, 1937 թ.՝ համամիութենական ավիատեխնիկների դպրոց ընդունվեցին 42 կոմերիտականներ[2]: Ռազմական ուսումնա-

1 ՄԼԻ ՀՄԿԱ, ֆ. 1, ց. 25, գ. 10, թ. 69:

1 ՄԼԻ ՀՄԿԱ, ֆ. 1, ց. 29, գ. 37, թ. 238:

2 ՄԼԻ ՀՄԿԱ, ֆ. 48, ց. 5, գ. 43, թ. 29—38:

րանններ ընդունվելու ձգտումը հանրապետության երիտասարդության շրջանում ուժգնացավ 1938—1940 թթ., երբ ռազմական մասնագիտությունը դարձավ հանրաճանաչներից մեկը: Բազմաթիվ երիտասարդներ ընդունվեցին ավիացիոն, հրետանային, տանկային և այլ ուսումնարաններ: 1939 թ. Երևանում բացվում է հատուկ հրետանային միջնակարգ դպրոց: Երեք տարի սովորելուց հետո դպրոցի շրջանավարտները կարող էին ընդունվել ռազմական ուսումնարաններ:

1931 թ. հունվարի 25-ին ՀամԼԿԵՄ IX համագումարը բոլոր կոմերիտականների անունից ստանձնեց ռազմաօդային ուժերի շեֆությունը: Համագումարի՝ «Կոմերիտակա՜ն— դեպի ինքնաթիռ» կոչը լայն արձագանք գտավ բազմահազար երիտասարդների շրջանում: 1933—1935 թթ. լենինյան կոմերիտմիությունը 7 միլիոն ռուբլի փոխանցեց ռազմաօդային ուժերի ռազմական հզորության ամրապնդման համար, որից 4,5 միլիոն ռուբլին՝ ՀամԼԿԵՄ X համագումարի անվան էսկադրիլիայի կառուցմանը (Славный путь Ленинского комсомола М., 1978, стр. 258):

ՀԼԿԵՄ Կենտկոմի բյուրոն 1933 թ. ապրիլի 8-ին որոշում է Հայաստանի կոմերիտականների ուժերով կառուցել ՀամԼԿԵՄ X համագումարի անվան էսկադրիլիայի մեկ օդանավ: Օդանավի կառուցման համար միջոցների հավաքման շարժումը արագորեն տարածվեց հանրապետությունում: Արդեն մայիս ամսին Ստեփանավանի, Մեղրիի, Եղեգնաձորի (Քեշիշքենդ) շրջանների, Կիրովականի քիմիական կոմբինատի կոմերիտական կազմակերպությունները ավարտել էին միջոցների հավաքումը: Երևանի կոմերիտական կազմակերպությունը օդանավի կառուցման համար հավաքեց 30.000 ռուբլի: 1933—1934 թթ. ընթացքում ՀԼԿԵՄ Երևանի կազմակերպության նախաձեռնությամբ կոմերիտականների հավաքած միջոցներով գնվել և Պաշըավիաքիմի աերոակումբին է հանձնվել ուսումնական երեք ինքնաթիռ: 1934 թ. ապրիլին ՀԼԿԵՄ Կենտկոմը որոշեց կառուցել Ղուկաս Ղուկասյանի անվան ինքնաթիռ: Այդ որոշմամբ մայիսի 10—30-ը հանրապետությունում անցկացվեցին կոմերիտական շաբաթօրյակներ և հավաքված գումարը հատկացվեց ինքնաթիռի կառուցման ֆոնդին: Կառուցված ինքնաթիռների առկայությունը, կոմերիտմիության նախաձեռնությամբ 30-ական թվականների առաջին կեսին օդանավակայանների և պարաշյուտային աշտարակների շինարարությունը նպաստեցին հանրապետությունում օդագնացության զարգացմանը:

1933 թ. օգոստոսին ՀԿ(բ)Կ Կենտրոնական կոմիտեի որոշմամբ Երևանում սկսեց գործել Պաշըավիաքիմի աերոակումբը: Ակումբի թռիչքային դաշտի կառուցման համար կոմերիտմիությունը տրամադրել էր հազարավոր բանվորական ձեռքեր: 1934 թ. Հայաստանում ընկրսեցին գործել առաջին պլաներիստների խմբակները, որոնք օդաչուական դպրոցների համար նախապատրաստեցին պատանիներին և աղջիկներին: 1935 թ. հոկտեմբերին Երևանում պլաներային կայանը տվեց իր առաջին շրջանավարտները: Այս և հետագա տարիների շրջանավարտների մեծ մասը շարունակում է սովորել օդաչուական դպրոցներում:

1934 թ. սեպտեմբերի 7-ին ՀամԼԿԵՄ Կենտկոմը և Պաշըավիաքիմի կենտրոնական խորհուրդը որոշում ընդունեցին պարաշյուտային սպորտի մասին: Նույն թվականի սեպտեմբերի 24-ին Հայաստանում առաջին անգամ կոմերիտականներ Մ. Մեղավորյանը և Գ. Սարգըսյանը կատարում են պարաշյուտային ցատկեր, իսկ տարվա վերջերին կոմերիտական կազմակերպությունների նախաձեռնությամբ Երևանում, Լենինականում, Կիրովականում, Գորիսում, Ղափանում և Քանաքեռի ՀԷԿ-ի շինարարությունում սկսում են կառուցվել առաջին պարաշյուտային աշտարակները: Կառուցված աշտարակների առկայությունը մեծ հետաքըրքրություն է հարուցում երիտասարդության շրջանում, լայն ծավալ են ստանում մասսայական պարաշյուտային ցատկերը:

Օդագնացության առաջին էնտուզիաստների թվում էին նաև շատ աղջիկներ: Կոմերիտուհիներ Նինել Ղարաջյանը և Գոհար Ծահուվարյանը դարձան առաջին հայ կին պարաշյուտիստները: Նրանք միաժամանակ Հայաստանում աղջիկներից առաջինը նստեցին ինքնաթիռի ղեկի մոտ:

1936 թ. վերջերին սոցիալիզմի երկրին 150 հազար նոր օդաչու տալու մասին Մենժինսկու անվան ավիացիոն գործարանի բանվորների և ծառայողների կոչը լայն արձագանք գտավ Հայաստանի կոմերիտական կազմակերպություններում: Երևանի աերոակումբի պետ, օդաչու Վ. Դավթյանը պարտավորվեց 1937 թ. պատրաստել չորս նոր օդաչու, հրահանգիչ Մ. Սաատրյանը՝ վեց օդաչու, 10 պարաշյուտիստ և ութը պլաներիստ, հրահանգիչ Գ. Բաղդասարյանը՝ 10 օդաչու, Լենինականի աերոակումբի թռիչքային մասի պետ Մ. Մեղավորյանը՝ 10 օդաչու («Ավանգարդ», 18 դեկտեմբերի, 20 դեկտեմբերի 1936 թ.):

Երեսնական թվականներին ՀամԼԿԵՄ-ը ակտիվորեն մասնակցեց հրաձգության զարգացմանը: 1933 թ. երկրում շարժում ծավալվեց «Վորոշիլովյան հրաձիգ» կրծքանշանին արժանանալու համար: Կոմերիտականների ուժերով



կառուցվում էին հրաձգարաններ, պարբերաբար անցկացվում հրաձգային մրցումներ:

Հայաստանի կոմերիտական, Պաշըավիաքիմի կազմակերպությունների գործնական քայլերի շնորհիվ հրաձգությունը ևս լայն մասսայականություն ստացավ կոմերիտականների և երիտասարդների շրջանում: Եթե 1933 թ. Հայաստանում պատրաստվեցին 600 «վորոշիլովյան հրաձիգ», ապա հաջորդ տարի այդ թիվը հասավ 3.395-ի, 4.000 կոմերիտականներ տիրապետում էին մարտական հրացանին: Հետագայում ավելի շատ կոմերիտականներ և երիտասարդներ հանձնեցին «Վորոշիլովյան հրաձիգ» կրծքանշանի նորմաները: 1938 թ. կոմերիտական կազմակերպությունների ակտիվ օժանդակությամբ հանրապետության Պաշըավիաքիմի կազմակերպությունները պատրաստեցին առաջին աստիճանի 7.078, երկրորդ աստիճանի 155 «վորոշիլովյան հրաձիգ» և 560 գնդացրորդ[1]:

1935—1940 թթ. ՀԼԿԵՄ Կենտկոմը, կոմերիտմիության քաղկոմները և շրջկոմները՝ Պաշըավիաքիմի հետ կազմակերպեցին մի շարք ռազմականացված երթեր, արշավներ քաղաքացիական կռիվների վայրերով: Երթերը և արշավները նվիրվում էին Հայաստանում սովետական իշխանության հաստատման, կարմիր բանակի, ՀամԼԿԵՄ-ի և ՀԼԿԵՄ-ի տարեդարձերին: Երթերի մասնակիցները հանդիպում էին ուսենում գյուղերի աշխատավորների, զորամասերի զինվորների հետ, հավաքում էին հուշեր քաղաքացիական կռիվների մասին:

Ղեկավարվելով ՀԿ(բ)Կ Կենտրոնական կոմիտեի ցուցումներով, 1938—1940 թթ. հանրապետության կոմերիտական կազմակերպությունները ընդլայնեցին շեֆական կապերը զորամասերի հետ: Ստեփանավանի շրջանի, Երևանի հայկական երկամյա և ռուսական մանկավարժական ինստիտուտների կոմերիտականները մեկնեցին ենթաշեֆ զորամասեր: Զորամասերի կոմերիտականներն օգնում էին իրենց շեֆ կազմակերպությունների անդամների ռազմական ուսուցման կազմակերպմանը: Համատեղ կազմակերպվում էին մարտիկների և ուսանողների հանդիպման երեկոներ, սպորտային մրցումներ, ինքնագործ խմբերի ելույթներ: Երկամյա մանկավարժական ինստիտուտի կոմերիտական կազմակերպության ինքնագործ խմբերը հանգստյան օրերին լինում էին զորամասերում և կազմակերպում էին բանակային երիտասարդության հանգիստն ու ժամանցը, ենթաշեֆ զորամասերին օգնում էին գրադարանով, կազմակերպում էին դասախոսություններ: Մասնակցելով միմյանց կոմերիտական ժողովներին, կատարում էին կոմերիտական աշխատանքի փորձի փոխանակում: Հատկապես ամուր էին շեֆական կապերը հանրապետության սահմանամերձ շրջանի երիտասարդության և սահմանապահների միջև, որը էական դեր էր կատարում երիտասարդության ռազմական պատրաստականության բարձրացման ասպարեզում:

1939—1941 թթ. հանրապետության կոմերիտական կազմակերպության ուշադրության կենտրոնում էր նաև ուսանող երիտասարդության ռազմահայրենասիրական դաստիարակությունը: Երևանի պոլիտեխնիկական, անասնաբուժական-անասնաբուծական, գյուղատնտեսական ինստիտուտների հարյուրավոր ուսանողներ 1940 թ. համամիութենական միջբուհային պաշտպանական մրցումների ժամանակ ռազմական տեխնիկայի ուսումնասիրման գործում հիանալի օրինակներ ցուցադրեցին և մրցանակային տեղեր գրավեցին: Միայն պոլիտեխնիկական ինստիտուտում մրցումների ժամանակաշրջանում պատրաստվեցին 797 ծանր գնդացրորդ, 276 «վորոշիլովյան հրաձիգ», 819 հոգի հանձնեցին ՀՕՔՊ-ի նորմաները, իսկ 310 հոգի դարձան «Պատրաստ սանիտարական պաշտպանության» կրծքանշանակիրներ[1]:

Երիտասարդությանը հայրենիքի պաշտպանության համար նախապատրաստելու գործում կարևոր դեր էր խաղում նաև ֆիզկուլտուրային կազմակերպությունը: Երիտասարդության ֆիզիկական դաստիարակության հիմքը շարունակում էր մնալ 1931 թ. ընդունված և 1939 թ. վերափոխված ՊԱՊ-ի միասնական համալիրը:

1933 թ. սեպտեմբերի 18-ին Երևանում սկըսվում է համահայաստանյան առաջին սպարտակիադան, ուր հանրագումարի են բերվում Հայաստանի ֆիզկուլտուրային շարժման 10 տարվա արդյունքները: 1934—1940 թթ. հանրապետության կուսակցական և կոմերիտական կազմակերպությունները իրագործում են մի շարք միջոցառումներ Հայաստանում սպորտի և ֆիզկուլտուրայի զարգացման համար: Կառուցվում են ստադիոններ, սպորտդահլիճներ, խաղահրապարակներ, անցկացվում են ֆիզկուլտուրային օրեր, շրջանային սպարտակիադաներ, մասսայական լեռնային տուրիստական արշավներ, որոնք մեծ դեր խաղացին երիտասարդության ֆիզիկական կոփման գործում:

1941 թ. ապրիլին անցկացվեցին համամիութենական մարմնամարզական մրցումներ, որին ակտիվորեն մասնակցեցին նաև Հայաստանի կոմերիտականները և միութենական հանրապետությունների շարքում գրավեցին չորրորդ

[1] *ՄԼԻ ՀՄԿԱ, ֆ. 48, ց. 5, գ. 235, թ. 61:*

[1] *ՄԼԻ ՀՄԿԱ, ֆ. 48, ց. 5, գ. 325, թ. 37:*

տեղը: Համամիութենական արշավները և մրցումները օժանդակեցին երիտասարդության նախապատրաստմանը հայրենիքի պաշտպանությանը, դաստիարակեցին տոկունություն, նպատակին հասնելու համառություն, կարգապահություն, կազմակերպվածություն և կոլեկտիվիզմ:

Նախապատերազմյան տարիներին ՀամԿ(բ)Կ Կենտրոնական կոմիտեն հատուկ ուշադրություն էր դարձնում կոմերիտական ակտիվի ռազմական ուսուցմանը և ֆիզիկական կոփմանը: Ռազմական գործի ուսուցմանը անձնական օրինակ էին ցույց տալիս կոմերիտական աշխատողները: 1940—1941 թթ. Հայաստանի կոմերիտմիության 1.570 ղեկավար ակտիվիստներ հանձնեցին ՊԱՊ-ի համալիրի առաջին աստիճանի նորմաները:

Հանրապետության երիտասարդության ռազմահայրենասիրական դաստիարակության գործում խոշոր դեր էր կատարում ՀԼԿԵՄ Կենտկոմի օրգան «Ավանգարդ» թերթը: Թերթում պարբերաբար տպագրվում էին նյութեր հանրապետական Իսպանիայի ռազմաճակատներից, Արկտիկան, Հյուսիսային բևեռը ուսումնասիրող օդաչուների, չելյուսկինցիների, պապանինցիների խիզախությունների, Խասան լճի, Խալխին գոլի, սովետա-ֆիննական մարտերի հերոսների մասին: Այդ բոլորը կարևոր դեր էին խաղում սովետական հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի դաստիարակման գործում:

Նախապատերազմական տարիներին ռազմահայրենասիրական և ֆիզիկական դաստիարակության հարցերը բազմիցս դարձան ՀԼԿԵՄ IX, XI և XII համագումարների և Կենտկոմի պլենումների, բյուրոյի նիստերի, ՀԼԿԵՄ քաղաքային ու շրջանային կոմերիտական կազմակերպությունների կոնֆերանսների, քաղկոմ-շրջկոմների պլենումների քննարկման առարկա, ուր, վեր հանելով վերոհիշյալ աշխատանքներում եղած թերությունները և սխալները, ընդունվում էին կոնկրետ միջոցառումների ծրագրեր: 1939 թ. հուլիսին կայացած ՀԼԿԵՄ Կենտկոմի պլենումը «բոլոր կոմերիտականների և առաջին հերթին կոմերիտական ղեկավար ակտիվի առաջնահերթ պարտականությունն էր համարում խոր կերպով տիրապետել ռազմական գիտելիքներին, անձամբ զբաղվել պաշտպանական մասսայական աշխատանքներով, ապահովելով կոմերիտականների ավանգարդային դերը մեր սոցիալիստական հայրենիքի պաշտպանության գործն է՛լ ավելի ամրապնդելու համար»[1]:

Երիտասարդ սերնդի դաստիարակման նըկատմամբ կուսակցության և կոմերիտմիության մշտական հոգատարությունն իր պտուղները տվեց Հայրենական մեծ պատերազմի տարիներին: Երիտասարդները և աղջիկները մարտի դաշտում և թիկունքի աշխատանքում իրենց դրսևորեցին որպես սոցիալիստական երկրի իսկական և քաջ հայրենասերներ:

[1] *ՄԼԻ ՀՄԿԱ, ֆ. 48, ց. 5, գ. 222, թ. 17—18:*

**Ա. Ս. ՎԻՐԱԲՅԱՆ**



Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի **բաժին**՝ 52—05—58, կուսակցական կյանք **բաժին**՝ 52—25—43, էկոնոմիկայի **բաժին**՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի **բաժին**՝ 52—99—34, խմբագրության **վարիչ**՝ 52—99—36:

*Հանձնված է շարվածքի՝ 14.05.82 թ.: Ստորագրված է տպագրության 10.06.82 թ.: ՎՖ 03154: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրություն՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 15532: Պատվեր՝ 1218:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պող. № 2:*

Типография издательства ЦК КП Армении.

Ереван-23, пр. Орджоникидзе, 2.

# Ինչ կարդալ

**Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երկերի լիակատար ժողովածու:** *Հ. 39: Հունիս—դեկտեմբեր 1919: «Հայաստան» հրատ., 1982:*

**В. И. Ленин, КПСС об экономии и бережливости.** М., Политиздат, 1982.

*Գրքում զետեղված են Վ. Ի. Լենինի աշխատությունները և քաղվածքներ այդ աշխատություններից, փաստաթղթեր (լրիվ կամ համառոտ) կուսակցական համագումարներից ու պլենումներից, ՍՄԿԿ Կենտկոմի որոշումներից, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի ելույթները, ինչպես և ՍՄԿԿ Կենտկոմի ու ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի փաստաթղթերը տնտեսման, խելամիտ տնտեսավարման պրոբլեմների վերաբերյալ:*

**Развитие рабочего класса в социалистическом обществе.** М., «Наука», 1982:

*Գրքում բացահայտված են բանվոր դասակարգի նշանակությունն ու դերը սոցիալական պրոբլեմների լուծման գործում, նրա զարգացման հիմնական տենդենցները:*

*Զետեղված աշխատություններում քննարկվում են բանվոր դասակարգի գործունեության կարևորագույն պրոբլեմները, վերլուծվում են ռեալ սոցիալիզմի առաջընթացի, ժողովուրդների բարեկամության, խաղաղության ամրապնդման համար բանվոր դասակարգի պայքարի հիմնական ուղղություններն ու մեթոդները:*

*Գրքի երկրորդ մասում ՍՍՀՄ-ի, ԲԺՀ-ի, ՀԺՀ-ի, ԳԴՀ-ի և ՉՍՍՀ-ի գիտնականներից բաղկացած հեղինակային կոլեկտիվը ներկայացրել է այդ երկրներում բանվոր դասակարգի զարգացման ընդհանուր օրինաչափություններն ու ազգային-պատմական յուրահատկությունները, ցույց տվել աշխատանքի պայմաններում ու կենցաղում կատարված փոփոխությունների բարերար ազդեցությունը բանվորների կուլտուրայի, որակավորման, հասարակական կյանքում նրանց ակտիվության բարձրացման վրա:*

**В. Шандра — Газета, пропаганда, жизнь: вопросы теории и методики. М., «Мысль», 1982.**

*Ժամանակակից պրակտիկայի հիման վրա համակողմանի լուսաբանված են զարգացած սոցիալիզմի ժամանակաշրջանի սովետական մամուլում մարքս-լենինյան տեսության պրոպագանդման գիտական հիմքերը և մեթոդաբանությունը, վերլուծված են լրագրում մարքսիզմ-լենինիզմի պրոպագանդման մեթոդի հիմնական տարրերը:*

**Г. Гарибджанян — Камо за рубежом.** Изд. «Айастан», 1982.

*Արխիվային նյութերի և գրական աղբյուրների հիման վրա նկարագրված է պրոֆեսիոնալ հեղափոխական Ս. Ա. Տեր-Պետրոսյանի (Կամո) հեղափոխական գործունեությունը արտասահմանում (1906—1912 թթ.), Վ. Ի. Լենինի, ինչպես և բուլղարական, գերմանական սոցիալ-դեմոկրատների, միջազգային կոմունիստական շարժման ականավոր գործիչների հետ ունեցած հանդիպումներն ու սերտ փոխհարաբերությունները:*

**Л. Абрамян — Главный труд Канта.** Изд. «Айастан», 1981.

*Գիրքը նվիրված է Կանտի «Զուտ բանականության քննադատություն» գլխավոր աշխատության հիմնական դրույթների քննական վերլուծությանը:*

*Հեղինակի ուշադրության կենտրոնում է Կանտի աշխատության ռացիոնալ բովանդակությունը, որը դրական ազդեցություն է ունեցել փիլիսոփայական մտքի, մասնավորապես գերմանական կլասիկ փիլիսոփայության՝ մարքսիզմի տեսական աղբյուրներից մեկի հետագա զարգացման վրա: Դրա հետ մեկտեղ քննադատվում են կանտյան փիլիսոփայության թույլ կողմերը՝ իդեալիզմի և ագնոստիցիզմի դրսևորումները:*

**Ա. ԶԻԼԻՆԳԱՐՅԱՆ— Բնության պահպանության և վերափոխման էկոլոգիական ասպեկտները:** *«Հայաստան» հրատ., 1982:*

*Բնության պահպանությունը և նրա ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը պահանջում են գիտական համակողմանի հիմնավորումներ: Այդ առումով բնապաշտպանման ու բնօգտագործման ասպարեզում կարևոր նշանակություն ունի էկոլոգիան: Հեղինակն այս գրքում ցույց է տվել էկոլոգիայի դերը շրջակա միջավայրի բարելավման, բնական համալիրների վերափոխման ու ռացիոնալ օգտագործման ոլորտում:*

Գինը՝ 25 կ.
Индекс 77783
ISSN 0130—8114

# Գիտության և տեխնիկայի նորություններ

### ՏԵՍՆՈՂ ՌՈԲՈՏ

Լենինգրադի Մ. Ի. Կալինինի անվան պոլիտեխնիկական ինստիտուտի տեխնիկական բյուրոյում հավաքվում է նոր ռոբոտ: Առաջին անգամ հայրենական ռոբոտատեխնիկայի պատմության մեջ մանիպուլյատորը կլինի «տեսունակ». այն կկարողանա տարբերել առարկաներն ըստ ընդհանուր տեսքի: Տվեք այդպիսի ռոբոտին դետալների զանգվածից ատամնանիվակը ջոկելու ծրագիր, և նա ոչ մի դեպքում իր չորս «մատներով» չի բռնի հեղույս կամ պտուտակամեր: Տեխնիկական «աչքը» սարքվում է մարդկայինի օրինակով, միայն ցանցաթաղանթի դերը կկատարի հեռուստատեսային կամերան, գլխուղեղի կեղևի դերը՝ կենտրոնական պրոցեսորը, որը ռոբոտին կօգնի վերլուծելու ստացված ազդանշանները և ճանաչելու առարկաները:

Լայն է այն բնագավառը, ուր կօգտագործվի տեխնիկական տեսողությամբ ռոբոտը, սակայն նրան առավել մոտ է դետալների տեսակավորման ոլորտը:

### ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՀԻՎԱՆԴՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Նորաձևության անհիմն նմանակումը հանգեցրել է մի շարք արտասովոր հիվանդությունների տարածման, հիվանդություններ, որոնց բժիշկները տալիս են այս կամ այն գերժամանակակից պարի ոճի կամ հագուստի անունը: Օրինակ, Բադենում լույս ընծայվող շվեյցարական դեղագործական ֆիրմայի բյուլետենում «ջինսային մաշկաբորբ» է կոչվում մաշկային այն հիվանդությունը, որն առաջանում է պիրկ գրկող ջինսը մշտապես հագնելուց: «Դիսկո մատներ»— հոդերի հիվանդություն է, որը «դիսկո»-ի խելագար ռիթմի տակտով մատները եռանդագին չխկացնելու հետևանք է: Արևմուտքի երիտասարդության շրջանում տարածված է նաև «պանկովյան» ախտանիշների համակցությունը, այսինքն՝ արյունազեղում աչքերում «պանկ» ոճի պարի ընթացքում անչափավոր թափահարումներից:

Բայց ավագ սերնդի մոտ ևս մասսայաբար ծագում են հիվանդություններ, որոնք կապված են ժամանակակից կենսաձևի հետ: Բյուլետենի այդ նույն համարում կա «հեռուստատեսային տրոմբոզի» նկարագրությունը : Այդ հիվանդությամբ տառապում են մեծահասակները, որոնք օրերով ժամանակն անց են կացնում հեռուստացույցի էկրանի առաջ:

### ԱՎՏՈՄԵՔԵՆԱՅԻ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԱՎՏՈՄԱՏԱՑՎԱԾ ՍԻՍՏԵՄ

Անգլիական ֆիրմաներից մեկը մշակել է մեծ բեռնատարությամբ մեքենաների արագության կառավարման ավտոմատ սիստեմ: Այն 10—15 տոկոսով նվազեցնում է էներգիայի ծախսը և պակասեցնում շարժիչների, անվադողերի և արգելակիչների մաշվածությունը:

Այդ սիստեմի օգտագործման դեպքում անկարելի է գերազանցել գործարանում նախատեսված առավելագույն շահագործման արագությունը: Վարորդը, ճանապարհի որակին և երթևեկության կանոններին համապատասխան, կարող է բռնակների օգնությամբ ընտրել առավելագույն արագություն՝ երեք ժամում 50, 60 կամ 80 կմ: Սիստեմը տրված արագությունը պահում է փականի կափարիչի դիրքի և շարժիչի աշխատանքի ռեժիմի կարգավորմամբ: Եթե հարկ լինի, այն կարելի է ժամանակավորապես գերազանցել. օրինակ, երկարաձիգ վերելքի ժամանակ: Իսկ վայրէջքի դեպքում, երբ ավտոմեքենան ընթանում է իներցիայի հաշվին, վարորդը կարող է լրիվ բացել փականի կափարիչը, հաջորդ վերելքի ժամանակ պահել իներցիայի պահը: Դա բացառում է փոխանցման տուփի հոսանքափոխման անհրաժեշտությունը: